ՊՐՈԼԵՏԱՐՆԵՐ ԲՈԼՈՐ ԵՐԿՐՆԵՐԻ, ՄԻԱՑԵՔ

# ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ

ՀԿԿ ԿԵՆՏԿՈՄԻ ԱՄՍԱԳԻՐ

4

ԱՊՐԻԼ

ԵՐԵՎԱՆ • 1971

## ՄԵՐ ՀԵՂԻՆԱԿՆԵՐԻՆ

«Լենինյան ուղիով» ամսագրի խմբագրությունը խնդրում է հոդվածներ ուղարկելիս ճշտորեն պահպանել հետևյալ կանոնները. տեսական բնույթի հոդվածները 18 մեքենագրական էջից ոչ ավելի, պրակտիկ աշխատանքը և առաջավոր փորձը լուսաբանող հոդվածները՝ 8—10, նամակներն ու թղթակցությունները՝ 4—6, գրախոսականները և մամուլի տեսությունները՝ 6—8 էջ։

Անդրկովկասի ու Հայաստանի հեղափոխական շարժման թեմաներով գրված և Հայաստանում մարքսիզմ-լենինիզմի տարածմանը նվիրված հոդվածները պետք է ունենան ռուսերեն ամփոփում՝ 8 տողի չափով։

Հոդվածները պետք է մեքենագրված լինեն երկու ինտերվալով, երկու օրինակից, հեղինակի կողմից ստորագրված, նշելով հեղինակի լրիվ անունը, հայրանունը և ազգանունը, հասցեն, աշխատանքի վայրն ու հեռախոսի համարը։ Խմբագրությանը հանձնված հոդվածներից մեկը պետք է լինի մեքենագրվածի առաջին օրինակը։ Հոդվածում անհրաժեշտ է ցույց տալ մեջբերումների և թվական տվյալների աղբյուրները։

Նույն կանոնները խախտողների հոդվածները կմնան անհետևանք։

Խմբագրությանն ուղարկված հոդվածները չեն վերադարձվում։

ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ

4

ԱՊՐԻԼ 1971

ԼՈՒՅՍ Է ՏԵՍՆՈՒՄ 1922 ԹՎԱԿԱՆԻՑ

ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ԿԿ-Ի ՏԵՍԱԿԱՆ-ՔԱՂԱՔԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

«Ленинян угнов» — теоретический и политический журнал ЦК КП Армении

# Բովանդակություն

# Содержание







# ՊԱՅՔԱՐԻ ԵՎ ՍՏԵՂԾԱԳՈՐԾՄԱՆ ԾՐԱԳԻՐ

Սովետական Միության կոմունիստական կուսակցության XXIV համագումարը բացառիկ իրադարձություն է մեր երկրի հասարակական-քաղաքական կյանքում: Այն նոր փուլ նշանավորեց կոմունիստական հասարակարգի նյութա-տեխնիկական հիմքերի ամրապնդման գործում: Համագումարի քննարկմանը ներկայացված զեկուցումները, պատգամավորների ելույթները, եղբայրական բանվորական ու կոմունիստական կուսակցությունների ներկայացուցիչների ողջույնի ուղերձները կարևոր փաստաթղթեր են, որոնք լուրջ ներդրում են մարքս-լենինյան տեսության զարգացման գործում: Այժմ ՍՄԿԿ XXIV համագումարի որոշումները լայնորեն քննարկվում և ջերմ հավանության են արժանանում կուսակցության, ողջ սովետական ժողովրդի կողմից: Համագումարի փաստաթղթերում բազմակողմանիորեն արծարծված են մեր առաջընթացն ապահովող բազմաթիվ հարցեր, նշված ժողովրդական տնտեսության, գիտության ու կուլտուրայի զարգացման, սովետական մարդկանց բարեկեցության հարահուն բարձրացման բնագծերը:

Համագումարին տրված հաշվետու զեկուցման մեջ, Կենտկոմի գլխավոր քարտուղար Լ. Ի. Բրեժնևի հիմնավոր վերլուծմամբ համակողմանի բնութագրված է երկու աշխարհների իրավիճակը, բացահայտված են արդի սոցիալ-քաղաքական խոշոր տեղաշարժերի էական նկրտումները:

ՍՄԿԿ գործունեության մեջ պատշաճ տեղ են գրավել սովետական պետության արտաքին քաղաքականության, կոմունիստական շարժման հարցերը: Մեր կուսակցությունն առանձնահատուկ նշանակություն է տալիս սոցիալիստական երկրների կոմունիստական կուսակցությունների հետ համագործակցության զարգացմանը: Նման կապերը եղբայրական կուսակցություններին հնարավորություն են ընձեռում հարստանալու միմյանց փորձով, մշակելու սոցիալիզմի և կոմունիզմի կառուցման արմատական պրոբլեմները, կատարելագործելու տնտեսական հարաբերությունների առավել ռացիոնալ ձևերը. համատեղ սահմանելու ընդհանուր գիծ արտաքին քաղաքական գործերում, կարծիքներ փոխանակելու գաղափարախոսության և մշակույթի բնագավառների հարցերի շուրջը:

Եղբայրական կուսակցությունների ու պետությունների քաղաքական գործունեության կոորդինացման հիմքը Վարշավայի պայմանագրի կազմակերպությունն է, որը լուրջ հաջողությունների հասավ անցած հինգ տարիների ընթացքում: Նրան է պատկանում Եվրոպայում խաղաղության ամրապնդման ծա-

վալուն ծրագրի մշակման նախաձեռնությունը, մի ծրագիր, որի առանցքն է կազմում գոյություն ունեցող պետական սահմանների անխախտությունն ապահովելու պահանջը:

Սոցիալիզմի երկրները նշանակալի հաջողությունների են հասել նաև տնտեսական համագործակցության բնագավառում: Սովետական Միությունը և եղբայրական մյուս պետություններն օգնում են միմյանց ազգային էկոնոմիկաների զարգացման գործում: Հատկանշական են ՍՍՀՄ և տնտեսական փոխօգնության խորհրդի անդամ մյուս երկրների տնտեսական հարաբերությունները, որոնք խարսխված են հաստատուն հիմքի վրա: Այստեղ իրականացված է 1971—1975 թվականների ժողովրդա-տնտեսական պլանների կոորդինացումը: Սոցիալիստական երկրների տնտեսական ինտեգրացումը, արտադրության մասնագիտացումն ու կոոպերացումը հարուցում են նոր պրոբլեմներ, որոնց լուծումը պահանջում է մշտապես հենվել գիտության ու տեխնիկայի նորագույն նվաճումների, արտադրության առավել շահութաբեր ու տեխնիկապես առաջավոր ձևերի կիրառման վրա:

Կենտկոմի հաշվետվության մեջ միաժամանակ նշված է, որ սոցիալիստական աշխարհն իր հաջողություններով ու հեռանկարներով, իր բոլոր պրոբլեմներով դեռևս երիտասարդ, աճող սոցիալական օրգանիզմ է, որտեղ ամեն ինչ չէ, որ կայունացել է, որտեղ շատ բան իր վրա դեռ կրում է նախորդ պատմական դարաշրջանների հետքերը: Սոցիալիզմի աշխարհն ամբողջովին շարժման մեջ է, անընդհատ կատարելագործվում է: Նրա զարգացումը, բնականաբար, ընթանում է հնի ու նորի պայքարի, ներքին հակասությունների լուծման ուղիներով:

Կենտկոմի հաշվետվությունում, համագումարի մյուս նյութերում հանգամանորեն վեր են հանված ժամանակակից կապիտալիզմի առանձնահատկությունները արդի իրադրության պայմաններում: Այժմ կապիտալի երկրների տիրող շրջանները, ինչպես երբեք, վախենում են, որ դասակարգային պայքարը կվերաճի մասսայական հեղափոխական շարժման: Նման իրավիճակն ստիպում է բուրժուազիային կիրառելու աշխատավորների շահագործման ու ճնշման ավելի քողարկված ձևեր, առանձին զիջումների, մասնակի ռեֆորմների գնով հնարավորին չափ իր գաղափարական ազդեցությունը տարածելու աշխատավորական զանգվածների վրա: Մոնոպոլիստական կապիտալը լայնորեն օգտագործում է գիտա-տեխնիկական առաջընթացի նվաճումները սեփական դիրքերն ամրապնդելու, արտադրության զարգացման արդյունավետությունն ու տեմպերը արագացնելու, աշխատավորության շահագործումը և ճնշումը ուժեղացնելու համար:

Սակայն այս տեղաշարժերը բնավ չեն մեղմում կապիտալիզմի ներքին հակասությունները, չեն կասեցնում խորացող ճգնաժամը: Կապիտալի աշխարհում մշտական երևույթ է դարձել ինֆլյացիայի ու գործազրկության միաժամանակյա աճը: Բավական է ասել, որ զարգացած կապիտալիզմի երկրներում այժմ հաշվվում է մոտավորապես 8 միլիոն գործազուրկ:

Արտաքին քաղաքականության ասպարեզում ժամանակակից իմպերիալիզմը վարում է բացահայտ ագրեսիվ կուրս, որի հրահրիչն ու ջատագովը ԱՄՆ-ի մոնոպոլիստական կապիտալն է: Ամերիկյան իմպերիալիզմը ձգտում է գերիշխել ամենուր, միջամտում ուրիշ ժողովուրդների գործերին, անպատկառ կերպով խախտում նրանց օրինական իրավունքներն ու սուվերենությունը, փորձում



ուժի, կաշառման, տնտեսական ներթափանցման միջոցով իր կամքը պարտադրել պետություններին և աշխարհի տարբեր շրջաններին:

Հանցագործ միջոցներով իմպերիալիստները ձգտում են պահպանել կամ վերականգնել իրենց տիրապետությունը նախկին գաղութների կամ կապիտալիստական շահագործման ճիրաններից ազատվող մյուս երկրների ժողովուրդների նկատմամբ: Ժամանակակից գաղութարարների ամենածանր ոճրագործությունը ԱՄՆ-ի սանձազերծած ագրեսիան է Վիետնամի, Կամբոջայի, Լաոսի ժողովուրդների դեմ: Սակայն իմպերիալիստների բոլոր ճիգերն իրենց օգտին շրջելու պատմության ընթացքը՝ դատապարտված են ձախողման:

Ժամանակակից աշխարհի հեղափոխական ուժերի ավանգարդը միջազգային բանվոր դասակարգն է: Վերջին տարիների սոցիալական բախումները հաստատեցին բանվոր դասակարգի դերի նշանակությունը, որպես մոնոպոլիաների իշխանության գլխավոր և առավել զորեղ հակառակորդի, որպես հակամոնոպոլիստական ուժերի համախմբման գործոնի: Բանվոր դասակարգի մղած ներկայիս մարտերն ի վիճակի են հանգեցնելու սոցիալական հիմնական վերափոխումների, ընդհուպ մինչև աշխատավորության մյուս խավերի հետ դաշն կնքած, բանվոր դասակարգի իշխանության հաստատման:

Այսօր ազգային-ազատագրական պայքարի բնույթը և ուղղությունը հակաֆեոդալական են, հակակապիտալիստական: Ասիայի ու Աֆրիկայի բազմաթիվ երկրներ բռնել են զարգացման ոչ կապիտալիստական ուղին, հեռանկարային կուրս են վերցրել կառուցելու սոցիալիստական հասարակարգ: Այստեղ իրականացվող և հետզհետե ավելի մեծ չափով կենսագործվող սոցիալական խոր վերափոխումները համընկնում են ժողովրդական զանգվածների շահերին, հանգեցնում ազգային անկախության ամրապնդման: Սակայն նախկին գաղութային ու կախյալ ոչ բոլոր երկրներում են տեղի ունենում արմատական սոցիալական վերափոխումներ: Չնայած ռեակցիոն ուժերի կատաղի դիմադրությանը, իմպերիալիզմի դրածոների դեմ ուղղված պայքարն ընթանում է ամենուրեք, և որոշ երկրներում առաջադիմական ուժերն արդեն զգալի նվաճումների են հասել:

Նոր հեռանկարներ են բացվում Լատինական Ամերիկայի մի շարք երկրների հասարակական կյանքում: Նշանակալից երևույթ է ժողովրդական միասնության ուժերի հաղթանակը Չիլիում: Այնտեղ,— նշված է Կենտկոմի հաշվետվությունում,— մայրցամաքի ամբողջ պատմության մեջ առաջին անգամ ժողովուրդը սահմանադրական ճանապարհով հասավ այնպիսի կառավարության ստեղծման, որպիսին ինքն է ուզում և որին վստահում է:

Իմպերիալիզմի դեմ մղվող պայքարի հաջողությունը մեծապես պայմանավորված է հակաիմպերիալիստական ուժերի, առաջին հերթին, նրանց ավանգարդի՝ համաշխարհային կոմունիստական շարժման համախմբվածությամբ: Այս գործում առաջընթաց խոշոր քայլ էր կոմունիստական ու բանվորական կուսակցությունների մոսկովյան միջազգային խորհրդակցությունը: Կոմունիստական շարժման համախմբման վառ արտահայտությունն էր Վ. Ի. Լենինի ծննդյան 100-ամյակի հանդիսավոր տոնակատարությունը, որը կրկին հաստատեց կոմունիստների շարքերի միասնության անհրաժեշտությունը:

Ժամանակակից կոմունիստական ու բանվորական շարժման համար առաջնահերթ խնդիր է աջ և «ձախ» ռևիզիոնիզմի, նացիոնալիզմի դեմ ուղղված պայքարը: Այժմ բուրժուական պրոպագանդայի գաղափարական մեքենայու-

քյունների կիզակետը նացիոնալիստական միտումներն են և հատկապես դրանց հակասովետական ուղղությունը: Կյանքը, կուտակված փորձը վկայում են, որ անհրաժեշտ է անզիջում, հարձակողական պայքար մղել հեղափոխական ուսմունքից նահանջողների դեմ, պատռել արդի օպորտունիզմի գաղափարական ու սոցիալական դիմակը:

Գիտակցելով իր ինտերնացիոնալ պարտքը, մեր կուսակցությունն առաջիկայում ևս կպայքարի հանուն հակաիմպերիալիստական ուժերի ակտիվացման, նրա շարքերի մարտական միասնության ամրապնդման:

Հաշվետու ժամանակաշրջանում ՍՄԿԿ Կենտկոմը և Սովետական կառավարությունը ջանքեր չեն խնայել ապահովելու ՍՍՀՄ-ում կոմունիզմի կառուցման խաղաղ պայմաններ, մերկացնելու և վիժեցնելու ագրեսիվ իմպերիալիստական ուժերի գործողությունները, զորավիգ լինել սոցիալիզմին, ժողովուրդների ազատությանը և խաղաղությանը: Սովետական Միությունը հետևողականորեն պաշտպանել ու պաշտպանում է պետությունների խաղաղ գոյակցության լենինյան սկզբունքը՝ անկախ նրանց հասարակական բնույթից: Այժմ այդ սկզբունքը վերածվել է միջազգային զարգացման իրական ուժի:

Ժամանակակից աշխարհի կարևորագույն միջազգային պրոբլեմներից է զինաթափումը: Կոմունիստական կուսակցությունը և սովետական կառավարությունն իրենց հետևողական գործունեությամբ ձգտում են հասնել այնպիսի կոնկրետ արդյունքների, որոնք նվազեցնեին պատերազմի սպառնալիքը, թույլ չտային, որ ժողովուրդները հաշտվեն սպառազինությունների մրցավազքի, որպես անխուսափելի չարիքի հետ:

Ավելի քան քառորդ դար է, ինչ մեր ժողովուրդն ապրում է խաղաղության պայմաններում, մարդկությունը փրկվել է համաշխարհային պատերազմից: Այս իրողությունը մեր կուսակցության արտաքին քաղաքականության մեծագույն նվաճումն է: Սակայն չի կարելի տակավին բացառել նոր համաշխարհային պատերազմի վտանգը: Անհրաժեշտ է վճռաբար մերժել, թույլ չտալ, որ այդ սպառնալիքը դառնա իրականություն:

Սովետական Միությունը, համագործակցելով սոցիալիստական և մյուս խաղաղասեր պետությունների հետ, արժանանալով բովանդակ աշխարհի բազմամիլիոն ժողովրդական զանգվածների ջերմ պաշտպանությանը, բազում տարիներ պայքար է մղում ամրապնդելու խաղաղության և ժողովուրդների բարեկամության գործը:

Կուսակցության XXIV համագումարին տրված ՍՄԿԿ Կենտկոմի հաշվետու իր զեկուցման մեջ, Լ. Ի. Բրեժնևը հատկապես կանգ առավ հանրային արտադրության արդյունավետության բարձրացման, գիտատեխնիկական առաջընթացի, ժողովրդական տնտեսության բոլոր ռեզերվների լրիվ օգտագործման հարցերի վրա:

Անցած հինգ տարիների համար բնորոշ է սովետական գիտության և տեխնիկայի արագ զարգացումը: Այժմ, երբ առավել մեծ չափով է դրսևորվում գիտության՝ որպես անմիջական արտադրաուժի դերը, գլխավոր են դառնում ո՛չ միայն վերջինիս առանձին նվաճումները, այլ ողջ արտադրության գիտատեխնիկական բարձր մակարդակը: Խնդիր է դրվում բարձրացնել գիտության արդյունավետությունը, ավելի ծավալել հիմնարար հետազոտությունները, գիտնականների ուժերը և ուշադրությունը կենտրոնացնել գիտա-տեխնիկական առաջընթացի առավել կարևոր ու հեռանկարային բնագավառների վրա: Ան-



հրաժեշտ է գիտա-տեխնիկական հեղափոխության նվաճումներն օրգանապես շաղկապել տնտեսության սոցիալիստական սիստեմի առավելություններին, լայնորեն զարգացնել արտադրության հետ գիտության շաղկապման սեփական, սոցիալիզմին հատուկ ձևերը:

Կուսակցության տնտեսական քաղաքականության հանգուցային հարցերից է տնտեսության կառավարման սիստեմի կատարելագործումը: Մեր երկրի էկոնոմիկայի մասշտաբների աճը և դրանում տեղի ունեցած որակական տեղաշարժերը, նոր, ավելի բարձր պահանջներ են ներկայացնում կառավարմանը, մերժում կենսազուրկ ձևերն ու մեթոդները:

Պլանավորման ու տնտեսական խթանման նոր սիստեմը հնարավորություն ընձեռեց կասեցնելու էկոնոմիկայում նախկինում նկատված անցանկալի որոշ տենդենցները: Կառավարման դեմոկրատական հիմունքների հետագա զարգացման նկրտումն իր արտահայտությունը գտավ վերջինիս ոլորտում աշխատավորության առավել լայնորեն ներգրավելու, հանրապետությունների ու մարզերի տնտեսական իրավասությունը, ինչպես նաև ձեռնարկությունների օպերատիվ ինքնուրույնությունն ընդլայնելու մեջ: Կառավարման կառուցվածքը կատարելագործելիս կուսակցությունը կարևոր է համարում հետևողականորեն իրականացնելու հանձնարարված գործի համար անհատական պատասխանատվության լենինյան սկզբունքը:

Արդի պայմաններում կուսակցության քաղաքականության նպատակն է՝ նպաստել բանվոր դասակարգի, կոլտնտեսային գյուղացիության, մտավորականության մերձեցմանը, քաղաքի ու գյուղի, մտավոր ու ֆիզիկական աշխատանքի միջև եղած էական տարբերությունների աստիճանական հաղթահարմանը: Բանվոր դասակարգը եղել և մնում է հասարակության հիմնական արտադրաուժը: Բանվոր դասակարգի հեղափոխականությամբ, կարգապահությամբ, կազմակերպվածությամբ և կոլեկտիվիզմով է որոշվում նրա առաջատար դերը սոցիալիստական հասարակական հարաբերությունների սիստեմում: Սոցիալիստական հասարակության քաղաքական հիմքը բանվոր դասակարգի և գյուղացիության դաշինքն է: Կուսակցության քաղաքականության շնորհիվ, արդյունաբերության ու գյուղատնտեսության հարաճուն վերելքով ավելի ամրապնդվեց այդ մեծ դաշինքը:

Սոցիալիզմի ամենախոշոր նվաճումներից է ժողովուրդների միջև հավասարության և բարեկամության հաստատումը: Առաջիկայում ևս կուսակցությունը կիրականացնի սոցիալիստական ազգերի ծաղկման և նրանց աստիճանական մերձեցման լենինյան կուրսը:

Նոր հասարակարգի կառուցման գրավականներից է սոցիալիստական դեմոկրատիայի հետագա զարգացումը: Սոցիալիստական պետության հիմքը, նրա դեմոկրատական բնույթի առավել լրիվ մարմնացումը ժողովրդական իշխանության մարմիններն են՝ աշխատավորների դեպուտատների սովետները, որոնք կառավարում են մեր համաժողովրդական պետության գործերը՝ վարից վեր:

Մեր երկրում հասարակության կառավարմանը աշխատավորների մասնակցությունը իրականացվում է ո՛չ միայն պետական մարմինների, այլև աշխատավորության մասսայական կազմակերպությունների ճյուղավորված ցանցի, առաջին հերթին, արհմիությունների և կոմերիտմիության միջոցով:

Այսօր կուսակցության գործունեության մեջ զգալի տեղ են գրավել գաղա-

փարական աշխատանքի բոլոր ձևերի հետագա ծավալումը, մասսաների քաղաքական դաստիարակությունը և ժողովրդի կուլտուրական մակարդակի բարձրացումը:

Կուսակցության գաղափարա-դաստիարակչական աշխատանքի առանցքը աշխատավորության հոծ զանգվածների կոմունիստական աշխարհայացքի ձևավորումն է, նրանց դաստիարակումը մարքսիզմ-լենինիզմի գաղափարների ոգով: Նոր ապրելակերպի նորմերի հաստատումը անհնար է առանց վճռական պայքար մղելու անցյալի մնացուկների դեմ, ինչպիսիք են՝ շահամոլությունը, կաշառակերությունը, պորտաբուծությունը, զրպարտությունը, անստորագիր նամակները, հարբեցողությունը և այլն: Կենտրոնական կոմիտեն,— ասում է ընկեր Բրեժնևը,— անհրաժեշտ է համարում ուժեղացնել մեր ամբողջ գաղափարական աշխատանքը և, ամենից առաջ, ավելի ակտիվ, նպատակասլաց դարձնել կոմունիստական իդեալների, մեր շինարարության կոնկրետ խնդիրների պրոպագանդումը:

Կուսակցության գործունեության մեջ հիմնականը հասարակության զարգացման գլխավոր հեռանկարի, քաղաքական ճիշտ գծի մշակումն է և աշխատավորների կազմակերպումը այդ գծի կենսագործման համար: Անցած տարիներին ՍՄԿԿ անշեղորեն վարել է ներկուսակցական դեմոկրատիան առավել զարգացնելու, կուսակցական կյանքի լենինյան նորմերը կիրառելու, կոմունիստների ակտիվությունը բարձրացնելու կուրս: Ներկուսակցական դեմոկրատիայի զարգացումն անբաժանելի է կուսակցական կարգապահության ամրապնդումից: Կյանքը ցույց է տալիս, որ կուսակցության ուժը, նրա գործունեությունը մեծապես որոշվում է նրանով, թե որքան հետևողական և ճիշտ են կենսագործվում դեմոկրատական ցենտրալիզմի սկզբունքները: «Մարքս-լենինյան կուսակցության համար,— ասված է ՍՄԿԿ Կենտկոմի հաշվետու զեկուցման մեջ,— հավասարապես վնասակար են ինչպես անարխիստական անկարգապահությունը, որը ներկայացվում է դեմոկրատիայի փոխարեն, այնպես էլ բյուրոկրատական կենտրոնացումը, որը կասեցնում է կոմունիստների նախաձեռնության և ակտիվության զարգացումը»:

Կուսակցության ուժը կոմունիստների գաղափարայնության, ակտիվության, անձնվիրության մեջ է: Կոմունիստների գաղափարական կոփումը կուսակցական շարքերի մարտունակության բարձրացման անհրաժեշտ պայմանն է: Հարկավոր է քաղաքական ուսուցումն ավելի սերտորեն շաղկապել կոմունիստական շինարարության կոնկրետ խնդիրների հետ, հասնել այն բանին, որ այն ուժգին ներգործի կուսակցության բոլոր անդամների գիտակցականության և ակտիվության աճի վրա: Այս կապակցությամբ նոր պահանջներ են ներկայացվում գաղափարական ճակատի աշխատողներին, որոնց ընտրությանն ու ուսուցմանը պետք է հատուկ ուշադրություն նվիրել:

«Մեր կուսակցությունը,— նշված է Կենտկոմի հաշվետու զեկուցման մեջ,— գիտական կոմունիզմի կուսակցություն է: Նա անշեղորեն առաջնորդվում է մարքս-լենինյան գիտությամբ, արդիականության ամենաառաջավոր, հեղափոխական գիտությամբ, ամեն ինչ անում է նրա հետագա զարգացման համար: Հասարակական կյանքի երևույթների, նրա գլխավոր տենդենցների տեսական իմաստավորումը կուսակցությանը թույլ է տալիս կանխատեսել հասարակական պրոցեսների ընթացքը, մշակել քաղաքական ճիշտ կուրս, խուսափել սխալներից և սուբյեկտիվիստական լուծումներից»:



«Ժողովրդի մեծագործություններում մարմնավորված են կուսակցության լենինյան իմաստությունը, նրա բազմազան գործունեությունը՝ որպես մասսաների առաջնորդի և ղեկավարի, նրա մարտական ոգին և անսահման նվիրվածությունը ժողովրդի շահերին, կոմունիզմի իդեալներին: ՍՄԿԿ XXIV համագումարի որոշումները, նոր հնգամյա պլանի վերաբերյալ դիրեկտիվները սովետական մարդկանց նկատմամբ կուսակցության հոգատարության մարմնացումն են: Կոմունիստական կուսակցության համար չկա ավելի նվիրական գործ, կյանքի ավելի վեհ իմաստ, քան իր ժողովրդին անձնվիրաբար ծառայելը:

Այժմ երկրով մեկ կուսակցական կազմակերպությունները, աշխատավորական կոլեկտիվները համագումարի ընդունած որոշումների լույսի տակ նոր պարտավորություններ են ստանձնում հնգամյակի առաջադրանքները ժամանակին ու անթերի կատարելու համար: Կոմունիստների համաժողովը արտակարգ խանդավառությամբ ընդունեցին մեր հանրապետության աշխատավորները: Տակավին հնգամյա պլանի նախագծի քննարկման ժամանակ գործարանների, ֆաբրիկաների շինարարական կազմակերպությունների, սովխոզների ու կոլտնտեսությունների կոլեկտիվները գործարար մթնոլորտում վերլուծեցին իրենց անելիքները առաջիկա տարիներին, բացահայտեցին նոր միջոցներ ու հնարավորություններ՝ բարձրացնելու աշխատանքի արտադրողականությունը, թողարկվող արտադրանքի որակը, իջեցնելու ինքնարժեքը:

Լենինականի միկրոէլեկտրաշարժիչների, Երևանի ատաղձագործական սալիկների գործարանների կոլեկտիվները ժամկետից շուտ կատարեցին 1971 թ. առաջին երկու ամսվա արտադրանքի իրացման պլանը: Լենինականի «Լենշին» տրեստի կոլեկտիվն ընթացիկ տարվա առաջին երկու ամսում նախատեսված մեկ միլիոն 750 հազար ռուբլու փոխարեն, կատարեց երկու միլիոն 300 հազար ռուբլու շինմոնտաժային աշխատանք. գերակատարվել է նաև աշխատանքի արտադրողականության բարձրացման առաջադրանքը, ստացվել է 110 հազար ռուբլու շահույթ: Լենինականի տեքստիլ կոմբինատը երկու ամսում թողարկել է 200 հազար ռուբլու լրացուցիչ արտադրանք, իսկ Սովետաշենի տրիկոտաժի ֆաբրիկայի կոլեկտիվը հաջողությամբ կատարել է տարեսկզբի առաջադրանքները:

Արտադրության առաջավորների շարքերում են Արփա—Սևան մեծ կառույցի շինարարների, Ալավերդու ու Ղափանի լեռնագործների, Լենինականի լոկոմոտիվային դեպոյի և մսի կոմբինատի, Հոկտեմբերյանի պահածոների գործարանի և շատ այլ կոլեկտիվներ: Պլանային առաջադրանքները հաջողությամբ իրագործելու բուռն ցանկությունը համակել է ողջ հանրապետությանը: Ուրախալի լուրեր են ստացվում նաև գյուղական շրջաններից, ուր հողի աշխատավորները ջանք ու եռանդ չեն խնայում բարձր բերք ստանալու համար:

* * *

Արդյունաբերության այժմյան ծավալը, որակը, գիտության ու տեխնիկայի բարձր մակարդակը հնարավորություն են ընձեռում լուծելու ամենաբարդ խնդիրները, ապահովելու ժողովրդական տնտեսության զարգացման բոլոր ճյուղերի բարձր տեմպերը և ավելի հզորացնելու երկրի պաշտպանունակությունը:

Խոշոր միջոցառումներ են մշակվել և իրականացվել գյուղատնտեսության

նյութա-տեխնիկական բազան ամրապնդելու, բերքատվությունը բարձրացնելու, անասունների մթերատվությունն ավելացնելու նպատակով: Զարգացել և բարեփոխվել են կապի ու տրանսպորտի բոլոր միջոցները:

Այդ նվաճումների հիման վրա, բարելավվել է ժողովրդի նյութական բարեկեցությունը, բանվորների ու ծառայողների միջին աշխատավարձն ավելացել է առնվազն 20 տոկոսով:

Ազգաբնակչությունն այժմ անհամեմատ լավ է ապահովված կուլտուր-կենցաղային ապրանքներով: Կուսակցության ու ժողովրդի միահամուռ հավանությանն արժանացած նոր հնգամյակի գլխավոր խնդիրն է՝ «ապահովել ժողովրդի կյանքի նյութական և կուլտուրական մակարդակի նշանակալի վերելք սոցիալիստական արտադրության զարգացման արագ տեմպերի, նրա արդյունավետության բարձրացման, գիտա-տեխնիկական առաջընթացի և աշխատանքի արտադրողականության աճի արագացման հիման վրա»: Այդ նպատակին հասնելու համար նախատեսված է հնգամյակում արդյունաբերության արտադրանքի արտադրությունն ավելացնել 42—46, սպառման ապրանքներինը՝ 44—48, երկաթուղային տրանսպորտի բեռնաշրջանառությունը բարձրացնել մոտ 22, գետային տրանսպորտինը՝ 24, իսկ գյուղատնտեսական մթերքների արտադրության միջին տարեկան ծավալը՝ 20—22 տոկոսով:

Հատկապես երկրի նոր տնտեսական շրջաններն սպասարկելու համար պլանավորված է կառուցել 5—6 հազար կիլոմետր երկաթգիծ: Նախատեսված է բանվոր-ծառայողների միջին աշխատավարձը բարձրացնել 20—29 տոկոսով: Հնգամյակի ընթացքում ֆինանսավորման բոլոր աղբյուրների հաշվին կկառուցվի 565—575 միլիոն քառակուսի մետր բնակելի տարածություն և այլն:

Համագումարը շինարարների ուշադրությունը կենտրոնացրեց նորակառույցների որակի, ինքնարժեքի, օբյեկտների հանձնման ժամկետների վրա: Հատկապես նշվեց, որ անհրաժեշտ է բարելավել բնակչության բնակարանային պայմանները, զարկ տալ բնակարանային շինարարության հետագա զարգացմանը, բարեկարգել բնակելի տները: Այս ծավալի միջոցառումների իրագործման համար անհրաժեշտ է շինարարների բանակը համալրել գործիմաց կադրերով, հաղթահարել բանվորական ուժի հոսունությունը:

Զարգանում ու կատարելագործվում է սոցիալիստական դեմոկրատիան: Ողջ հասարակության սոցիալիստական կազմակերպվածությունը,— ասում է ընկեր Լ. Ի. Բրեժնևը,— հանուն յուրաքանչյուր մարդու և յուրաքանչյուրի սոցիալիստական կարգապահությունը՝ հանուն ողջ հասարակության— ահա սոցիալիստական դեմոկրատիայի էությունը: Կուսակցության խնդիրն է՝ մշտապես ամրապնդել բարձր կարգապահություն ու կազմակերպվածություն կուսակցության և պետության բոլոր օղակներում:

Այս կապակցությամբ մեծ ու պատասխանատու խնդիրներ են դրվում արհմիությունների առջև, մեծանում է նրանց դերը, որպես տնտեսավարման, կոմունիզմի դպրոց: Արհեստակցական միությունները ջանք չպետք է խնայեն բոլոր աշխատավորների ուժերի մոբիլիզացման, արտադրության կառավարմանը նրանց մասնակից դարձնելու, գիտա-տեխնիկական առաջընթացի խնդիրների լուծման համար: Արհեստակցական միությունները կոչված են հետևելու աշխատավորների աշխատանքի պայմանների առավել բարելավմանն ու աշխատանքային օրենսդրության ճիշտ կիրառմանը: Արհմիությունների խնդիրն է՝ նպաստել ժողովրդա-տնտեսական պլանների ժամանակին կատար-



մանը, ապահովել բանվոր-ծառայողների համար աշխատանքի ու հանգստի նորմալ պայմաններ:

Արտադրության բարձրացման, ինքնարժեքի իջեցման, որակի բարելավման գործում մեծ է բարոյական ու նյութական խրախուսանքի միջոցների խելացի կիրառումը, որը մեծ նշանակություն ունի աշխատավորությանը սոցիալիստական ապրելակերպի ոգով դաստիարակության գործում: Խրախուսանքի արժանացածների շուրջ պետք է հասարակական կարծիք ստեղծել, նրանց աշխատանքային դրական փորձը հաղորդել կոլեկտիվին: Անհրաժեշտ է, որ խրախուսանքի ներկայացվողների թեկնածությունները վաղօրոք քննարկեն ադմինիստրացիան ու հասարակական կազմակերպությունները: Այս հարցում հապճեպությունը, սուբյեկտիվ մոտեցումը մեծ չափով վնասում են գործին: Արտադրության մեջ հոգեբանական մթնոլորտը կարևոր գործոն է, որը չպետք է անտեսել:

Անցած հնգամյակում բուռն զարգացում ապրեց Սովետական Հայաստանի ժողովրդական տնտեսությունը, որի վերելքի տեմպերը գերազանցում են միութենական ցուցանիշները: Հանրապետության կուսակցական կազմակերպությունների առջև իններորդ հնգամյակում ավելի մեծ, ավելի բարձր խնդիրներ են դրվում: Բավական է ասել, որ արդյունաբերական արտադրանքի ծավալը պետք է մեծանա 60—63 տոկոսով (այն դեպքում, երբ Միությունում միջինը կազմում է 42—46 տոկոս), էլեկտրաէներգիայինը՝ 1,7, պղնձինը՝ 1,3, ավտոմատացման սարքերինն ու միջոցներինը՝ 1,9, ցեմենտինը՝ 2,6, պտղի ու բանջարեղենի պահածոներինը՝ 1,6, գործվածքային ու տրիկոտաժային ապրանքներինը՝ 1,3, կոշկեղենինը՝ 1,4, սառնարաններինը՝ 2,5, կահույքինը՝ 1,9 անգամ և այլն: Այդ մեծ խնդիրների իրագործումը պահանջում է բարձր պատասխանատվություն վստահված գործի նկատմամբ: Ելնելով իր առջև դրված վեհ խնդիրների իրականացման կարևորությունից, Հայաստանի կոմունիստական կուսակցության XXV համագումարն արձանագրեց. «Նոր հնգամյա պլանի կատարումը համագումարը համարում է հանրապետության կուսակցական, սովետական, տնտեսական, արհմիութենական և կոմերիտական կազմակերպությունների մարտական ծրագիրն ու առաջնահերթ խնդիրը, Հայաստանի կոմունիստական կուսակցության պատվի գործը»:

Մամուլի բոլոր օրգանների, հեռուստատեսության և ռադիոյի հիմնական խնդիրն է՝ համակողմանիորեն պարզաբանել XXIV համագումարի որոշումներն ու բարձրացրած հարցերը, արդիականության հիմնական պրոբլեմները, համաշխարհային հեղափոխական պրոցեսը, կոմունիստական ու բանվորական շարժման ընթացքը, սոցիալիստական համագործակցության երկրների վերընթացը, հակակոմունիզմի, ռևիզիոնիստական գաղափարախոսությունների մերկացման անհրաժեշտությունը: Կուսակցության համագումարը պարտավորեցնում է մեզ անդուլ մեկնաբանել ժամանակակից գիտատեխնիկական առաջընթացի հետ կապված պրոբլեմները: Գործնական կարևոր նշանակություն ունեն այնպիսի խնդիրների լուսաբանումը, ինչպիսիք են՝ աշխատանքի արտադրողականության բարձրացումը, արտադրանքի ինքնարժեքի իջեցումը, որակի բարելավումը, վերցրած պարտավորությունների և պլանների կատարումը, առաջավոր մեթոդների ներդրումն ու արդյունավետ օգտագործումը, սոցմրցումը, աշխատանքի գիտական կազմակերպումը, առաջավոր փորձի պրոպագանդումն ու մասսայականացումը:

Համագումարի որոշումների կենսագործման վճռական գործոնը մարդիկ են. նրանք են գաղափարական ճակատի կիզակետում: Այստեղ հատուկ աշխատանք է նախատեսվում կատարել երիտասարդության շրջանում: Կենսական նշանակություն է ստանում աշխատանքային դաստիարակության պրոբլեմատիկան, աշխատանքի մարդկանց դրվատումը: Անհրաժեշտ է նոր, ինքնատիպ հնարներով ցույց տալ այն իմաստուն ճշմարտության կարևորությունը, որ աշխատանքը բոլոր բարիքների աղբյուրն է:

Հնգամյա պլանում առանձնահատուկ ընդգծված են գիտա-տեխնիկական առաջընթացի, արտադրության ավտոմատացման խնդիրները, որոնք մարդկային մտքի մեծագույն նվաճումն են:

Այստեղ էական նշանակություն են ստանում գիտության ու տեխնիկայի նվաճումների արդյունավետ օգտագործման հարցերը: Հայտնի է, որ քիչ չեն փաստերը, երբ նորագույն մեքենաները լրիվ կարողությամբ չեն օգտագործվում: Նոր, բարդ տեխնիկան հրամայաբար պահանջում է սիստեմատիկ բարձրացնել կադրերի որակը: Բարձր արտադրողականության, արտադրանքի որակի համար պայքարը մշտապես պետք է լինի կուսակցական, սովետական կազմակերպությունների, ինչպես նաև տնտեսական ղեկավարների ուշադրության կենտրոնում: Ուստի, անհրաժեշտ է ամրացնել գիտության կապը պրակտիկայի հետ:

ՍՄԿԿ XXIV համագումարը խնդիր է դնում գյուղատնտեսությունը ևս վարել գիտական հիմունքներով. գիտա-հետազոտական կազմակերպությունների ուշադրությունը կենտրոնացնել գյուղատնտեսական արտադրության հեռանկարային պրոբլեմները լուծելու, բուսաբուծության բարձր բերքատու տեսակներ ստանալու և պրակտիկայում դրանց ներդրումն արագացնելու, անասունների ու թռչունների առավել մթերատու ցեղատեսակներ բուծելու, արտադրության տեխնոլոգիական արդյունավետ պրոցեսներ և դրանց կոմպլեքսային մեքենայացման միջոցներ արմատավորելու, վնասատուներից ու հիվանդություններից բույսերի ու կենդանիների պաշտպանության առաջավոր մեթոդներ ներդնելու, ինչպես նաև հողատարածությունների, տեխնիկայի և աշխատանքային ռեսուրսների առավել ռացիոնալ օգտագործման պրոբլեմները լուծելու համար:

Այս խնդիրների պրակտիկ իրականացումը մեծ չափով պայմանավորված է գիտության նվաճումների, առաջավոր փորձի պրոպագանդայով: Ոչ մի նորարարական առաջարկություն չպետք է անուշադրության մատնվի, անհրաժեշտ է ինֆորմացիայի բոլոր միջոցներն ի սպաս դնել դրական, առաջավոր փորձի մասսայականացմանը, առաջավոր փորձի պրոպագանդայի ոլորտում հաղթահարել այն սխալ պրակտիկան, երբ լրագրողը, կամ դասախոսը, ավելի շատ կանգ են առնում տվյալ փորձի արդյունքի վրա, անտեսելով վերջինիս ձեռք բերման ուղիները, միջոցները: Կարևոր է նորարարների հանդես գալը մամուլում, ռադիոյով, հեռուստատեսությամբ: Դաստիարակչական մեծ նշանակություն ունի գյուտարարների հանդիպումը երիտասարդության հետ:

Կուսակցական, արհմիութենական, կոմերիտական կազմակերպությունները, արտադրության հրամանատարները ուշի-ուշով պետք է հետևեն, ի հայտ բերեն նորը, առաջավորը: Հայտնի է, որ նախորդ հնգամյակում Միության մեջ արվել է ավելի քան 15 միլիոն ռացիոնալիզատորական առաջարկություն և գյուտ, որոնց միայն մի մասի ներդրումը տվել է 12,6 միլիարդ ռուբլու օգուտ:



1966–1970 թվականներին մեր հանրապետության արտադրության մեջ ներդրվել է 73 հազարից ավելի ռացիոնալիզատորական առաջարկություն և գյուտ, որոնց շնորհիվ տնտեսվել է 104 միլիոն ռուբլի:

Այս պերճախոս թվերը ցույց են տալիս, թե որքան մեծ է աշխատավորների նախաձեռնությունը, և ինչքան անհրաժեշտ վերջինիս աջակցություն և օժանդակություն ցույց տալը:

ՍՄԿԿ XXIV համագումարի որոշումների, փաստաթղթերի ու նյութերի բազմակողմանի և հիմնավոր պրոպագանդումը՝ հանրապետության կուսակցական կազմակերպությունների, արհմիությունների, կոմերիտմիության, մամուլի բոլոր օրգանների, ռադիոյի, հեռուստատեսության և «Գիտելիք» ընկերության կարևորագույն և գլխավոր խնդիրն է:

Կոմունիզմի նյութա-տեխնիկական բազայի կառուցման, աշխատավորության կոմունիստական դաստիարակության, նոր հասարակարգի հոգևոր մշակույթի զարգացման հարցերը պետք է տոգորված լինեն կուսակցության պատմական համաժողովի վեհ գաղափարներով, գիտականորեն հիմնավորված ստեղծագործ դրույթներով:

Սովետական մարդիկ համոզված են, որ իններորդ հնգամյա պլանի հաջող կենսագործումը նոր քայլ կհանդիսանա հայրենիքի առաջընթացի գործում, այն մեծապես կնպաստի բարձրացնելու սովետական մարդկանց կենսամակարդակը, վճռական դեր կխաղա կապիտալիզմի դեմ մղվող խաղաղ գոյակցության պայքարում դրսևորելու սոցիալիզմի առավելությունները:

Սովետական մարդիկ քաջ գիտակցում են, որ միայն հայրենանվեր անբասիր աշխատանքով կարելի է իրականություն դարձնել կոմունիստական կուսակցության վեհ կանխագծումները:

Սովետական ժողովուրդը թևավորված իր ձեռք բերած նշանակալից հաջողություններով և ոգեշնչված գալիքի հեռանկարներով, նոր բարձունքների կհասնի առաջիկա հնգամյակում:



# ՀՈԴՎԱԾՆԵՐ

## ՄԻԱՀԱՄՈՒՌ ԿԵՆՍԱԳՈՐԾԵՆՔ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ԿԱՄՔԸ

Հ. Ռ. ՍԻՄՈՆՅԱՆ

Կոմունիստական շինարարության ճանապարհին սովետական ժողովրդի հաղթական առաջընթացը գլխավորում է մեծ Լենինի ստեղծած կոմունիստական կուսակցությունը։ Կոմունիզմի կառուցման բարդ պրոբլեմներն անհրաժեշտաբար նոր և մեծ խնդիրներ են հարուցում սովետական հասարակության առջև։ Հետզհետե ավելի կարևոր նշանակություն են ստանում կուսակցության գործունեության այնպիսի կողմերը, որպիսիք են՝ տնտեսության կառավարման կատարելագործումը, քաղաքական-կազմակերպական աշխատանքի բարելավումը, մարքսիստական-լենինյան տեսության հետագա զարգացումը, կոմունիստական ու բանվորական կուսակցությունների հետ եղբայրական հարաբերությունների ամրապնդումը, խաղաղության համար պայքարի ուժեղացումը և այլն։ Այլ խոսքով, անընդհատ բարձրանում, աճում է կոմունիստական կուսակցության ղեկավար դերը տնտեսական ու հասարակական-քաղաքական կյանքի բոլոր բնագավառներում։

Սոցիալիստական տնտեսության առաջընթացի ղեկավարումը կոմունիստական կուսակցությունն իրականացնում է բազմազան ուղղություններով։ Նա որոշում է տնտեսության զարգացման ընդհանուր ստրատեգիական գիծը, դրա ծավալի ու տեմպերի հարցերը, ժամանակին արծարծում այն պրոբլեմները, որոնք առնչվում են ժողովրդական տնտեսության կառուցվածքային փոփոխությունների, աշխատանքի արտադրողականության բարձրացման, տնտեսական շինարարության նոր ձևերի ու մեթոդների մշակման հետ։ Կուսակցությունը վերահսկողության լայն ֆունկցիա է իրականացնում պետական և տնտեսական ապարատների գործունեության նկատմամբ, հետևում, թե ինչպես է իրականացվում իր մշակած տնտեսական քաղաքականությունը։ ՍՄԿԿ սկզբնական կազմակերպություններին իրավունք է վերապահված վերահսկել արտադրական և առևտրական կազմակերպությունների ադմինիստրացիայի գործունեությունը, օգնել նրան՝ անշեղորեն իրականացնելու կուսակցության և սովետական վերադաս մարմինների որոշումները։



«Կոմունիզմը մենք գնահատում ենք միայն այն ժամանակ,— ասել է Վ. Ի. Լենինը,— երբ նա հիմնավորված է տնտեսապես»։ (Երկեր, հ. 29, էջ 224)։ Առաջնորդվելով Վ. Ի. Լենինի ցուցումներով՝ կոմունիստական կուսակցությունը սովետական ժողովրդի ուժերն ուղղում է կոմունիզմի նյութատեխնիկական բազայի ստեղծմանը։

Կոմունիզմի կառուցման տնտեսական պրոբլեմները գիտական ամբողջ խորությամբ քննարկվեցին ՍՄԿԿ XXIV համագումարում։ ՍՄԿԿ Կենտկոմի հաշվետվության մասին ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար ընկ. Լ. Ի. Բրեժնևի, ՍՍՀՄ ժողովրդական տնտեսության զարգացման 1971—1975 թվականների հնգամյա պլանի վերաբերյալ ՍՄԿԿ համագումարի դիրեկտիվների մասին ՍՍՀՄ Մինիստրների սովետի նախագահ ընկ. Ա. Ն. Կոսիգինի զեկուցումներում, համագումարի որոշումներում և պատգամավորների ելույթներում բազմակողմանիորեն բացահայտվեցին ՍՄԿԿ XXIII համագումարից հետո ընկած ժամանակաշրջանում լենինյան կուսակցության կատարած վիթխարի գործերը։ Համագումարն ամփոփեց կոմունիզմի կառուցման ճանապարհին մեր ժողովրդի ձեռք բերած հիանալի հաջողությունները, տվեց սովետական երկրի միջազգային դրության և ներքին կյանքի մարքսիստական-լենինյան վերլուծությունը, բացահայտեց մեր հասարակարգի հետագա զարգացման օրինաչափություններն ու հեռանկարները, ամփոփեց կոմունիզմի կառուցման տեսության ու պրակտիկայի կարևորագույն սկզբունքային հարցերը։

Կենտկոմի հաշվետվության մեջ նշված էր, որ ՍՄԿԿ XXIII համագումարից հետո ընկած ժամանակաշրջանում կուսակցությունը բարձրացրել ու լուծել է կոմունիստական հասարակարգի կառուցման նոր, հասունացած պրոբլեմները, գիտականորեն հիմնավորված պատասխաններ է տվել հասարակական զարգացման ամենաբարդ հարցերին։ Հետևելով քաղաքական ղեկավարման լենինյան սկզբունքներին՝ կուսակցությունն ըստ ամենայնի զարգացրել է մասսաների նախաձեռնությունը, անհրաժեշտ պայմաններ ստեղծել աշխատավորությանն է՛լ ավելի ակտիվորեն մասնակից դարձնելու տնտեսության, պետական բոլոր գործերի կառավարմանը։

Ինչպես նախորդ տասնամյակներին, այնպես էլ վերջին հինգ տարիների ընթացքում մեր ժողովրդի մեծագործություններում մարմնավորվել են կոմունիստական կուսակցության լենինյան իմաստությունը, նրա բազմազան գործունեությունը՝ որպես մասսաների առաջնորդի և ղեկավարի, նրա մարտական ոգին և անսահման նվիրվածությունն իր ժողովրդի շահերին, կոմունիզմի իդեալներին։ Կուսակցությունը մեծ աշխատանք կատարեց տնտեսության ղեկավարումը կատարելագործելու ասպարեզում։ Նա գիտականորեն մշակեց այնպիսի սկզբունքային խոշոր տնտեսական պրոբլեմներ, ինչպիսիք են գյուղատնտեսության զարգացման, արտադրության արդյունավետության բարձրացման և կառավարման կատարելագործման ուղիների հարցերը։

Կուսակցության ու սովետական ժողովրդի ջանքերը պսակվեցին փայլուն հաջողություններով։ Անցած հնգամյակի առաջադրանքները ոչ միայն կատարվեցին, այլև շատ կարևոր ցուցանիշներով գերակատարվեցին։ Տնտեսության բնագավառում հնգամյակի հիմնական արդյունքն այն էր, որ էապես մեծացան ժողովրդական տնտեսության մասշտաբները, արագացավ դրա զարգացումը և բարելավվեցին որակական ցուցանիշները։ Ավելի ընդ-

լայնվեցին մեր տնտեսական հնարավորությունները, երկիրը վիթխարի քայլ կատարեց առաջադիմության ճանապարհին։ Հնգամյակի տարիներին երկրի ազգային եկամուտը ավելացավ 41 տոկոսով, արդյունաբերության արտադրությունն աճեց 50 տոկոսով։ Գերակատարվեցին ՍՄԿԿ XXIII համագումարի դիրեկտիվների առաջադրանքները՝ աշխատավորների բարեկեցության բարձրացման կարևորագույն ցուցանիշներով։

Հնգամյակի վերջին տարում՝ 1970 թվականին, մեր երկրում արտադրվեց 740 միլիարդ կվտ/ժամ էլեկտրաէներգիա, 353 մլն տոննա նավթ, 624 մլն տոննա ածուխ, 200 մլրդ խմ գազ, 116 մլն տոննա պողպատ, 92 մլն տոննա սև մետաղների գլանվածք, 95 մլն տոննա ցեմենտ։ Հաջողությամբ շարունակվում էր զարգանալ տնտեսության հիմքը՝ ծանր արդյունաբերությունը։ Արագ տեմպերով են զարգացել էլեկտրաէներգետիկան, քիմիական ու նավթային արդյունաբերությունը, մեքենաշինությունը և, առանձնապես, ռադիոէլեկտրոնիկան ու սարքաշինությունը։ Այժմ Սովետական Միությունը արդյունաբերական զարգացման մակարդակով առաջնակարգ դիրքեր է գրավում աշխարհում։ Մեր զարգացման տեմպերի մասին լիակատար գաղափար կազմելու համար բավական է ասել, որ միայն 1970 թվականին մոտավորապես երկու անգամ ավելի արդյունաբերական արտադրանք թողարկվեց, քան նախապատերազմյան բոլոր հնգամյակներում միասին վերցրած։

Կուսակցության կողմից ՍՄԿԿ XXIII համագումարում, Կենտկոմի մարտյան (1965 թ.) և հետագա պլենումներում գիտականորեն մշակվել է գյուղատնտեսության վերելքի կոնկրետ ծրագիր։ Գյուղատնտեսության հետագա զարգացման տեսակետից կարևոր նշանակություն ունեցան արտադրության այդ ճյուղում կապիտալ ներդրումների հետագա ավելացումը, ինչպես նաև կոլտնտեսությունների նոր օրինակելի կանոնադրության ընդունումը 1969 թվականին։ Դրանք նյութական և կազմակերպչական նոր նախադրյալներ են ստեղծել գյուղատնտեսության զարգացման բարձր և կայուն տեմպեր ապահովելու համար։ Կուսակցության մշակած միջոցառումների բարեբար ազդեցությունը սոցիալիստական գյուղատնտեսության զարգացման վրա հատկապես ակնբախորեն և համոզիչ կերպով երևում է ութերորդ հնգամյակի ամփոփիչ տվյալներից։ Գյուղատնտեսական արտադրանքի տարեկան միջին ծավալը մեծացել է 21 տոկոսով։ 1970 թվականին երկրում ստացվեց ավելի քան 186 միլիոն տոննա հացահատիկ, 6,9 միլիոն տոննա բամբակ։ Բարձրացել է հիմնական գյուղատնտեսական կուլտուրաների բերքատվությունը, ավելացել է մսի, կաթի, ձվի և անասնապահական մյուս մթերքների արտադրությունը։ Ինչպես նշվեց ՍՄԿԿ XXIV համագումարում, գյուղում տեղի են ունեցել սոցիալ-տնտեսական կարևոր փոփոխություններ։ Զգալիորեն ամրապնդվել են կոլտնտեսություններն ու սովխոզները, բարձրացել է մարդկանց նյութական շահագրգռվածությունը, տեղի է ունեցել քաղաքի և գյուղի ապրելակերպի ու կենցաղի հետագա մերձեցում։

Պատշաճ ձևով գնահատելով նվաճումները՝ ՍՄԿԿ XXIV համագումարը կատարվածը դիտեց որպես սովետական հասարակության անընդհատ զարգացման մի փուլ։ Նա ընդգծեց, որ կուսակցությունն իր գլխավոր ջանքերը նպատակամղում է դեպի առաջ, դրանք կենտրոնացնում հեռանկարների, հասունացած պրոբլեմների լուծման վրա։ Համագումարը հստակորեն նշեց նոր, էլ ավելի պատասխանատու բնագծեր, մշակեց դրանց հասնելու միջոցներ ու մեթոդներ։ Նա ամբողջ աշխարհին վերստին վառ կերպով ցու-



ցադրեց մեր մեծ պլանների իրական լինելը, տասնչորս միլիոնանոց կուսակցության և բովանդակ սովետական ժողովրդի կոլեկտիվ իմաստության ու կամքի հզոր ուժը։

Կուսակցությունը նպատակ է դնում ստեղծել մինչև այժմ չտեսնված հզոր արտադրաուժեր, կապիտալիզմի համեմատությամբ հասնել աշխատանքի բարձր արտադրողականության, գերազանցել առավել զարգացած կապիտալիստական երկրների տնտեսական մակարդակը, մոտ ապագայում աշխարհում առաջին տեղը գրավել բնակչության մեկ շնչին ընկնող արտադրանքի քանակով։ Այդ խնդիրների լուծման նպատակին կուսակցությունն ուղղում է իր լավագույն կադրերի ջանքերը, կոմունիստների հիմնական ուժերը։ Բնականոն է, որ ՍՄԿԿ կազմի ավելի քան 33 տոկոսն աշխատում է նյութական արտադրության ոլորտում։

Հաշվի առնելով սոցիալիստական արտադրության հսկայական մասշտաբները, ժողովրդա-տնտեսական կապերի բարդացումը, ժամանակակից գիտա-տեխնիկական հեղափոխության բուռն տեմպերը, կուսակցությունն իր XXIV համագումարում մշակեց այնպիսի տնտեսական քաղաքականություն, տնտեսավարման այնպիսի մեթոդներ ու ձևեր, որոնք համապատասխանում են կոմունիստական շինարարության արդի փուլին։ Կուսակցությունը վարում է թե՛ տնտեսական արդյունավետությամբ, թե՛ գիտատեխնիկական մակարդակի տեսակետից աշխարհում ամենաառաջավոր տնտեսություն ստեղծելու կուրս։



Տնտեսական խնդիրների հաջող լուծման նպատակով ՍՄԿԿ XXIV համագումարը սովետական ժողովրդի ուշադրությունը կենտրոնացրեց զարգացման ներկա փուլի առավել կարևոր մի քանի առանձնահատկությունների վրա։ «Եթե դրանք թարգմանենք քաղաքական խնդիրների լեզվով,— ՍՄԿԿ XXIV համագումարին տված Կենտկոմի հաշվետու զեկուցման մեջ նշեց ընկ. Լ. Ի. Բրեժնևը,— ապա շատ սեղմ ձևով կարելի է այսպես ասել. ժողովրդական տնտեսության հսկայական մասշտաբները, աճած տնտեսական հնարավորությունները և հասարակական պահանջմունքները անհրաժեշտ են դարձնում լրջորեն բարձրացնել մեր ամբողջ տնտեսական աշխատանքի մակարդակը, էապես բարձրացնել էկոնոմիկայի արդյունավետությունը, մեր ողջ վիթխարի տնտեսությունը վերածել էլ ավելի լավ աշխատող, լավ կարգավորված մեխանիզմի»։

ՍՄԿԿ XXIV համագումարն առաջին պլան մղեց կուսակցության տնտեսական քաղաքականության առաջիկա ժամանակաշրջանի երեք հիմնական հարցերը՝ գլխավոր նպատակների, աճի աղբյուրների և ռեսուրսների, վերջապես, տնտեսավարման մեխանիզմը կատարելագործելու հարցերը։

Տնտեսական խնդիրների ամբողջ բազմազանությունից, ամբողջ շղթայից կուսակցությունն առանձնացրել է գլխավոր օղակը՝ հասարակական արտադրության արդյունավետության և աշխատանքի արտադրողականության բարձրացումը։ Այս արմատական խնդիրը մեր օրերում հնարավոր է լուծել միայն ժամանակակից գիտա-տեխնիկական հեղափոխության նվաճումների արտադրության մեջ լայնորեն ներդնելու միջոցով։ ՍՄԿԿ XXIV համագումարում ընկ. Լ. Ի. Բրեժնևը նշեց, որ «Գիտատեխնիկական առաջադիմության վճռական արագացումը մնում է գլխավոր խնդիրներից մեկը։ Այն դարաշրջանում, երբ ավելի ու ավելի մեծ չափով է դրսևորվում գիտության, որպես անմիջական արտադրողական ուժի, դերը, գլխավոր են դառնում





արդեն ոչ թե նրա առանձին նվաճումները, որքան էլ փայլուն լինեն դրանք, այլ ամբողջ արտադրության գիտա-տեխնիկական բարձր մակարդակը։ Գիտա-տեխնիկական հեղափոխությունը դարձել է կոմունիստական շինարարության տեմպերի արագացման հիմնական աղբյուրներից մեկը, հանրային աշխատանքի արտադրողականության բարձրացման միջոցը։ Աշխատանքի արտադրողականության հաշվին առաջիկա հնգամյակում պետք է ստացվի ազգային եկամտի աճի առնվազն 80 տոկոսը, արդյունաբերական արտադրանքի աճի 87—90, շինմոնտաժային աշխատանքների աճի 95 տոկոսը։

Գիտա-տեխնիկական հեղափոխությունը գնալով ավելի աճող ներգործություն է ունենում սովետական հասարակարգի զարգացման վրա, մեծ հնարավորություններ ստեղծում արտադրության հետագա ինտենսիվացման, տնտեսական առաջադիմության տեմպերի արագացման, արտադրաուժերի աճի, սոցիալական ու կուլտուրական առաջընթացի համար։ Այն դառնում է երկու սիստեմների տնտեսական մրցության գլխավոր ճակատը։ Սակայն, չպետք է մոռանալ, որ գիտա-տեխնիկական հեղափոխության ընձեռած հնարավորություններն իրենք իրենց չեն իրականացվում։ Իրականացման այդ պրոցեսի վրա ազդելու համար անհրաժեշտ է արտադրության կազմակերպման ու ղեկավարման բազմաթիվ նոր և բարդ խնդիրներ, գիտականորեն մշակել ու կենսագործել ընթացիկ ու հեռանկարային զարգացման պլաններ, կատարելագործել արտադրության և, ընդհանրապես, հասարակության ղեկավարությունը։

Այստեղից էլ տնտեսության բնագավառում կուսակցության ղեկավարության նկատմամբ նոր, ավելի մեծ պահանջի հարուցումը պրակտիկայի կողմից, տնտեսական և, հատկապես, քաղաքական իմաստով նրա ղեկավար դերի հսկայական բարձրացումը։ ՍՄԿԿ ստեղծագործաբար է մոտենում կոմունիզմի նյութա-տեխնիկական բազայի կերտմանը։ Դրա վառ վկայությունն արդյունաբերության և շինարարության բնագավառում անցկացվող տնտեսական ռեֆորմն է, որի նպատակը ժողովրդական տնտեսության գիտական ղեկավարման բարելավումն է։ Հակառակ սոցիալիստական տնտեսության մեջ պլանային սկզբունքի թուլացման վերաբերյալ բուրժուական տնտեսագետների և ռեվիզիոնիստների առաջարկների, կոմունիստական կուսակցությունը տնտեսական ռեֆորմի կենտրոնում դնում է այդ սկզբունքի հետագա կատարելագործումը։

Տնտեսական ռեֆորմի հաջող իրականացման շնորհիվ երկրի արտադրաուժերի հետագա զարգացման համար ստեղծվում են նոր հնարավորություններ։ Այդ գործում հսկայական դեր են խաղում ՍՄԿԿ XXIV համագումարի որոշումները, որոնք կոմունիստներին, սովետական բոլոր մարդկանց զինել են գիտա-տեխնիկական առաջադիմության, պլանավորման, արտադրության կազմակերպման ու կառավարման կատարելագործման, կարգապահության ամրապնդման և այդ հիման վրա հասարակական արտադրության արդյունավետության բարձրացման կոնկրետ ծրագրով։ Կարևոր նշանակություն է ձեռք բերում ռեզերվների պատշաճ օգտագործման և ժողովրդական տնտեսության մեջ խնայողության ռեժիմի ուժեղացման համար մասսայական շարժումը, որն այս օրերին ծավալել է ՍՍՀՄ աշխատավորական զանգվածների շրջանում։

Կոմունիստական կուսակցության մշտական ուշադրության կենտրոնում



են սոցիալիստական գյուղատնտեսության հարցերը։ Բարձր արտադրողական գյուղատնտեսությունը կուսակցությունը դիտում է որպես կոմունիզմի նյութա-տեխնիկական բազայի անբաժանելի մասը։

Բայց գաղտնիք չէ, որ մեր գյուղատնտեսությունը դեռևս լիովին չի բավարարում բնակչության սննդամթերքների և արդյունաբերական հումքի այժմյան պահանջմունքները։ Սոցիալիստական գյուղի աշխատավորները դեռ պետք է լուծեն կոլտնտեսային և սովխոզային արտադրության հետագա ինտենսիվացման մի շարք բարդ խնդիրներ։ Այդ տեսակետից կարևորագույն նշանակություն ունեն ՍՄԿԿ Կենտկոմի հուլիսյան (1970 թ.) պլենումի որոշումները, որոնցում նշված են սոցինալիստական գյուղատնտեսության նյութա-տեխնիկական բազայի հետագա զարգացման կոնկրետ ուղիները։ Կուսակցությունը խնդիր է դնում՝ մոտակա տարիներին գյուղատնտեսությունը ենթարկել կոմպլեքսային մեքենայացման, լայնորեն կիրառել քիմիական պարարտանյութերը, ձեռնարկել հողերի մելիորացման լայն աշխատանքներ, գյուղում ծավալել արտադրական և կուլտուր-կենցաղային օբյեկտների շինարարություն։ Իր մասշտաբներով ու նշանակությամբ վիթխարի այդ խնդիրները դառնում են ամբողջ կուսակցության ու ժողովրդի հարազատ գործը։

ՍՄԿԿ XXIV համագումարը նշեց, որ ՍՄԿԿ հունիսյան (1970 թ.) պլենումի որոշումները ամբողջովին դրվում են ընթացիկ հնգամյակի առաջադրանքների հիմքում։ «Լուծելով ընթացիկ խնդիրները,— ՍՄԿԿ XXIV համագումարում ասաց ընկ. Լ. Ի. Բրեժնևը,— մենք միաժամանակ պետք է նոր հնգամյակում մեծ առաջընթաց քայլ կատարենք գյուղատնտեսության նյութական և տեխնիկական այնպիսի բազա ստեղծելու գործում, որը կօգնի ապագայում լրիվ լուծելու գյուղատնտեսական արտադրության և գյուղի վերափոխման պրոբլեմները, նվազեցնելու հողագործության կախումը բնության տարերային ուժերից»։

ՍՄԿԿ XXIV համագումարի դիրեկտիվներով նախատեսված է ընթացիկ հնգամյակում գյուղատնտեսության մեջ ներդնել 129 միլիարդ ռուբլի, այսինքն՝ այնքան, որքան նախորդ երկու հնգամյակում միասին վերցրած։ Գյուղատնտեսությունն անցյալ հնգամյակի համեմատությամբ կստանա ավելի մեծ քանակությամբ տրակտորներ, կոմբայններ, ավտոմեքենաներ, գյուղատնտեսական տեխնիկա, հանքային պարարտանյութեր։ Հացահատիկի տարեկան միջին արտադրությունը պետք է հասցվի 195 մլն տոննայի, մսինը՝ 14 մլն, կաթինը՝ 92 մլն տոննայի։ Զգալի աճ է նախատեսվում նաև մթերքների մյուս տեսակների արտադրության համար։

Կոմունիստական կուսակցության ողջ տնտեսական քաղաքականությունը, վերջին հաշվով, ուղղված է աշխատավորների աճող նյութական ու կուլտուրական պահանջմունքների բավարարմանը։ Դրա համար էլ ՍՄԿԿ XXIV համագումարն իր որոշման մեջ այսպես ձևակերպեց իններորդ հնգամյակի գլխավոր խնդիրը. «Ապահովել ժողովրդի կյանքի նյութական ու կուլտուրական մակարդակի զգալի վերելք՝ սոցիալիստական արտադրության զարգացման արագ տեմպերի, նրա արդյունավետության բարձրացման, գիտա-տեխնիկական առաջադիմության և աշխատանքի արտադրողականության աճի արագացման հիման վրա»։

Լ. Ի. Բրեժնևը համագումարին տված Կենտկոմի հաշվետու զեկուցման մեջ ասաց. «Կենտրոնական կոմիտեն ի նկատի ունի, որ այդ կուրսով կո-

թոշվի մեր գործունեությունը ոչ միայն առաջիկա հինգ տարում, այլև երկրի տնտեսական զարգացման ընդհանուր երկարատև հեռանկարային կողմնորոշումը: Նախանշելով այդպիսի կուրս, կուսակցությունը ելնում է նախ և առաջ այն բանից, որ մարդկանց նյութական և կուլտուրական պահանջմունքների առավել լրիվ բավարարումը հանրային արտադրության գերագույն նպատակն է սոցիալիզմի օրոք»:

Նախատեսվում է աշխատավորների դրամական եկամուտների հետագա ավելացում: Դրա հետ մեկտեղ կաճեն սպառման հանրային ֆոնդերը, էլ ավելի մեծ թափ կստանա բնակարանային շինարարությունը: Առանձնահատուկ նշանակություն է տրվում նաև պարենային և արդյունաբերական ապրանքներով, ինչպես նաև սպասարկումներով բնակչության հարաճուն վճարունակ պահանջարկն ապահովելու խնդրին: Ժողովրդական սպառման ապրանքների արտադրությունը պետք է աճի ավելի արագ տեմպերով, քան սովետական մարդկանց դրամական եկամուտները:

Նոր և մեծ խնդիրները կոմունիստական կուսակցության անդամներից պահանջում են ավելի խոր ճանաչել ու տիրապետել տնտեսական զարգացման օրենքները, կարողանալ թափանցել դրանց էության մեջ: Հենվելով ժամանակակից գիտության նվաճումների վրա՝ կուսակցական կազմակերպությունները պետք է կարողանան ավելի բարձրացնել տնտեսության ղեկավարման մակարդակը, այն համապատասխանեցնել կոմունիստական շինարարության արդի պահանջներին:

Կուսակցությունը սոցիալիստական հասարակարգի այն ուժն է, որն ունակ է ժամանակին բացահայտելու հակասությունները և լուծելու ստեղծված հանգույցները: Որքան էլ կազմակերպված է կատարվում սոցիալիստական հասարակության առաջընթաց շարժումը, այնուամենայնիվ, նրա առաջընթացի ճանապարհին առաջ են գալիս բազմաթիվ բարդություններ, որոնք, սակայն, պայմանավորված են այդ հասարակարգի ոչ-անտագոնիստական հակասություններով: Կանխատեսելով այդ հակասությունները՝ կոմունիստական կուսակցությունն անհրաժեշտ միջոցներ է ձեռնարկում, որպեսզի դրանք չվերաճեն արգելակի, այլ հաղթահարվեն ժամանակին: Նպաստելով առաջադիմականի զարգացմանը և մերժելով ու մի կողմ նետելով ոսկրացածն ու իր դարն ապրածը՝ կոմունիստական կուսակցությունը մեծ չափով արագացնում է սովետական հասարակության առաջընթացը դեպի կոմունիզմ:

Սոցիալիստական ու կոմունիստական շինարարության ողջ պրակտիկան վկայում է, որ գնալով աճում է կոմունիստական կուսակցության ղեկավար դերը տնտեսական շինարարության մեջ: Այդ շինարարության հաջող ընթացքի հաստատուն գրավականը եղել և մնում է նրա կողմից երկրի տնտեսական կյանքի ճիշտ ղեկավարումը: Զինված մարքսիզմ-լենինիզմի տեսությամբ՝ կուսակցությունն անշեղորեն գլխավորում է սովետական հասարակության առաջընթացը դեպի պարզ ու վեհ նպատակ՝ դեպի կոմունիզմ:



# ՏՆՏԵՍԱԿԱՆ ՌԵՖՈՐՄԸ ԵՎ ԱՐՏԱԴՐԱԿԱՆ ԴԵՄՈԿՐԱՏԻԱՅԻ ԶԱՐԳԱՑՈՒՄԸ

Լ. Մ. ԿԱՐԱՊԵՏՅԱՆ

Կուսակցության քաղաքականության մեջ ՍՄԿԿ XXIII և XXIV համագումարների միջև ընկած ժամանակաշրջանում ժողովրդական տնտեսության բնագավառում հիմնական տեղ էր գրավում տնտեսական ռեֆորմի անցկացումը, որը վճռական ազդեցություն ունեցավ հասարակական կյանքի բոլոր կողմերի վրա և նպաստեց կարևոր խնդիրների հաջող լուծմանը: ՍՄԿԿ XXIV համագումարի դիրեկտիվներում նշվում է, որ ՍՍՀ Միության ժողովրդական տնտեսությունն այդ ժամանակաշրջանում զարգանում էր բարձր տեմպերով և ավելի արդյունավետ, քան նախորդ հնգամյակում: Այդ հիմքի վրա զգալի բարձրացավ բնակչության կենսամակարդակը: Ռեֆորմով պայմանավորվեց մասսաների ստեղծագործական ակտիվության ընդլայնումն արտադրության կառավարման ոլորտում: Վերջինս հաստատեց մարքս-լենինյան ուսմունքը սոցիալիզմի պայմաններում սոցիալ-տնտեսական վերափոխումների մասշտաբների աճի և արտադրության կառավարման ու հասարակության կյանքի մյուս ոլորտներում մասսաների մասնակցության ընդլայնման դիալեկտիկական փոխադարձ կապի մասին:

Հակառակն են պնդում բուրժուական գաղափարախոսները, ասելով, թե իբր, անհնար է մասսաների մասնակցությունն արտադրության և ամբողջ հասարակության կառավարմանը: Ըստ նրանց, արդի գիտա-տեխնիկական հեղափոխությունը, իբր, տանում է դեպի «դեմոկրատիայի ոչնչացում», իսկ կառավարումը դառնում «ընտրախավի» կամ «տեխնոկրատիայի» գործը:

Կապիտալիստական հասարակարգում դեմոկրատիայի բացասումը, մասսաներին կառավարման ոլորտից օտարումը պայմանավորված են ոչ թե գիտա-տեխնիկական հեղափոխությամբ, այլ կապիտալիստական հասարակական հարաբերությունների բնույթով:

Հայտնի է, որ գիտա-տեխնիկական հեղափոխության նվաճումները չեն կարող լիովին փոխարինել մարդու աշխատանքը, ինչպես արտադրության մեջ, այնպես էլ կառավարման կազմակերպման գործում: Ավելին՝ ամենաավտոմատացված սիստեմում էլ, որտեղ զուգակցված են կառավարման ինֆորմացիոն, վճռող ու կատարող ֆունկցիաները, գլխավոր դերը պատկանում է մար-

դում, մարդկանց կոլեկտիվին։ Արդի գիտա-տեխնիկական սարքերը թույլ են տալիս ստեղծելու կառավարման հարցում լայն մասսաների կարծիքն ավելի արագ և ավելի ճիշտ պարզելու հնարավորություն։

Այս ամենը վկայում է, որ հակառակ բուրժուական գաղափարախոսների պնդումների, գիտա-տեխնիկական հեղափոխության նվաճումները ո՛չ թե սահմանափակում, նեղացնում, այլ, ընդհակառակը, զգալիորեն ընդլայնում են հասարակության կառավարմանը մասսաների մասնակցության հնարավորությունները։ Սակայն այդ հնարավորություններն իրականություն են դառնում սոցիալիստական հասարակարգում միայն։

Վ. Ի. Լենինն ասել է, որ սոցիալիզմը և կոմունիզմը հնարավոր է ստեղծել միլիոնավոր մասսաների ստեղծագործական ջանքերով միայն։ Նա հատուկ նշանակություն էր տալիս արտադրության կառավարմանը նրանց մասնակցությանը և դա համարում՝ նոր հասարակարգի կառուցման գլխավոր պայմանը։

Սակայն օպորտունիստները և սոցիալիզմի մյուս թշնամիները հաճախ աղավաղել և աղավաղում են լենինյան այդ դրույթը։ Հայտնի է, օրինակ, «բանվորական օպոզիցիայի» ելույթը, երբ նրա կողմնակիցները պահանջում էին ժողովրդական տնտեսության կառավարումը հանձնարարել «արտադրողների համառուսաստանյան համագումարին» և նրա մարմիններին՝ ձեռնարկություններում։ Հարցի այդպիսի դրվածքը կուսակցության X համագումարը գնահատեց որպես տեսականորեն արմատապես սխալ և մարքսիզմին ու լենինիզմին լիովին հակասող մի երևույթ։

Բայց պատմության դասերն անհասկանալի մնացին նաև ներկա օպորտունիզմի ներկայացուցիչներին։ Չարաշահելով «ժողովրդի ինքնավարության» լոզունգը, նրանք պրոպագանդում են հօգուտ այն բանի, որ արտադրության կառավարումը հանձնվի «արտադրողների կոլեկտիվին», «աշխատավորական համայնքին» (հարավսլավյան ռևիզիոնիստները), կամ «աշխատավորների խորհուրդներին՝ ձեռնարկություններում» (չեխոսլովակյան ռևիզիոնիստները)։ Փորձը ցույց է տվել, որ արդի օպորտունիստների լոզունգները «ժողովրդական ինքնավարության», «արտադրության դեմոկրատացման» մասին և այլն չեն ապահովում աշխատավորների փաստացի մասնակցությունը արտադրության կառավարմանը։ Նրանք ընդհանուր ոչինչ չունեն հասարակական ինքնավարության և արտադրական դեմոկրատիայի վերաբերյալ հարցի մարքս-լենինյան դրվածքի ու լուծման հետ։

Արտադրական դեմոկրատիայի մարքս-լենինյան ըմբռնումը ենթադրում է ոչ թե «արտադրողների կոլեկտիվի» ինքնավարության հակադրումը էկոնոմիկայի պետական կառավարմանը, այլ դրանց սերտ զուգորդումը՝ կոմունիստական կուսակցության ղեկավարությամբ։ Լինելով սոցիալիստական դեմոկրատիայի բաղկացուցիչ մասը, արտադրական դեմոկրատիան իրականացվում է ինչպես ներկայացուցչական մարմինների միջոցով, այնպես էլ հասարակության յուրաքանչյուր անդամի կողմից անմիջականորեն։ Այլ կերպ ասած, այստեղ, ինչպես և կառավարմանը մասսաների մասնակցության մյուս ոլորտներում, զուգակցվում են դեմոկրատիայի ներկայացուցչական ու անմիջական ձևերը։

Հարկ է նկատել, որ բավականին տևական ժամանակ մեզ մոտ քիչ էին զբաղվում արտադրական դեմոկրատիայով։ Ավելին, «արտադրական դե-



մոկրատիա» բուն տերմինը համարում էին օպորտունիստական, ուստի և անընդունելի։ Հարցը, իհարկե, տերմինները չեն։ Բանն այն է, որ «դեմոկրատիա» հասկացողությունը, որը նշանակում է «ժողովրդապետություն», զգալիորեն ավելի լայն է, քան այն զուտ քաղաքական ինստիտուտի հանգեցնելը։ Այն ենթադրում է «ժողովրդի իշխանության» իրականացումը հասարակական կյանքի բոլոր ոլորտներում և, ինչպես նշել է Վ. Ի. Լենինը, առաջին հերթին տնտեսական, արտադրական բնագավառում։ «Ստեղծելով նոր, սովետական տիպի պետություն,— նշել է Վ. Ի. Լենինը,— որը աշխատավորների և ճնշված մասսաների համար հնարավորություն է ստեղծում ամենագործուն մասնակցություն ցույց տալու նոր հասարակարգի ինքնուրույն կառուցմանը, մենք լուծեցինք դժվարին խնդրի մի փոքր մասը միայն։ Գլխավոր դժվարությունը տնտեսական բնագավառում է»[1]։ Նա ուշադրություն է դարձնում այն բանին, որ մասսաներին կառավարմանը մասնակից դարձնել քաղաքական բնագավառում շատ ավելի հեշտ է, քան տնտեսական բնագավառում, բայց սոցիալիզմի հաջողության համար հարկավոր է հենց վերջինը[2]։ Հանրահայտ է լենինյան այն դրույթը, թե սոցիալիստական հեղափոխության հաղթանակից հետո մեզ համար ամենահետաքրքրական քաղաքականությունը տնտեսական գործն է։

Անհրաժեշտ է ասել, որ վերջին ժամանակներս արտադրական դեմոկրատիայի հարցերը ավելի ու ավելի հաճախ են քննության առնվում գիտական կոնֆերանսներում, դրանց գծով կատարվում են հետազոտություններ, երևացել են առաջին աշխատությունները[3]։

Զարգացնել արտադրական դեմոկրատիան, նշանակում է կատարելագործել դեմոկրատական ինստիտուտների սիստեմն արտադրության մեջ։ Սոցիալիստական երկրներում գոյություն ունեն արտադրական դեմոկրատիայի տարբեր ձևեր, որոնք կատարելագործվում են տնտեսավարության և էկոնոմիկայի կառավարման նոր մեթոդների արմատավորման պրոցեսում։ Այս առումով մեր երկրում մեծ փորձ է կուտակվել սոցիալիզմի ու կոմունիզմի կառուցման պրակտիկայում։

Բոլշևիկների կուսակցության կազմակերպչական վիթխարի աշխատանքի շնորհիվ արտադրության կառավարմանը աշխատավորների փաստացի մասնակցությունը մեր երկրում իրականացվել է սովետական իշխանության առաջին իսկ օրերից։ Հանրահայտ է, օրինակ, բանվորական վերահսկողության պատմական դերը։ Բավական է նշել, որ մինչև նահանգական ժողտնտխորհների և մյուս տնտեսական մարմինների ստեղծումը, առանց բանվորական վերահսկողության համաձայնության ադմինիստրացիան չէր կարող որևէ որոշում ընդունել։ Բանվորական վերահսկողության կոմիտեները լիակատար պատասխանատվություն էին կրում ձեռնարկությունների գործունեության համար։

Հետագայում, ճյուղային ժողկոմատների, գերատեսչությունների և կառավարման մյուս հատուկ մարմինների ստեղծման պրոցեսում առաջացան դրանց

---

1 В. И. Ленин, ПСС, т. 32, стр. 171.

2 В. И. Ленин, ПСС, т. 36, стр. 190.

3 См. например, статьи: А. М. Бирман. «Реформа и человек», «Вопросы философии», 1967, № 12; Ю. Е. Волков. «Социализм и производственная демократия», «Вопросы философии», 1968, № 1; Г. Шахназаров. «Социалистическое управление и демократический контроль», «Советское государство и право», 1968, № 8.

գործունեության հետ երկրի էկոնոմիկայի զարգացման հարցերի լուծմանը մասսաների մասնակցության զուգորդման կազմակերպական նոր ձևեր։ Տնտեսական խնդիրների լուծմանը մասսաների մասնակցությունը, արտադրական կոլեկտիվների ինքնուրույնությունն ու նախաձեռնությունը մշտապես ընդլայնելու անհրաժեշտության մասին էր նշվում կուսակցության X և հաջորդ մի քանի համագումարների որոշումներում։

Արտադրական դեմոկրատիայի նշանակությունը ավելի է աճում մեր երկրի զարգացման արդի ժամանակաշրջանում, երբ դրված է կոմունիզմի նյութա-տեխնիկական բազա ստեղծելու գործնական խնդիրը։ Այդ խնդիրը լուծելիս կուսակցությունը կիրառում է գիտականորեն հիմնավորված միջոցառումների մի ամբողջ սիստեմ։ Այդ առումով առաջնակարգ նշանակություն ունի տնտեսական ռեֆորմը։ 1970 թվականին արդյունաբերական ողջ արտադրանքի 93 տոկոսը թողարկվել է պլանավորման և տնտեսական խթանման նոր սիստեմով աշխատող ձեռնարկությունների կողմից։ ՍՄԿԿ XXIV համագումարի դիրեկտիվներով նոր հնգամյակում նախատեսվում է տնտեսավարության նոր սիստեմի փոխադրել արտադրության ճյուղերի և սպասարկման ոլորտի տնտհաշվարկային բոլոր ձեռնարկություններն ու կազմակերպությունները։ Ընդսմին խնդիր է դրվում՝ «Կոմունիստական շինարարության արդի փուլի պահանջներին համապատասխան շարունակել արտադրության կառավարման, պլանավորման ու տնտեսական խթանման կատարելագործման աշխատանքը, կառավարման մեջ կիրառել նորագույն տեխնիկան։ Աշխատավորներին ավելի լայնորեն մասնակից դարձնել էկոնոմիկայի կառավարմանը»։

Սակայն ո՞րն է տնտեսական ռեֆորմի և էկոնոմիկայի կառավարմանը մասսաների լայն մասնակցության, արտադրական դեմոկրատիայի զարգացման փոխադարձ կապը։ Այս հարցի պատասխանը, ըստ էության, կարելի է գտնել բուն ռեֆորմի հիմնական խնդիրների մեջ։ Ինչպես հայտնի է, ռեֆորմի կարևորագույն խնդիրն է՝ գիտական հիմունքներով կատարելագործել ղեկավար մարմինների և արտադրական կոլեկտիվների հարաբերությունների բնույթը, ապահովել ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերի ավելի արագ զարգացումն ու ժողովրդի հարաճուն պահանջմունքների առավել լրիվ բավարարումը։

Հասկանալի է, որ այժմ տնտեսական ռեֆորմի բոլոր խնդիրները կարող են հաջողությամբ լուծվել յուրաքանչյուր ձեռնարկության ներքին առանձնահատկությունները և պայմանները խստորեն հաշվի առնելով։ Իսկ դա հնարավոր է կառավարմանը յուրաքանչյուր արտադրական կոլեկտիվի և նրա յուրաքանչյուր աշխատողի ակտիվ մասնակցության դեպքում։

Արտադրական դեմոկրատիայի զարգացումը տնտեսական ռեֆորմի պայմաններում արտահայտվում է ձեռնարկությունների իրավունքների ու ինքնուրույնության ընդլայնմամբ, տնտեսական բոլոր խնդիրների լուծման գործում կոլեկտիվի յուրաքանչյուր անդամի ստեղծագործական ակտիվությամբ։

Վերցնենք, օրինակ, արտադրության պլանավորման հարցերը։ Տնտեսական ռեֆորմն էական փոփոխություններ է մտցնում պլանավորման պրակտիկայում, զուգակցում է ճյուղային և տերիտորիալ պլանավորումը, և դա ապահովում է համապետական ու տեղական շահերի միասնությունը և առավել ճշտությամբ արտացոլում դեմոկրատիզմն ու ցենտրալիզմը։ Բնորոշն այժմ այն է, որ այժմ ոչ թե պատրաստի պլանների մասին հայտնում են կոլեկտիվին ի գիտություն, այլ հենց սկզբից պլանները մշակվում են ձեռնարկություններում։ Հասկանալի է, որ, ինչպես և առաջ, բոլոր ձեռնարկություններն աշխատում են միասնական պետական պլանավորման սկզբունքով։ Բայց այժմ դրանց զգալի ինքնուրույնություն է տրված՝ համախառն արտադրանքի թողարկումը, աշխատանքի արտադրողականության աճը, արտադրանքի ինքնարժեքի իջեցումը, նյութական ապահովվածությունը, աշխատավարձը և արտադրական-տնտեսական գործունեության մյուս ցուցանիշները պլանավորելիս։

Արտադրական պլանների մշակման գործում ձեռնարկությունների կոլեկտիվների ինքնուրույնության զարգացման համար նոր հնարավորություններ են ստեղծվում օպերատիվ-արտադրական պլանավորումը լայնորեն կիրառելու պայմաններում։ Այդպիսի պլանավորման առանձնահատկությունն այն է, որ համընդգրկող պլան-գրաֆիկ է կիրառվում յուրաքանչյուր արտադրամասի, տեղամասի, բրիգադի ու բանվորի համար։ Դա նպաստում է կոլեկտիվի յուրաքանչյուր անդամի ստեղծագործական ակտիվության զարգացմանը, ձեռնարկության աշխատանքի ոչ ռիթմիկության վերացմանը, ապահովում է աշխատանքի արտադրողականության բարձրացումը և արտադրական պլանների ժամանակին կատարումը։

«Միայն աշխատանքի արտադրողականության աճը յուրաքանչյուր բանվորական տեղում,— նշվում է ՍՄԿԿ XXIV համագումարի դիրեկտիվների նախագծում,— և ամբողջ ժողովրդական տնտեսության էֆեկտիվության բարձրացումը կբազմապատկեն այն բարիքները, որ հանրային արտադրության մեջ յուրաքանչյուրի մուծած աշխատանքային ավանդի համեմատ կստանան սովետական մարդիկ»։

Տնտեսական պլանները սոցիալիստական հասարակարգում սերտորեն առնչված են սոցիալական պլանավորման հետ։ Վ. Ի. Լենինն ընդգծում էր, որ մեր պլանները՝ «տնտեսական ու սոցիալական շինարարության»[1] պլաններ են։ Ուստի ժողովրդական տնտեսության զարգացման պետական պլաններում տնտեսական խնդիրների հետ մեկտեղ, նախատեսվում է բնակարանային ու կուլտուր-կենցաղային շինարարությունը, դպրոցների, հիվանդանոցների, սանատորիաների, կուլտուր-կենցաղային հիմնարկությունների ցանցի ընդլայնումը, ժողովրդի բարեկեցության բարձրացումը։ Ընդհանուր-պետական պլանների հիման վրա սկսեցին սոցիալական զարգացման պլաններ մշակվել յուրաքանչյուր քաղաքի, շրջանի, ավանի համար։ Այդ պլաններն ավելի կոնկրետ և գործուն դարձնելու համար կարևոր նշանակություն ունի յուրաքանչյուր ձեռնարկության սոցիալական պլանավորումը։ Պարզ է, որ այս խնդիրը ևս կարող է հաջողությամբ լուծվել արտադրական կոլեկտիվի բոլոր անդամների ակտիվ մասնակցության դեպքում միայն։

ՍՄԿԿ XXIV համագումարի դիրեկտիվներում տվյալ հարցի առթիվ գրված է. «Սահմանել, որ ձեռնարկություններն ու կոլտնտեսությունները, ղեկավարվելով ՍՍՀՄ ժողովրդական տնտեսության զարգացման 1971—1975 թվականների հնգամյա պլանի առաջադրանքներով, մշակում են իրենց հնգամյա պլանները, որոնք ապահովում են հնգամյակի կատարումը աշխատանքային ու նյութական ռեսուրսների նվազագույն ծախսումներով։

Ապահովել 1971—1975 թվականների հնգամյա պլանը կազմելուն բան-

վորներին, կոլտնտեսականներին, ինժեներա-տեխնիկական աշխատողներին ու ծառայողներին լայնորեն մասնակից դարձնելը»։

Արտադրական կոլեկտիվի բոլոր անդամների ստեղծագործական ակտիվությունից է կախված տնտեսական ռեֆորմի նաև մի այլ խնդրի լուծումը՝ տնտեսական խթանման նոր սիստեմի արմատավորումը, նյութական շահագրգռվածության սկզբունքի ճիշտ կիրառումը։

Նյութապես շահագրգռվածությունը սոցիալիզմի օրոք սուբյեկտիվորեն պայմանավորված և դրսևորվում է միմյանց հետ փոխադարձորեն կապված երեք ձևերով՝ հասարակական, կոլեկտիվ և անձնական։ Լրացնելով միմյանց, այդ ձևերը վճռական ազդեցություն են գործում սոցիալիստական արտադրության զարգացման վրա։ Ուստի և նյութական խթանման հարցին հարկավոր է մոտենալ ոչ միայն աշխատողի շահերի բավարարման դիրքերից, այլ նախ և առաջ նկատի ունենալ, թե այն ինչպես է անդրադառնում սոցիալիստական տնտեսավարության բոլոր սկզբունքների իրականացման վրա։ Այդպիսի մոտեցումն ապահովվում է այն բանով, որ տնտեսական ռեֆորմն ընդլայնում է ձեռնարկությունների իրավունքները նյութական խթանման սեփական ֆոնդ ստեղծելու և ինքնուրույն կերպով այն տնօրինելու գործում։ Զգալիորեն ավելանում է պարգևավճարումների տեսակարար կշիռն աշխատավարձում, ընդլայնվում է պարգևավճար ստացող աշխատողների շրջանը, ավելի լայնորեն է կիրառվում պարգևավճարման դիֆերենցված սիստեմը։

Նյութական խթանման արդյունավետությունը սերտորեն կապված է բարոյական խրախուսման հետ։

ՍՄԿԿ XXIV համագումարի դիրեկտիվներում խնդիր է դրված՝ «Աշխատանքի արդյունքների նկատմամբ բանվորների, ծառայողների ու ձեռնարկությունների կոլեկտիվների նյութապես շահագրգռվածության ավելացման հետ մեկտեղ, ամեն կերպ ամրապնդել աշխատանքի նկատմամբ նյութական խթանները»։

Վերջին տարիներս առաջ են եկել բարոյական ու նյութական խթանման զուգակցման բազմաթիվ նոր ձևեր։ Դրանցից հիմնականներն են. կոլեկտիվի յուրաքանչյուր անդամի աշխատանքի արդյունքների հասարակական քննարկումը և նյութական խրախուսման հրապարակայնությունը, սանատորիաների, հանգստյան տների և տուրիստական ուղևորությունների արտոնյալ ուղեգրերի, հերթից դուրս բնակարանների հատկացումը, «Կոմունիստական աշխատանքի հարվածային», «Արտադրական տեղամասի լավագույն վարպետ», «Լավագույնը պրոֆեսիայում», «Լավագույն ռացիոնալիզատոր» պատվավոր կոչումների շնորհումը և այլն։ Կոլեկտիվի ու հասարակության կողմից յուրաքանչյուրի աշխատանքին տրված բարոյական գնահատականի այդ և մյուս ձևերի նպատակասլաց կիրառումը բարձրացնում է նյութական խրախուսման նշանակությունը և, որ ամենագլխավորն է, նպաստում է աշխատանքի հասարակական նշանակության ճիշտ ըմբռնման, աշխատանքային հոգատարության և հասարակության հանդեպ պատասխանատվության զգացումի, աշխատանքի և նրա արդյունքների նկատմամբ էսթետիկական հաճույքի ձևավորման դաստիարակությանը։

Նյութական և բարոյական խթանման հմուտ զուգակցման դրական փորձ է կուտակվել Երևանի էլեկտրալամպերի գործարանում, Լենինականի տեքստիլ



և Ալավերդու պղնձաքիմիական կոմբինատներում, հանրապետության մի շարք այլ ձեռնարկություններում։

Տնտեսական ռեֆորմն իրականացվում է արդի գիտա-տեխնիկական հեղափոխության պայմաններում։ Գիտա-տեխնիկական առաջադիմության նվաճումների ժամանակին արմատավորումը կանխորոշում է էկոնոմիկայի և հասարակական կյանքի մյուս կողմերի արագ զարգացումը։ Իսկ դա իր հերթին ապահովվում է կոլեկտիվ բանականությամբ, արտադրական ողջ կոլեկտիվի ջանքերով, գիտելիքներով և փորձով։ Ահա թե ինչու տնտեսական ռեֆորմը հաղթահարում է անցյալի այն պրակտիկան, երբ տեխնիկական առաջադիմության հարցերով զբաղվում էր հիմնականում ձեռնարկության ղեկավարությունը և ինժեներա-տեխնիկական անձնակազմը։ Ռեֆորմը պայմաններ է ստեղծում գիտա-տեխնիկական առաջադիմության իրականացմանը արտադրական կոլեկտիվի յուրաքանչյուր անդամի ակտիվ մասնակցության համար։

Բազմաթիվ են այդ խնդրի լուծմանը մասսաների ակտիվ մասնակցության ձևերն ու մեթոդները։ Բեղմնավոր աշխատանք են կատարում, օրինակ, գյուտարարների ու ռացիոնալիզատորների համամիութենական ընկերության կազմակերպությունները, որոնք ներկայումս գոյություն ունեն գրեթե բոլոր ձեռնարկություններում։ Շատ ձեռնարկություններում գյուտարար կամ ռացիոնալիզատոր է յուրաքանչյուր երրորդ-չորրորդ աշխատողը։ Ռացիոնալիզատորների ու գյուտարարների թիվը միայն մեր հանրապետությունում 1970 թվականին կազմել է 15.841 մարդ։ Վերջին եռամսյակի ընթացքում նրանց ռացիոնալիզատորական առաջարկությունների ու գյուտերի տնտեսական արդյունքը կազմել է 104 միլիոն ռուբլի։

Ձեռնարկությունների արտադրական գործունեության հարցերի լուծմանը մասսաների ակտիվ մասնակցությունը դրսևորվում է նաև նորարարների խորհուրդների, հասարակական կոնստրուկտորական բյուրոների, տնտեսական վերլուծության բյուրոների աշխատանքում։ Դրանցից շատերը կազմակերպվել են համեմատաբար ոչ հեռու անցյալում, բայց լավ են դրսևորել իրենց և լայն տարածում են գտել։ Նրանց բեղմնավոր աշխատանքն արտադրական դեմոկրատիայի հետագա զարգացման վկայությունն է։

Արտադրության կառավարման դեմոկրատական սկզբունքների զարգացման գործում կարևոր դեր են խաղում մշտապես գործող արտադրական խորհրդակցությունները։ Դրանց կազմում են գտնվում առաջավոր բանվորների մոտ 60 տոկոսը, լավագույն կոնստրուկտորներ, արտադրամասերի և տեղամասերի վարիչներ, վարպետներ և ակտիվ հասարակական գործիչներ։ Խոշոր ձեռնարկություններում ստեղծվել են մշտապես գործող արտադրական խորհրդակցություններ, դրանց առընթեր հատուկ հանձնաժողովներ, որոնք զբաղվում են բանվորների ու ծառայողների առաջարկությունների ընդհանրացմամբ։ Դրանում է արտադրության կառավարմանը մասսաների փաստացի մասնակցության վառ դրսևորումներից մեկը։

Այդ կարևոր հարցում պակաս դեր չեն խաղում բանվորական ժողովները և հասարակական կազմակերպությունների ժողովները։ Հասկանալի է, որ խոսքը այդպիսի ժողովներին ակտիվ մասնակցության մասին է, որ նշանակում է՝ հանդես գալ քննարկվող հարցերով, նոր պրոբլեմներ դնել, կոնկրետ առաջարկություններ մտցնել։

Փորձը ցույց է տալիս, որ բանվորների ու ծառայողների մեծամասնու-

թյունը օգտագործում է սոցիալիստական դեմոկրատիայի այդ ձևը։ Այդպիսի ժողովներ սկսեցին ավելի ու ավելի հաճախ անցկացվել ինչպես ձեռնարկության մասշտաբով, այնպես էլ ըստ արտադրամասերի, տեղամասերի ու հերթափոխների։ Ուշագրավ է, որ դրանք ավելի հաճախ հրավիրվում են ներքևից եկող նախաձեռնությամբ։ Այդ ժողովներում լսվում են ձեռնարկությունների դիրեկտորների, նրանց տեղակալների, արտադրամասերի ու տեղամասերի պետերի, հասարակական կազմակերպությունների ղեկավարների հաղորդումները։ Հազվադեպ չէ, երբ որպես զեկուցողներ հանդես են գալիս իրենք բանվորները։

Այս առումով արդյունավետ աշխատանք է կատարվում Երևանի Վ. Ի. Լենինի անվան էլեկտրամեքենաշինական գործարանում։ Ձեռնարկության բանվորական ժողովներում հրապարակայնորեն քննարկվում է գործալքման, աշխատանքի նկատմամբ անբարեխիղճ վերաբերմունքի, հարբած վիճակում աշխատանքի գալու յուրաքանչյուր դեպք, ու աշխատանքի վայրում թույլ տված հակահասարակական արարքի ամեն մի փաստ։ Այդ միջոցով հասարակական կարծիք է ստեղծվում աշխատանքի կարգապահությունը և սոցիալիստական համակեցության կանոնները խախտողների շուրջը։ Ստեղծվում է ընկերական փոխադարձ վստահություն ու փոխադարձ պահանջկոտություն, հանձնարարված գործի համար բարձր պատասխանատվության մթնոլորտ։ Դրանով իսկ ուժեղանում է սեփական կոլեկտիվի գործի նկատմամբ բանվորական պատվի և արժանապատվության զգացումը։

Այդ նույն նպատակն է հետապնդում ձեռնարկության գործունեության վերահսկողության իրականացմանը բանվորներին ու ծառայողներին լայնորեն մասնակից դարձնելը։ Մասսաների կողմից իրականացվող վերահսկողությունը սոցիալիստական դեմոկրատիայի ինստիտուտներից մեկն է։ Այն որքան ավելի լայնորեն է ընդգրկում պետական ու տնտեսական կյանքի բոլոր ոլորտները, այնքան ավելի լիակատար է դեմոկրատիան։ Ժողովրդական վերահսկողության տարբեր ձևերը զարգանում ու կատարելագործվում են սոցիալիզմի ու կոմունիզմի կառուցման հիմնական խնդիրներին համապատասխան։

Ներկայումս վերահսկողության մարմինների սիստեմի ամենամասսայական օղակը ժողովրդական վերահսկողության խմբերն ու պոստերն են ձեռնարկություններում, կառույցներում, կոլտնտեսություններում, սովխոզներում և այլ կոլեկտիվներում։

Այդ խմբերին ու պոստերին լայն հնարավորություն է ընձեռված ադմինիստրացիայի առջև բարձրացնել թերությունները վերացնելու և մեղավորներին պատասխանատվության ենթարկելու վերաբերյալ հարցերը։ Ձեռնարկություններում ժողովրդական վերահսկողության տարբեր ձևերի կոնկրետ կիրառումը նպաստում է արտադրության կառավարման գործում մասսաների ստեղծագործական ակտիվության բարձրացմանը։

Մասսաների արտադրական գործունեության բնագավառում նրանց ստեղծագործական ակտիվության զարգացման առավել գործուն ձևը սոցիալիստական մրցությունն է։ Ծնունդ առնելով իր սոցիալական բովանդակությամբ նոր կոլեկտիվ աշխատանքի բազայի վրա, այն դարձել է սոցիալիստական հասարակության շարժիչ ուժը։

Սոցիալիստական մրցության բովանդակությունն ու ձևերն զգալիորեն հարստացան տնտեսական ռեֆորմի պայմաններում։ Դա բացատրվում է նախ



և առաջ այն բանով, որ ռեֆորմը փոփոխություններ է մտցրել ձեռնարկությունների գործունեության արդյունքների գնահատման չափանիշներում։ Եթե մինչև ռեֆորմը մրցության գլխավոր չափանիշը արտադրական պլանների կատարումն ու գերակատարումն էր, ապա ներկայումս դա բավական չէ։ Տնտեսավարության նոր պայմաններում սոցիալիստական մրցությունը նախատեսում է աշխատանքի արտադրողականության աճի ավելի բարձր տեմպերի, թողարկվող արտադրանքի ինքնարժեքի իջեցման, ռեսուրսների խնայողության, գիտության ու տեխնիկայի նվաճումների արմատավորման արագացման, աշխատանքի պայմանների բարելավման և այլ ցուցանիշների կոմպլեքսի նվաճումը։ Հասկանալի է, որ այդ խնդիրների հաջող լուծումը պահանջում է սոցիալիստական մրցության զանազան ձևերի մեջ ներգրավել կոլեկտիվի բոլոր անդամներին։

Սոցիալիստական մրցության նոր վերելք սկսվեց ՍՄԿԿ XXIV համագումարի նախապատրաստման շրջանում։ Մոսկվայի, Լենինգրադի և երկրի այլ քաղաքների առաջավոր ձեռնարկությունների նախաձեռնությամբ քաղաքի ու գյուղի միլիոնավոր նոր աշխատողներ մտան կուսակցության հերթական համագումարն ըստ արժանվույն դիմավորելու համար ծավալված մրցության մեջ։

Մեր հանրապետությունում որպես նախաձեռնողներ հանդես եկան Հայաստանի Վ. Ի. Լենինի անվան էլեկտրամեքենաշինական գործարանի և Երևանի Ս. Մ. Կիրովի անվան քիմիական կոմբինատի և բազմաթիվ այլ կոլեկտիվները։

Կուսակցության XXIV համագումարի պատվին ծավալված սոցիալիստական մրցության մեջ մտան գյուղի աշխատողները։ Նրանք բարձր պարտավորություններ ստանձնեցին տեխնիկական և այլ կուլտուրաների բերքատվության բարձրացման, անասնապահության արտադրանքի ավելացման, գյուղատնտեսության վերելքի՝ ՍՄԿԿ Կենտկոմի հուլիսյան (1970 թ.) պլենումի նախատեսած ծրագրի իրականացման գծով։

Սրանք են տնտեսական ռեֆորմի պայմաններում արտադրական դեմոկրատիայի զարգացման հիմնական բնագավառներից մի քանիսը։ Շատ ձեռնարկությունների արդյունավետ գործունեությունը վկայում է այն մասին, որ ռեֆորմը մեծ հնարավորություններ է ստեղծում արտադրության կառավարմանը մասսաներին լայնորեն մասնակից դարձնելու համար։ Սակայն փորձը ցույց է տալիս, որ արտադրական բոլոր կոլեկտիվները չէ, որ օգտագործում են այդ հնարավորությունները, որի հետևանքով լուրջ թերություններ կան նրանց գործունեության մեջ։

Այդ թերությունների պատճառներից մեկն էլ՝ արտադրական դեմոկրատիայի ծավալման նպատակով տարվող աշխատանքի բացակայությունն է։ Պատճառներից առավել էականներն են, մեր կարծիքով՝ արտադրության կառավարման նկատմամբ պասսիվ վերաբերմունքի իներցիան, որը գալիս է տնտեսավարության նախկինում գոյություն ունեցող սիստեմից։

Ձեռնարկությունների իրավունքների իրականացմանը և մասսաների ստեղծագործական ակտիվության զարգացմանը խոչընդոտող բոլոր պատճառների լիակատար վերացումը այն պայմանն է, որն անհրաժեշտ է տնտեսական ռեֆորմը հաջողությամբ կենսագործելու և ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերի արագ զարգացումն ապահովելու համար։

Այդ խնդրի լուծման գործում վճռական է կուսակցական կազմակերպությունների դերը, որն աճում է սոցիալիզմի ու կոմունիզմի կառուցման ընթացքում։ Հասարակական կյանքի տարբեր ոլորտների ղեկավարության կազմակերպման առումով կուսակցության դերի բարձրացումը պայմանավորվում է ղեկավարման գիտական մեթոդների նշանակության աճմամբ և սոցիալիստական դեմոկրատիայի համակողմանի զարգացմամբ։

Փորձը ցույց է տալիս, որ տվյալ բնագավառում առավել մեծ արդյունք է ստացվում այն կոլեկտիվներում, որտեղ կուսակցական կազմակերպությունները մշտապես զբաղվում են տնտեսավարության նոր սիստեմի արմատական հարցերով, հոգ են տանում արտադրության կառավարմանը մասսաներին մասնակից դարձնելու համար, գաղափարական-դաստիարակչական և կազմակերպչական աշխատանքը սերտորեն կապում են քաղաքական խնդիրների լուծման հետ։

Ուստի և ՍՄԿԿ XXIV համագումարի դիրեկտիվներում նշվում է, որ բոլոր կուսակցական կազմակերպությունները պետք է լայնորեն ծավալեն քաղաքական ու կազմակերպչական աշխատանքն այդ ուղղությամբ, խորամուխ լինեն ձեռնարկությունների, կոլտնտեսությունների, սովխոզների գործունեության մեջ, քննադատորեն վերլուծեն գործերի վիճակը և երևան հանեն հանրային արտադրության էֆեկտիվության բարձրացման ռեզերվները, ապահովեն պետական կարգապահության խստագույն պահպանումը։ Այդ աշխատանքի հաջող կատարումը մեծ չափով կախված է արտադրության կառավարմանը մասսաներին մասնակից դարձնելուց, արտադրական դեմոկրատիայի զարգացումից։

«Դեմոկրատական հիմունքների հետագա զարգացման գիծն,— ասում է ընկ. Լ. Ի. Բրեժնևը,— իր արտահայտությունը գտավ արտադրության կառավարման գործում աշխատավորության առավել լայնորեն ներգրավելու մեջ, հանրապետությունների և մարզերի տնտեսական իրավասությունը, ինչպես նաև ձեռնարկությունների օպերատիվ ինքնուրույնությունն ընդլայնելու մեջ»։

ՍՄԿԿ վերջերս ավարտված XXIV համագումարը ամփոփելով կուսակցության վերջին հնգամյակի բազմակողմանի գործունեության արդյունքները, սահմանեց մեր երկրի զարգացման հաջորդ ժամանակաշրջանի նոր հեռանկարներն ու կոնկրետ խնդիրները։ Պատմության փորձը ցույց է տալիս, որ միայն կուսակցության ղեկավար դերի հետևողականորեն իրականացման դեպքում է, որ ապահովվում է հասարակարգի գիտական ղեկավարումը, սոցիալիստական դեմոկրատիայի զարգացումը և սոցիալիզմի ու կոմունիզմի կառուցման բոլոր խնդիրների հաջող լուծումը։



# ՄՏՈՐՈՒՄՆԵՐ, ԼՈՒԾՄԱՆ ԿԱՐՈՏ ՀԱՐՑԵՐ

Շ. Ս. ՍԻՄՈՆՅԱՆ

Հայկական ՍՍՀ լուսավորության մինիստր

Անցած հնգամյակը սովետական հանրակրթական դպրոցի համար եղավ իրոք մեծ վերափոխումների ժամանակաշրջան։ Մեր երկրում ժողովրդական կրթության զարգացումը դիտելով որպես սոցիալական և գիտատեխնիկական առաջընթացի գլխավոր նախադրյալներից մեկը՝ կոմունիստական կուսակցությունը կանխագծեց կրթական գործի զարգացման հիմնական ուղիները և, դրանից ելնելով, սահմանեց հանրակրթական դպրոցի գլխավոր խնդիրներն այս հնգամյակում։ Դրանցից մեկը համարվեց անցումը ընդհանուր միջնակարգ կրթության։

Մեր երիտասարդության համար ընդհանուր միջնակարգ կրթության հնարավորությունն իրականություն դարձնելն անգերագնահատելի, հույժ պատասխանատու մի խնդիր է, որի հումանիստական նշանակությունն ավելի ակներև է դառնում, երբ հիշում ենք, որ աշխարհի բնակչության մեկ երրորդը դեռևս անգրագետ է, իսկ ցարական չինովնիկները գտնում էին, թե Ռուսաստանում բնակչության անգրագիտության վերացումը կպահանջի 150 տարի։

Հայաստանում սովետական կարգերի հաստատումից անցել է ընդամենը հիսուն տարի. այդ ժամանակամիջոցում այն դարձել է համատարած գրագիտության երկիր, իրականացվել է ընդհանուր տարրական, ապա՝ ութամյա պարտադիր ուսուցումը։

Կոմունիստական շինարարության ներկա փուլում դպրոցական կրթության մակարդակի բարձրացումը, դրա բովանդակության հարստացումը մեզ համար կենսական նշանակություն ունեն, կարևոր գործոն են ժողովրդի ընդհանուր կուլտուրական մակարդակի բարձրացման, մարդկանց կոմունիստական փոխհարաբերությունների ամրապնդման, կոմունիզմի նյութատեխնիկական բազայի ստեղծման համար։ Մեր դպրոցական ուսուցչական կոլեկտիվները, ինչպես և ժողկրթության օրգանները, գիտակցում են դրա կարևորությունը և ջանում պատշաճ ձևով լուծել դպրոցի առջև ծառացած խնդիրները։

Մեր երկրում ընդհանուր միջնակարգ կրթության իրականացումն ապահովելու նպատակով լուրջ աշխատանքներ կատարվեցին վերացնելու համար

ութամյա պարտուսի գործում եղած թերությունները։ Բարելավվեցին նաև ընդհանուր միջնակարգ կրթության իրականացման պայմանները։ Ընդարձակվեց միջնակարգ մասնագիտական ուսումնական հաստատությունների և միջնակարգ կրթությունն ապահովող պրոֆեսիոնալ տեխնիկական ուսումնարանների ցանցը, ուսումնանյութական և մանկավարժական, մեթոդական տեսակետից ամրապնդվեցին գյուղական միջնակարգ դպրոցները, բարելավվեց աշխատող երիտասարդության կրթության գործը։

Մեր հանրապետությունում ևս հաջողությամբ է իրականացվում անցումն ընդհանուր միջնակարգ կրթության։ Եվ դա շնորհիվ այն բանի, որ ուսուցչությունը, ժողկրթության մարզի բոլոր աշխատողները, ծնողներն ու լայն հասարակայնությունը ձեռնարկեցին դրան պատշաճ հետևողականությամբ, այդ գործի սոցիալական բնույթի կարևորության խոր գիտակցությամբ։

Թափված ջանքերը տվեցին ակներև արդյունք. ընթացիկ տարում դպրոցների VIII դասարանների շրջանավարտներից 37185-ը կամ շրջանավարտների ընդհանուր թվի 80,5 տոկոսը շարունակում է սովորել IX դասարանում։ Այլ միջնակարգ դպրոցներում (միջնակարգ մասնագիտական ուսումնական հաստատություններում, երեկոյան դպրոցներում, պրոֆտեխնիկական ուսումնարաններում) սովորում է VIII դասարանի շրջանավարտների մոտ 15 տոկոսը։ Այսպիսով, միջնակարգ կրթությունը շարունակում է VIII դասարանների բոլոր շրջանավարտների ավելի քան 95 տոկոսը։ Այս տվյալները ցույց են տալիս, որ հանրապետությունում ընդհանուր միջնակարգ կրթության իրականացումը, փաստորեն, մոտենում է իր կազմակերպական ավարտին։ Իրոք, վերը բերված ցուցանիշներն զգալի չափով գերազանցում են եղբայրական մյուս հանրապետությունների, ինչպես և միութենական միջին ցուցանիշները։

Վերջին տարիներին զգալիորեն ընդարձակվել է միջնակարգ դպրոցների ցանցը։ Ներկայումս Հայաստանում գործում է 1324 դպրոց, որոնցից տարրական՝ 103, ութամյա՝ 492 և միջնակարգ՝ 729։ Աշակերտության միջին թիվը յուրաքանչյուր միջնակարգ դպրոցում հասնում է 720-ի։ Դրանք խոշոր դպրոցներ են։ Միջնակարգ դպրոցների միջին մեծությամբ Հայաստանն առաջիններից է միութենական հանրապետությունների շարքում։ Նման դպրոցների ցանցի ընդլայնումը, անտարակույս, ընդհանուր կրթության հաջող իրականացման կարևորագույն գործոններից է։

Հնգամյակի ընթացքում միջնակարգ դպրոցները տվել են 122100 շրջանավարտ, նախորդի համեմատությամբ՝ 90500-ով ավելի։ Ինչ խոսք, դրական երևույթ է ընդհանուր միջնակարգ կրթության իրականացմանը զուգընթաց հանրակրթական միջնակարգ դպրոցի շրջանավարտների թվի աճը. սակայն մեզ համար ամենակարևորը միջնակարգ կրթության իրականացման ուղիների ճիշտ համամասնության սահմանումն է։ Արդյոք պե՞տք է խրախուսել VIII դասարանի բոլոր շրջանավարտների փոխադրումը IX դասարան։

Հանրապետության ժողովրդական տնտեսության զարգացման շահերից ելնելով՝ վերջին երկու տարում ընդունելությունը IX դասարանները նվազել է 2 տոկոսով. դրա փոխարեն զգալի չափով ավելացել է ընդունելությունը միջնակարգ մասնագիտական հաստատությունները և պրոֆեսիոնալ տեխնիկական ուսումնարանները։ Բացի այդ, հաշվի առնելով նաև արդյունաբերության՝ մեր հանրապետությանը բնորոշ ճյուղերի զարգացման հեռանկարները, պլանային օրգանները, ժողովրդական կրթության մարմինների հետ մեկտեղ,



առաջիկա տարիների համար առավել ճիշտ պետք է որոշեն VIII դասարանն ավարտածներին կրթության հետագա օղակներում ընդգրկելու համամասնությունը։ Պետք է խրախուսել երիտասարդության ընդգրկումը միջնակարգ մասնագիտական ուսումնական հաստատությունները և միջնակարգ կրթության ցենզն ապահովող պրոֆեսիոնալ տեխնիկական ուսումնարանները։

Այնուամենայնիվ, VIII դասարանների շրջանավարտների ճնշող մեծամասնությունը, անշուշտ, շարունակելու է կրթությունը հանրակրթական դպրոցների IX դասարաններում։ Ուստի, միջնակարգ դպրոցներում պետք է հնարավոր ամեն ինչ անել՝ երիտասարդությանը գործնական պատրաստություն տալու նպատակով։

Մեզ մոտ ընդհանուր միջնակարգ կրթության իրականացումը հարուցել է նոր խնդիրներ, որոնցից ամենաայժմեականը, թերևս, այն է, թե միջնակարգ դպրոցն ի՞նչ նպատակի համար է պատրաստում երիտասարդությանը։ Այստեղ, անշուշտ, շատ կարևոր է պատանիների ու երիտասարդության մասնագիտական կողմնորոշումը. այլ կերպ ասած՝ արտադրության զարգացման շահերի ու կրթության պրոբլեմների սերտ միասնության անհրաժեշտությունը։ Սրանք, ըստ էության, որակյալ կադրերի պատրաստման միասնական պրոցեսի երկու կողմերն են։ Դրա համար, ամենից առաջ պետք է կատարելագործել դպրոցի պոլիտեխնիկական-աշխատանքային ուսուցումը։

Դպրոցներում իրեն չարդարացրեց աշակերտներին զանգվածաբար պրոֆեսիոնալ պատրաստություն տալու փորձը։ Պրոֆեսիոնալ պատրաստությունն (արտադրական ուսուցման ձևով) այժմ պահպանվում է մի քանի դպրոցներում, որոնք համակցված են արդյունաբերական խոշոր ձեռնարկությունների, կոլտնտեսությունների կամ սովխոզների, որի շնորհիվ և ունեն համապատասխան նյութատեխնիկական հնարավորություններ։ Հանրապետությունում այժմ գործում են տասը այդպիսի դպրոց։

ՍՍՀՄ Մինիստրների սովետի որոշմամբ վերջին տարիներս որոշ դպրոցներում ուսուցանում են ավտոգործը, գյուղական դպրոցներում՝ տրակտորայինը։ Ի տարբերություն դպրոցներում զանգվածաբար մտցված արտադրական ուսուցման (երբ մասնագիտության ուսուցմանը ժամեր էին հատկացվում ի հաշիվ հանրակրթական առարկաների, որի հետևանքով զգալիորեն իջնում էր աշակերտների հանրակրթական պատրաստության մակարդակը), մասնագիտական պատրաստության համար այժմ օգտագործվում են հանրակրթական դպրոցի ուսումնական պլանում եղած աշխատանքային ուսուցման և, մասամբ՝ ֆակուլտատիվ պարապմունքներին հատկացված ժամերը։

Դպրոցի ներկա ուսումնական պլանը և ուսուցման նոր բովանդակությունն ավելի լայն հնարավորություններ են ընձեռում ուսուցումը կյանքի հետ կապելու, մեր երիտասարդությանը ճիշտ կողմնորոշելու, կյանքին ինչպես հարկն է նախապատրաստելու համար։

Ընդհանուր միջնակարգ կրթության իրականացման առումով կարևոր է դպրոցի նյութական բազայի բարելավումը։ Հնգամյակի ընթացքում կենտրոնացված կապիտալ ներդրումների և կոլտնտեսությունների միջոցներով կառուցվել են դպրոցներ 169.600, իսկ այլ միջոցների հաշվին՝ 24.400 աշակերտական տեղով (նախորդ հնգամյակի համեմատ 43000-ով ավելի)։

Շինարարական կազմակերպությունները գովելի աշխատանք են կատարել

Հանրապետության դպրոցները նոր շենքերով ապահովելու ասպարեզում։
Վերջին երեք տարում նրանք անընդմեջ կատարել են դպրոցաշինության
պլանները, իսկ հնգամյակում՝ 103 տոկոսով։ Դպրոցաշինության տեմպերով
ու ծավալով մեր հանրապետությունը երկրում գրավում է առաջին տեղերից
մեկը. ցանկանք, որ մոտակա տարիներին ևս պահպանվեն այդ տեմպերը։
Այդպիսի աննախընթաց տեմպերը Հայաստանի կոմկուսակցության Կենտ-
րոնական կոմիտեի և Հայկական ՍՍՀ Մինիստրների սովետի մեծ հոգա-
ծության, բացառիկ ուշադրության արդյունք են։ Նոր հնգամյակում նախա-
տեսվում է դպրոցաշինության ծավալի զգալի մեծացում։ Բայց, չնայած դրան,
հանրակրթական դպրոցներում դեռևս երկրորդ հերթին սովորում է աշակերտու-
թյան 32,3, իսկ երրորդ՝ 0,7 տոկոսը։
Հերթայնությունը կպահպանվի նաև առաջիկա տարիներին, եթե լրացու-
ցիչ չավելացվի դպրոցաշինության ծավալը։ Բանն այն է, որ, ի տարբերու-
թյուն եղբայրական շատ հանրապետությունների, դպրոցահասակ երեխաների
թիվը մեզ մոտ առաջիկա 5—6 տարում կավելանա, ուստի, դպրոցաշինության
նախատեսված ծավալները չեն ապահովի մեկհերթ պարապմունքները դպրո-
ցում։ Ահա թե ինչու պետք է խրախուսել հասարակայնության օգնությունն այս
գործում, գյուղերում՝ կոլտնտեսությունների, քաղաքներում, արագ զարգացող
արդյունաբերական նոր կենտրոններում խոշոր արդյունաբերական ձեռնարկու-
թյունների միջոցների օգտագործումը։

Դպրոցաշինության և կրթության գործին օգնելու փայլուն օրինակ են
տալիս Արարատի, Արտաշատի, Հոկտեմբերյանի և էջմիածնի կոլտնտեսու-
թյուններն ու հասարակական կազմակերպությունները։ Հիշարժան է առանձ-
նապես Արզնու «Բյուրեղ» արդյունաբերական միավորման ղեկավարության
աշխատանքը։ Միավորման դիրեկտոր Աշոտ Հարությունյանի նախաձեռնու-
թյամբ Նոր Հաճն ավանում կառուցվել են միջնակարգ դպրոցների (նաև երե-
կոյան), մանկապարտեզի շենքեր, դպրոցի խոշոր մասնաշենք։ Բոլոր ուսու-
ցիչներն ապահովվել են բնակարաններով։ Գործարանի կուսակցական կազ-
մակերպությունը և ադմինիստրացիան դպրոցը համարում են գործարանի
բաղադրիչ մասը, խիստ հոգատար են երեխաների առողջության, դաստիարա-
կության նկատմամբ։

Դպրոցական գործի հանդեպ նույնպիսի վերաբերմունք են ցուցաբերում
Քանաքեռի ալյումինի գործարանը, Քաջարանի պղնձամոլիբդենային կոմբի-
նատը, ինչպես և էջմիածնի շրջանի Ոսկեհատի սովխոզը, Հոկտեմբերյանի
շրջանի Ջանֆիդայի կոլտնտեսությունը և այլն։ Պետք է ավելի մասսայական
դարձնել այս շարժումը։

Հայաստանի կոմկուսակցության Կենտկոմն ու Հայկական ՍՍՀ Մինիս-
տրների սովետը 1970 թ. քննարկեցին դպրոցում աշակերտների առաջադի-
մության և ուսման որակի բարելավման հարցը և նշեցին, որ լուրջ թերու-
թյուններ կան նաև դպրոցների ուսումնադաստիարակչական գործում։

Հանրապետության դպրոցներում, չնայած աշակերտների առաջադիմու-
թյան և ուսման որակի բարելավմանը, այնուամենայնիվ, ինչպես ասված է
ՀԿԿ XXV համագումարին տրված Կենտկոմի հաշվետու զեկուցման մեջ, երկ-
տարեցիները մեծ տոկոս են կազմում։ Անհամեմատ մեծ է նրանց թիվը Լենի-
նականի, Դիլիջանի, Երևան քաղաքների, Գորիսի և Նոյեմբերյանի շրջանների
դպրոցներում։ Աշակերտների անբավարար առաջադիմությունը հետևանք է



ուսման պրոցեսի կազմակերպման լուրջ թերությունների, ուսուցչական կադ-
րերի մի մասի ոչ պատշաճ պատրաստության և ցածր պատասխանատվու-
թյան։ Լուսավորության մինիստրությունն ու ժողկրթության տեղական օրգան-
ները 1969—1970 ուստարում լուրջ միջոցներ ձեռնարկեցին ուսուցչության
մասնագիտական ու մեթոդական պատրաստության բարելավման նպատակով։
Մեր դպրոցում ուսուցումն ու կոմունիստական դաստիարակությունն
անխզելի միասնություն են կազմում, ահա թե ինչու դաստիարակչական աշ-
խատանքը սերտորեն զուգակցվում է ուսուցման ընթացքին, հատկապես աշ-
խարհայացքային նշանակություն ունեցող այնպիսի առարկաների դասերին,
ինչպես՝ պատմությունը, հասարակագիտությունը, գրականությունը, լեզունե-
րը, բնագիտությունը, որոնք նպաստում են աշակերտներին կոմունիստական
գաղափարայնության, սովետական հայրենասիրության և սոցիալիստական
ինտերնացիոնալիզմի ոգով դաստիարակելու գործին։

Դպրոցական գործի բարելավմանն անգնահատելի օգնություն են ցույց
տալիս կոմերիտական ու պիոներական կազմակերպությունները։ Ավելացել է
պիոներական տների, տեխնիկական, պատանի բնասերների կայանների, պա-
տանի տուրիստների բազաների, պատանեկան սպորտային դպրոցների թիվը,
աշխուժացել դրանց գործունեությունը։ Շատ բան է արվում երեխաների էսթե-
տիկական դաստիարակության բնագավառում։

Մեր դպրոցը կոչված է իր սաներին կոփելու, դաստիարակելու մատե-
րիալիստական աշխարհայացքի ոգով, կոմունիստական գաղափարների նկատ-
մամբ անսասան հավատով, համակելու աշխատասիրությամբ, սերմանելու
բարոյական վեհ հատկանիշներ, գեղարվեստական բարձր ճաշակ, չեզոքացնե-
լու գաղափարապես անընդունելի և բարոյապես վնասակար ազդեցությունները։

Մեր դպրոցում ուսման տևողությունն ավելի սեղմ է, կենտրոնացված,
այն հասնում է 11000 ուսումնական ժամի (ԳԴՀ-ում՝ 14200, Չեխոսլովակիա-
յում՝ 12000, ԱՄՆ-ում՝ 12800, Ճապոնիայում՝ 12200)։ Ազգային հանրապե-
տությունների դպրոցներում լրացուցիչ ուսուցում են նաև ռուսաց լեզու և գրա-
կանություն. ուսումնառության տասը տարվա համար դրանց հատկացվում է
1100 ժամ։ Չնայած դրան, դպրոցների փորձը ցույց է տալիս, որ տասնամյա
ժամանակամիջոցում աշակերտին կարելի է տալ հանրակրթական բավարար
գիտելիքներ։ Այդ մասին է վկայում, մասնավորապես այն հանգամանքը, որ
մաթեմատիկայի ու ֆիզիկայի աշակերտական միջազգային օլիմպիադանե-
րում մեր դպրոցականները գրավում են լավագույն տեղերը։

Ժողովրդական կրթության օրգանների և դպրոցի առաջ կուսակցությունը
խնդիր դրեց կատարելագործել ուսուցման բովանդակությունը։ Արդեն մի քա-
նի տարի է՝ սկսվել է աշխատանքն այդ ուղղությամբ։ Ժողովրդական կրթու-
թյան օրգանները շարունակում են դպրոցական ուսուցումը պլանաչափ և
հաստատված գրաֆիկի համաձայն նոր ծրագրերին փոխադրելու աշխատանքը։

Ուսումնական նոր ծրագրերը հներից տարբերվում են, ամենից առաջ,
նրանով, որ դասընթացները համապատասխանեցվել են գիտությունների ժա-
մանակակից պահանջներին, նպատակ ունենալով դասընթացներում ընդգծել
առաջադիմական գաղափարները։

Դպրոցական ուսուցման նոր ծրագրերը նախորդներից տարբերվում են
նաև նրանով, որ դրանցում ընդգրկված են ավելի քիչ տեղեկատու նյութեր,
առավել մեծ տեղ է տրված դասընթացի կիրառական բնույթին (որով և բնու-

թագրվում է ուսուցման պոլիտեխնիկացիան)։ Գիտության ու տեխնիկայի նորագույն նվաճումների հիման վրա ավելի խոր բացահայտել բնական ու հասարակական երևույթների օրինաչափությունները— ահա այն նոր բովանդակությունը, որ հաղորդել են մեր դպրոցներին նոր ծրագրերը։

Էական փոփոխությունների է ենթարկվել պատմա-հասարակագիտական առարկաների ցիկլը։ Որպես նոր առարկա ավանդվում է հասարակագիտությունը, որը բովանդակում է սոցիալիզմի զարգացման օրենքները, սոցիալիզմի վերաճումը կոմունիզմի, բացահայտում է նաև կապիտալիստական աշխարհի օրինաչափությունները, հիմնավորում կապիտալիզմի կործանման անխուսափելիությունը։ Փոփոխվել է և կենսաբանության դասընթացը։

Դպրոցում ավանդվող առարկաների ծրագրերը կազմելիս ճիշտ կլինի հաշվի առնել աշակերտների նախասիրությունները, ընդունակություններն ու հակումները, որը, սակայն հնարավոր չէ բոլոր առարկաների համար։ Աշակերտների ընդունակությունների ու նախասիրությունների զարգացումը մեր դպրոցի հիմնական խնդիրներից է։ Այդ են պահանջում կյանքը, սոցիալիստական արտադրության, գիտության ու տեխնիկայի զարգացման շահերը։

Աշխատանքի նկատմամբ ստեղծագործական մոտեցումը, նախաձեռնություն հանդես բերող երիտասարդության դաստիարակությունը հնարավոր է ուսուցման և դաստիարակության այնպիսի կազմակերպմամբ, որի շնորհիվ բացահայտվեն աշակերտի հակումները, զարգանան նրա բնական տվյալները։ Այդ նպատակով ուսումնական ծրագրերի կատարելագործմանը զուգընթաց դպրոցի ուսումնական պլաններում նախատեսվում են նաև ժամեր ֆակուլտատիվ պարապմունքների համար։ Այդ ժամերը նպաստում են դպրոցի բարձր դասարանների աշակերտների հետաքրքրասիրությունների ու նախասիրությունների զարգացմանը, մղում ինքնազարգացման, ստացած գիտելիքներն ինքնուրույն լրացնելու և խորացնելու։ Ֆակուլտատիվ պարապմունքները լրացնում են ուսումնական տվյալ առարկայի ծրագիրը։

Արդեն երրորդ տարին է, որ մեր ողջ երկրի, ինչպես և Հայաստանի դպրոցների կրթական սիստեմը հարստացել է նոր բովանդակությամբ, անհամեմատ խոր գիտելիքներով։ Սովետական դպրոցի պատմության մեջ եղել են զանազան վերակառուցումներ։ Սակայն չենք սխալվի, եթե ասենք, որ այժմ, առաջին անգամ երեսնական թվականներից հետո, արմատապես փոխվում են դպրոցի, հատկապես տարրական դասարանների, կրթության բովանդակությունն ու բնույթը, դաստիարակչական և զարգացողական ուղղությունը։ Շեշտակի բարձրանում է նրա գիտական մակարդակը, ընդ որում տարրական կրթության ժամկետն էլ կրճատվում է մեկ տարով։ Փոխվել է նաև բարձր դասարանների կրթության բովանդակությունը։

Վերջին երեք տարում աստիճանաբար գործադրվում են հանրակրթական միջնակարգ դպրոցի նոր ծրագրերը։ 1969—70 ուսումնական տարում I դասարաններում սկսվեց ուսուցումը նոր ծրագրերով ու նոր դասագրքերով։ Ընթացիկ՝ 1970—71 ուս. տարում ուսուցումը նոր ծրագրերով է տարվում II և IV դասարաններում։ Մնացած, հատկապես բարձր դասարաններում, անցումը նոր ծրագրերին տեղի է ունենում լուսավորության մինիստրության կոլեգիայի հաստատած գրաֆիկին համապատասխան։ Լուրջ աշխատանք է ծավալվել դասագրքերի ստեղծման գործում։ Նախորդ տարիներին բովանդակությամբ վերափոխված առարկաների համար պատրաստվել են համապատաս-



խան դասագրքեր։ Նախկին դասագրքերի համեմատությամբ նորերն, անշուշտ, շատ ավելի բարձր են իրենց գիտա-մեթոդական մակարդակով։ Այդ առումով կարելի է նշել I դասարանի ռուսաց լեզվի և մաթեմատիկայի գունազարդ դասագրքերը։ Մեր հանրապետությունում առաջին անգամ մաթեմատիկայի գունազարդ դասագիրք ստացան I դասարանցիները. այդպիսինները պատրաստվում են նաև II և III դասարանների համար։

Աշակերտության գեղագիտական դաստիարակությանը մեծ չափով կնպաստեն I—VIII դասարանների երաժշտության, I—VI-ի համար պատրաստվող կերպարվեստի դասագրքերը։ Դպրոցի համար լավ նվեր է նաև Աստղագիտության նոր դասագիրքը, որը պատրաստել են Բյուրականի աստղաֆիզիկայի ինստիտուտի գիտական աշխատողները՝ ակադեմիկոս Վ. Համբարձումյանի խմբագրությամբ։

Ուսումնական նոր ծրագրերի կիրառման նախնական արդյունքները ցույց են տալիս, որ դրանք զգալի չափով խթանում են աշակերտների ճանաչողական կարողությունների, ունակությունների զարգացումը, բարձրացնում նրանց հետաքրքրասիրությունը ուսման նկատմամբ, ուսուցման գիտական ու գաղափարական մակարդակը։ Սակայն նոր ծրագրերի գործադրումը հարուցում է նորանոր հոգսեր։ Չի լուծված աշակերտների ծանրաբեռնվածության հարցը։ Ճիշտ է, ծրագրերն զգալի չափով բեռնաթափվել են կրկնություններից, ավելորդ ու երկրորդական նյութերից, բայց ընդգրկում են գիտելիքների առավել լայն ու բարդ համակարգ։

ՍՍՀՄ Մինիստրների սովետը վերջերս հաստատեց հանրակրթական միջնակարգ դպրոցի կանոնադրությունը, որտեղ հստակ սահմանված է նաև աշակերտի ուսումնական բեռնվածության ծավալը դպրոցում և տանը՝ ըստ երեխաների հասակային խմբերի, դասարանների։ Որոշակի կարելի է ասել, որ նոր ծրագրերով նախատեսված գիտելիքների ծավալի յուրացման համար կանոնադրությամբ սահմանված ժամանակը (թեև այն էլ բավականին լարված է) չի բավարարում։ Այստեղ ծրագիրը և կանոնադրության պահանջը հակասության մեջ են։ Ժողովրդական կրթության օրգաններին լրջորեն մտահոգում է աշակերտների նման ծանրաբեռնվածությունը։ Չէ՛ որ նրանց մեծ մասը (հատկապես ցածր դասարանների) դեռ երեխաներ են, և լուսավորության մարմինների հոգածության առարկան պետք է լինի նաև նրանց մանկության ապահովման շատ կարևոր խնդիրը։ Մենք իրավունք չունենք երեխաներին զրկելու մանկությունից։ Հապա նրանց առողջակա՞ն վիճակը։ Պետք է որոնել հարցի լուծման նպատակահարմար ուղիներ։ Դրանցից մեկը կարող է լինել միջնակարգ դպրոցի ուսման տևողությունը մեկ տարով ավելացնելը։ Սակայն, քանի դեռ այդ հարցը չի լուծված, մենք պետք է ուշադրության առնենք երկու այլ, ռեալ հնարավորություններ։

Առաջինը, մեր կարծիքով, մինչև յոթ տարեկան երեխաներին դպրոցական ուսուցումն սկսելուն ինչպես հարկն է նախապատրաստելն է։ Տարրական կրթության տևողության կրճատումն ավելի ակտուալ է դարձրել այդ։ Առայժմ անբավարար է այդ գործի կազմակերպումը, որովհետև նախադպրոցական հասակի երեխաների մեծ մասը դեռ ընդգրկված չէ մանկապարտեզներում։ Առաջին դասարանցիների ընդամենը 23 տոկոսն է գալիս նախադպրոցական հաստատություններից։ Բացի դրանից, մանկապարտեզներում 6 տարեկան երեխաների խմբերի ծրագիրը չի համապատասխանում այդ հասակի հնարա-

վորությունններին։ Այստեղ նույնիսկ չի նախատեսվում կարդալու, հաշվելու ուսուցումը։ Բնականաբար, այդ պայմաններում երեխաների, հատկապես վեց տարեկանների, ճանաչողական հնարավորություններն ու ընդունակություններն ինչպես հարկն է չեն զարգանում, և մանուկը դպրոց է գալիս դպրոցական սիստեմատիկ ուսուցմանը չնախապատրաստված, մանավանդ այժմ, երբ ուսուցման նոր բովանդակությունն անհամեմատ ավելի լուրջ պահանջներ է առաջադրում I—III դասարանների աշակերտներին։

Հանրապետության նախադպրոցական հաստատություններն արդեն սկսել են լայնորեն ընդգրկել վեց տարեկան երեխաներին։ Վերանայվել են ավագների խմբերի ծրագրերը, վերակառուցվել այնպես, որ երեխան ձեռք բերի անհրաժեշտ նախնական ունակություններ ու գիտելիքներ, որպեսզի կարողանա հաղթահարել դպրոցական ուսուցման առաջին տարիների բարդությունը։ Իսկ որտեղ հնարավոր չէ երեխաներին ընդգրկել մանկապարտեզներում, վեցամյա երեխաների համար, մինչև դպրոցական պարապմունքներն ավարտելը և օգոստոսի երկրորդ կեսին, դպրոցներում նախապատրաստական պարապմունքներ են կազմակերպվում։

Ուսուցման նոր բովանդակությունն աշակերտին մատչելի դարձնելու երկրորդ, հիմնական եղանակը կարող է լինել ուսուցման արդյունավետության ապահովումը՝ նոր, ակտիվ մեթոդների գործադրմամբ։ Ուսման նոր ծրագրերը պահանջում են ուսուցչի մասնագիտական ու մանկավարժական առավել հմտություն, ստեղծագործական սրտացավ աշխատանք։ Սակայն, ապագա քաղաքացիներ պատրաստողների մի մասը դեռևս կառչում է ավանդման, մանկավարժության հնացած ձևերին ու մեթոդներին, որպիսիք այլևս հարմար չէ կիրառել այժմյան երիտասարդության ուսուցման, դաստիարակության ասպարեզում։ Մեր մարդկանց կյանքում լայնորեն մուտք են գործել հեռուստատեսությունը, ռադիոն, դրանց և այլ միջոցների շնորհիվ բազմացել ու բազմազան են դարձել ինֆորմացիայի ձևերը, մարդուն ավելի մատչելի են դարձել արվեստի շատ ձևեր, այսօրվա երիտասարդն ավելի մոտիկից է հաղորդակցվում գիտության ու տեխնիկայի այժմյան նվաճումներին ու հասումներին։

Այս հանգամանքը լրջորեն մտահոգում է ժողկրթության օրգաններին։ Ուստի, նրանք ամեն մի առարկայի նոր ծրագրին անցնելուց գոնե մեկ տարի առաջ տվյալ առարկան ավանդողներին նախապատրաստում են այդ պատասխանատու գործին՝ ուսուցիչների կատարելագործման դասընթացներում։

Ուսման բովանդակության հետ անխզելիորեն կապված է ուսուցման արդյունավետ ձևերի գործադրումը, ընտրությունն այնպիսի մեթոդների ու եղանակների, որոնք աշակերտներին կմղեն ինքնուրույն մտածելու, կհամակեն գիտելիքներին տիրապետելու ձգտմամբ։ Այս առումով մեր երկրի ու հանրապետության դպրոցներում լայն ճանաչում են գտել ուսուցման, այսպես կոչված՝ ակտիվ մեթոդները։ Աստիճանաբար ընդունելություն է գտնում «զարգացնող» ուսուցում տերմինը։ Բարձր դասարաններում տարածվում է պրոբլեմային ուսուցումը։

Ուսուցման պրոցեսի առավելագույն ակտիվացման կապակցությամբ ամենայն սրությամբ են դրվում լաբորատոր գործնական աշխատանքների ծավալման, ինչպես և ուսուցման տեխնիկական միջոցների (կինոյի, հեռուստատեսության, մագնիտոֆոնի, լինգոֆոնի, զանազան պրոեկցիոն սարքերի ու սարքավորումների) օգտագործման հարցը։



Այս բնագավառում որոշ բան արված է։ Սակայն դպրոցական նոր դասընթացները պահանջում են այդ ամենի առավել լայն կիրառում, որը կբարձրացնի ուսուցչի աշխատանքի օգտակարության գործակիցը։ Ուստի, լուսավորության մինիստրությունն ու ժողկրթության օրգանները տարեցտարի ավելացնում են այդպիսի սարքավորումների թիվը դպրոցներում։

Մի շարք քաղաքների ու շրջանների դպրոցներում մինիստրությունն ստուգել է նոր ծրագրերով ուսուցման վիճակը. մի անգամ ևս հաստատվել է այն ճշմարտությունը, թե դպրոցում կենտրոնական դեմքը, որով պայմանավորված է ուսուցման ու դաստիարակության հաջողությունը, ուսուցիչն է։ Մեր ուսումնասիրությունները ցույց են տվել, որ ուսուցիչների մի մասը դժվարանում է հաղթահարել նոր ծրագրերով ուսուցումը և, առհասարակ, չի կարողանում ապահովել գիտելիքների բարձր որակ, դրա հետևանքով դպրոցներում դեռևս մեծ է երկտարեցիների թիվը։

Դպրոցում ուսման որակի հետ առնչվող թերությունները հիմնականում ուսուցիչների զգալի մասի անբավարար մասնագիտական ու մանկավարժական-մեթոդական պատրաստության հետևանք են։ Աշակերտները դեռևս վատ են առաջադիմում մայրենի, ռուսաց լեզուներից, ֆիզիկամաթեմատիկական առարկաներից։ Զգալի թերություններ կան դպրոցները որակյալ ուսուցիչներով համալրելու գործում։ Մանկավարժական կադրերի պատրաստման պլանավորման և այդ կադրերի պահանջի միջև ճեղքվածք գոյություն ունի։

Միջնակարգ կրթության բովանդակության փոփոխությունը, դպրոցական ցանցի ընդարձակումը, IV դասարանները տարրականից միջնակարգին փոխադրելը, մի շարք առարկաների ժամերին դասարանները երկատելը և, որ ավելի կարևոր է, բուհերի շրջանավարտների մի մասի աշխատանքի չներկայանալը ժողկրթության օրգանների համար լուրջ դժվարություններ են հարուցում դպրոցները որակյալ ուսուցչական կադրերով ապահովելու գործում։

Հատկապես գյուղական շրջաններում ուսուցչական կադրերի պակասի հետևանքով ֆիզիկայի և մաթեմատիկայի ուսուցիչների 16,5, ռուսաց լեզվի ուսուցիչների 24 տոկոսն ունի 2—2,5 դրույք դաս։ Վերջին երեք տարվա ընթացքում դպրոցի վեց հիմնական առարկաների համար պլանավորվել է պատրաստել 2894 ուսուցիչ, բաշխման հանձնաժողովների կողմից նշանակում է ստացել 1804, տեղերն է ներկայացել 1498 հոգի, այսինքն՝ պլանավորվածի մոտ կեսը. մինչդեռ այդ նույն առարկաներից դպրոցների իրական պահանջը հասնում է 4041-ի, այլ խոսքով՝ հանրապետության դպրոցներն ստացել են մանկավարժական կադրերի իրենց պահանջի 37 տոկոսը։

Հատկապես լուրջ դժվարություններ են առաջանում շրջանավարտներին գյուղերն ուղարկելիս։ Դրա հիմնական պատճառներից մեկն այն է, որ ինստիտուտ ընդունվողների նպատակահարմար ընտրություն չի կատարվում։ Բրյուսովի անվան ռուսաց և օտար լեզուների պետական մանկավարժական ինստիտուտի տվյալներով 1970 թվականի 134 շրջանավարտներից 72-ը Երևանից է, 10-ը՝ Ռուսաստանի ֆեդերացիայից, 5-ը՝ Ուկրաինայից, 17-ը՝ Վրաստանից, 17-ը՝ Ադրբեջանից, իսկ Հայաստանի 33 գյուղական շրջաններից՝ ոչ մի մարդ։ Բնականաբար շրջանավարտների այսպիսի կազմից շատ քչերը կարող են աշխատանքի մեկնել գյուղերը։ Դպրոցական գործին խանգարում է նաև ուսուցչական կադրերի հոսունությունը հատկապես գյուղական վայրերում, որի հիմնական պատճառներից են կուլտուր-կենցաղային ան-

բավարար պայմանները, բնակարանային շինարարության դանդաղ ընթացքը։ Այս հարցը պետք է լրջորեն մտահոգի ժողկրթության օրգաններին։

Կրթության ժամանակակից պահանջների բավարարման առավել հրատապ խնդիրն այսօր դպրոցը, հատկապես գյուղական, որակյալ մասնագետներով ապահովելն է։ Այդ են պահանջում նաև ՍՄԿԿ XXIV համագումարի դիրեկտիվները։ Եվ, որքան էլ պլանավորումը թողնում է այն տպավորությունը, թե գործերը բարեհաջող են, այնուամենայնիվ, չի կարելի անտեսել փաստորեն գոյություն ունեցող ճեղքվածքը։ Կադրերի պատրաստման պլանավորումը մի խոշոր թերություն ունի։ Այդ ժողտնտեսության մոտակա տարիների պահանջների օպերատիվ հաշվառման բացակայությունն է։ Ժողովրդական տնտեսության որոշ ճյուղերում զգացվում է կադրերի քաղց, բայց պլանավորվում է պատրաստել այնպիսի մասնագետներ, որոնց պահանջը մոտակա հեռանկարներում չի զգացվում։ Այսպես՝ Երևանի պետական համալսարանը տվեց մաթեմատիկական լեզվաբանության և մեքենայական թարգմանության մասնագետներ, սակայն նրանցից ոչ մեկն իր մասնագիտությամբ աշխատելու հնարավորություն և տեղ չունեցավ։ Կարծում ենք՝ պետք է վերանայվի և ժողտնտեսության պահանջներին համապատասխանեցվի մասնագետների պատրաստման միջբուհական-միջֆակուլտետային պլանավորումը։ Գյուղական շրջաններն ուսուցչական կադրերով ապահովելու համար մանկավարժական ինստիտուտներում պետք է ունենալ նախապատրաստական ֆակուլտետներ, ուր հիմնականում ընդունել գյուղի երիտասարդությանը։

Հույժ կարևոր են ուսուցիչների պատրաստման ու վերապատրաստման սիստեմի հետագա կատարելագործման, հատկապես ուսուցման բովանդակության նորացման հարցերը։ Ուսուցիչների կատարելագործման հանրապետական և Երևանի քաղաքային ինստիտուտներն այդ ուղղությամբ զգալի ջանքեր են գործադրել և գործադրում են։ Կազմակերպված դասընթացներում տարեկան վերապատրաստվում են 4000—4500 ուսուցիչ։ Բայց բազում են դժվարությունները այդ ասպարեզում։ Դրանցից հիմնականն այն է, որ այդ ինստիտուտների կառուցվածքը հնարավորություն չի ընձեռում սեփական դասախոսական կազմ ունենալու։ Ինստիտուտները կարող են դասախոսներ հրավիրել միայն ժամավճարով։ Այս հանգամանքը բացասաբար է անդրադառնում վերապատրաստման աշխատանքների, դասախոսությունների որակի վրա։

Այս բնագավառում աշխատանքներն զգալիորեն կբարելավվեն, եթե ուսուցիչների վերապատրաստման հոգսի մի մասն իրենց վրա վերցնեն ուսուցչական կադրերի պատրաստմամբ զբաղվող բուհերը։ Չէ՞ որ բուհերը պարտավոր են հետաքրքրվել իրենց շրջանավարտների մանկավարժական-մասնագիտական հոգսերով, օգնել նրանց որակավորման հետագա բարձրացմանը։ Եղբայրական այլ հանրապետությունների որոշ բուհերում ուսուցիչների վերապատրաստման այս ձևն արդեն գործադրվում է։ Մինչդեռ, չնայած արդեն չորրորդ տարին է, ինչ դպրոցներն անցել են ուսուցման նոր ծրագրերի, բուհերի ուսումնական ծրագրերում ու պլաններում համապատասխան փոփոխություններ չկան։ Ապագա ուսուցիչներին բուհերում չեն նախապատրաստում նոր ծրագրերով աշխատելու, և ժողկրթության օրգանները հարկադրված են մանկավարժական բուհերի նույնիսկ վերջին տարվա շրջանավարտներին հրավիրել վերապատրաստման դասընթացների։

Բնականաբար, նոր ծրագրերով աշխատելու համար ուսուցչին դեղատոմս չի առաջարկվելու։ Այս առթիվ տեղին է ասել Կ. Ա. Տիմիրյազևը. մեթոդական ոչ մի տեսություն չի կարող տալ և չպետք է տա պատրաստի դեղատոմսեր։ Ամեն մի կոնկրետ դեպքի համար մեթոդական եղանակի ընտրության ունակությունը միշտ եղել է անձնական կարողությունների, հոգեբանական հնարանքների, հնարամտության արդյունք։

Մեր երկրի ժողովրդական տնտեսության զարգացման 1971—1975 թթ. հնգամյա պլանի վերաբերյալ ՍՄԿԿ XXIV համագումարի դիրեկտիվներում լուրջ տեղ է հատկացված ժողովրդական կրթությանը։ Ժողովրդական կրթության հետագա զարգացումը հնգամյակի գլխավոր խնդրի՝ ժողովրդի նյութական-կուլտուրական մակարդակի բարձրացման պայմաններից է։

Դիրեկտիվներում ժողովրդական կրթության բնագավառի կարևորագույն հարցը համարվում է հնգամյակի ընթացքում երկրում ընդհանուր միջնակարգ կրթության իրականացման ավարտումը։ Ինչպես միշտ, ժողկրթության օրգանների ուշադրության կենտրոնում պետք է լինի ուսուցման ու դաստիարակության պրոցեսի կատարելագործումը դպրոցում։

Նախատեսվում է նախադպրոցական հիմնարկների, դպրոցների, դրանց կից հանրակացարանների և արտադպրոցական հիմնարկությունների շինարարության ծավալի աննախընթաց մեծացում։

Ընթացիկ հնգամյակում ժողովրդական կրթությունը նոր, բազմակողմանի վերելք է ապրելու։ Հնգամյակի դիրեկտիվներում վիթխարի նշանակություն է տրվում, հատկապես, երեխաների կոմունիստական դաստիարակության բարելավմանը։ Առաջադրվում է երեխաներին լայնորեն ընդգրկել հասարակական դաստիարակչական օղակներում՝ մանկական-նախադպրոցական հիմնարկություններում, երկարօրյա դպրոցներում ու խմբերում։

Դիրեկտիվներում հատուկ ուշադրություն է նվիրվում պատանիների, երիտասարդության աշխատանքային դաստիարակությանը, պահանջվում է ուժեղացնել սովորողների պրոֆեսիոնալ կողմնորոշման աշխատանքը՝ հաշվի առնելով երիտասարդների հակումները և ժողովրդական տնտեսության պահանջմունքները որակյալ կադրերի նկատմամբ։

Որպես դպրոցի դաստիարակչական աշխատանքի շարունակություն, դիրեկտիվներում առանձին կարևորություն է տրվում արտադպրոցական գործունեությանը։ Անհրաժեշտ է համարվում էապես բարելավել երեխաների հետ տարվող արտադպրոցական աշխատանքը, ընդարձակել պիոներական տների, պատանի տեխնիկների և բնասերների կայանների, ինչպես նաև մանկական մյուս հիմնարկությունների ցանցը։

Մեր ուսուցչությունը, ժողկրթության բնագավառի աշխատողները ոգևորությամբ ընդունեցին ՍՄԿԿ XXIV համագումարի դիրեկտիվները և մեծ նվիրումով կաշխատեն իրականացնել այդ պայծառ կանխագծումները։



# ՀԱՅՐԵՆԱԲԱՂՁ ԱՐՁԱԳԱՆՔՆԵՐ

Ս. Տ. ԳԱՍՊԱՐՅԱՆ

Սփյուռքահայ կյանքի զգոն սուրհանդակը՝ հայ մամուլը մեզ արդեն բերում է այն խանդավառ ու զանգվածային հանդիսությունների նկարագրությունները, որոնք կատարվեցին սփյուռքահայ բոլոր մեծ ու փոքր բնակավայրերում։ Սփյուռքահայ առաջադիմական կազմակերպությունները, մշակութային ու հայրենակցական միությունները, հայ մամուլը, գաղթօջախների հասարակական ու քաղաքական գործիչները, հրապարակագիրները, գրողներն ու արվեստագետներն ամիսներ շարունակ նախապատրաստվում էին մի առանձին շուքով տոնելու հայ ժողովրդի ազգային ու սոցիալական վերածննդի կեսդարյա հոբելյանը։

Հոբելյանական բազմամարդ երեկոներ տեղի ունեցան Լիբանանում, Սիրիայում, Միացյալ Արաբական Հանրապետությունում, Բուլղարիայում, Ֆրանսիայում, Ամերիկայի Միացյալ Նահանգներում, Հարավային Ամերիկայի հայ գաղութներում։ Հասկանալի է ու բնական. 50-ամյակի տոնակատարությունը խորհրդանշում էր հայ ժողովրդի կեսդարյա մաքառումների ու հաղթանակների, նրա փոթորկոտ ու պատմական սխրագործություններով լի ուղին։

Եվ ո՛չ միայն այդ։

Հանրահայտ ճշմարտություն է, որ մեր ժողովրդի սփյուռքահայ հատվածի կյանքի ուղին վերջին հիսուն տարիների ընթացքում վարդերով չէր սփռված։ Եղեռնին հաջորդած զրկանքներով, հուսալքությամբ ու հիասթափություններով լի մղձավանջային տարիները, վերստին ոտքի կանգնելու, գոյատևելու, ազգային կրթական ու մշակութային նոր օջախներ ստեղծելու նրա օրհասական ջանքերը, տնտեսական դժվարությունները, քաղաքական ու ազգային հողի վրա տեղի ունեցած մշտական հալածանքները, համաշխարհային երկրորդ պատերազմի պատճառած նոր արհավիրքները—այս ամենը չէին կարող խոր կնիք չթողնել սփյուռքահայ ազգային մտածողության վրա։

Այդ ամենին զուգահեռ, Հայաստանում սովետական կարգերի հաստատման առաջին տարվանից սկսած, բնաշխարհի ժողովուրդը, նրա կառավարությունը եղբայրական օգնության ձեռք մեկնեցին սփյուռքահայությանը։



Սփյուռքահայ կյանքի խավար երկնակամարի վրա վերածնված Հայաստանը դարձավ լույսի ու հույսի մի անմար փարոս։ Ու տարիների հետ, այդ փարոսը դառնում էր. ավելի պայծառ, ավելի կենսատու ու հուսալի։

Սովետական Հայաստանի տնտեսության ու մշակույթի բուռն վերելքի շնորհիվ համաշխարհային երկրորդ պատերազմից հետո իրականացած մասսայական հայրենադարձությունը, հետագա տարիների ընթացքում սփյուռքի ու հայրենիքի միջև բազմազան կապերի հաստատումն ու ընդլայնումը, Սովետական Հայաստանի պատմական հաջողությունների համաշխարհային ճանաչումը լուրջ ազդեցություն գործեցին սփյուռքահայ բարդ ու հակասություններով լի կյանքի վրա։ Որպես այս ամենի արդյունք, կատարվեց սփյուռքահայության վճռական ու ազգային մասշտաբով աննախընթաց շրջադարձ դեպի Սովետական Հայաստանը, դեպի ամբողջ հայության վերածնված հայրենիքը։

Ահա թե ինչու այդքան ճոխ, խանդավառ ու զանգվածային բնույթ ունեցավ Սովետական Հայաստանի 50-ամյա հոբելյանի տոնակատարությունը սփյուռքում։

Հատկանշական է ու խորհրդանշող, որ մի շարք երկրներում—Լիբանանում, Ֆրանսիայում, Բուլղարիայում և այլուր տոնակատարությունը դուրս եկավ զուտ ազգային շրջանակներից և իր խանդավառ հորձանքում ներգրավեց տվյալ երկրի ժողովրդի մարդկանց։ Այդ տոնակատարությանը մասնակցեցին և իրենց ծանրակշիռ խոսքն ասացին շատ երկրների հասարակական ու քաղաքական անվանի գործիչներ։ Այն իրողությունը, որ տոնակատարության օրերին Հայաստան էին ժամանել սփյուռքի տարբեր հոսանքների պատկանող անվանի մարդիկ, մշակութային ու հայրենակցական միությունների ղեկավարներ, իսկ սփյուռքի մի շարք գաղութներն էին մեկնել Սովետական Հայաստանի ներկայացուցիչներ, արվեստի և գրականության գործիչներ, մի առանձին շուք ու փայլ տվեց այդ տոնակատարությանը։

Տոնակատարության օրերին ողջ սփյուռքահայությունը հետևում էր Հայաստանում տեղի ունեցող համաժողովրդական հանդիսություններին, Հայաստանի հեռագրական գործակալության և ռադիոյի միջոցով նա հաղորդակից էր լինում այն ամենին, ինչով շնչում ու ապրում էր հայրենի ժողովուրդը։ Սփյուռքահայության լայն զանգվածները մեծ ոգևորությամբ ընկալեցին այն լուրը, որ տոնակատարությանը մասնակցեց Սովետական Միության կոմունիստական կուսակցության Կենտկոմի գլխավոր քարտուղար Լեոնիդ Բրեժնևը։ Սփյուռքահայ մամուլը հետագա օրերին լայնորեն մեկնաբանեց ու ժամանակին հրապարակեց Լեոնիդ Բրեժնևի ճառը և ՀԿԿ Կենտկոմի առաջին քարտուղար Անտոն Քոչինյանի զեկուցումը։

Սփյուռքահայ մամուլի օրգանները, մասնավորապես «Արարատ», «Զարթոնք» (Բեյրութ), «Ջահակիր», «Արև» (Կահիրե), «Աշխարհ» (Փարիզ), «Երևան» (Սոֆիա), «Լրաբեր», «Պայքար», «Երիտասարդ Հայաստան» (ԱՄՆ), «Սևան» (Բուենոս-Այրես) թերթերը լայնորեն նշեցին Սովետական Հայաստանի 50-ամյա հոբելյանը։ Այդ թերթերի միջոցով սփյուռքահայ հասարակայնությունը կարողացավ հետևել հոբելյանի օրերին հայրենիքում և սփյուռքում տեղի ունեցած տոնական միջոցառումներին։ Կարևոր նշանակություն ունեցավ այն, որ հոբելյանին նախորդած ամիսների ընթացքում սփյուռքահայ մամուլի օրգանները սիստեմատիկաբար հրապա-

րակեցին Հայաստանից ստացված բազմապիսի նյութեր, որոնք ընդգրկում էին Սովետական Հայաստանի տնտեսության ու մշակույթի ամենատարբեր բնագավառները:

Հասկանալի է ու բնական, որ այնպիսի մի պատմական իրադարձության առթիվ, ինչպիսին Սովետական Հայաստանի 50-ամյա հոբելյանն էր, սփյուռքահայ ամենատարբեր հոսանքների պատկանող մարդիկ, մտավորականության ներկայացուցիչներ, սփյուռքում ու հայրենիքում լայնորեն հայտնի անձինք ցանկանում էին իրենց խոսքն ասել այդ օրերին: Սփյուռքահայ մամուլի վերջին ամիսների նյութերը դրա վառ վկայությունն են: Հոբելյանին տասնվեց էջից բաղկացած հատուկ համար նվիրեց հնչակյանների օրգան «Արարատ» թերթը, ուր հանդես եկան Հարություն Կուժունին, Հարություն Մադեյանը, Արսեն Կիտուրը, Հրանտ Գանգրունին, Տիգրան Սարաֆյանը, Սիրվարդը, Հայկ Արամյանը, Արշակ Գազանչյանը, Գևորգ Նրևանյանը, Աշոտ Պատմագրյանը և շատ ուրիշներ:

> «Կատարվեցավ նոր ժամանակի հրաշքը,— կարդում ենք թերթի առաջնորդող հոդվածում,— որ այսօրվան աշխարհը զմայլեցնող Խորհրդային Հայաստանն է, որ գոյացավ ոչինչեն, մարտիրոսացած երկիր մը ավերակներուն վրա, կառուցվեցավ շիթ առ շիթ, քար առ քար, իր ժողովրդի արյունովն ու քրտինքով, ընդամենը հինգ տասնամյակներու ընթացքին, պարզելով այսօրվան հիասքանչ պատկերը, որ անհավատալի կթվի, և դառնալով վկայությունը իր կամքին տիրացած և ստեղծագործական ուժերու փթթումին հասած ազգային հավաքականության մը կառուցողական ներուժին... Այսօր այնտեղ կանգնած է Հայկական Սոցիալիստական Հանրապետությունը՝ իր ազգային դրոշով, լեզվով, ուրույն սահմաններով, ազատ ու հզոր»:

Հնչակյան կուսակցության հայտնի գործիչ Հարություն Կուժունին իր հոդվածում ընդգծում է այն միտքը, որ՝

> «Այս 50 տարին կուգա իր փառավոր նվաճումներու և բոլոր մարզերու մեջ ձեռք բերված մեծ հաջողություններու անժխտելի փաստով ցույց տալու սոցիալիստական սիստեմի առավելությունները մեր ազգային բարգավաճման համար և անոր գերադասությունը կապիտալիզմի վրա»:

Լիբանանի ազատագրական պայքարի հայտնի գործիչ Հարություն Մադեյանը գրում է, որ շնորհիվ նորահաստատ խորհրդային կարգերի, Հայաստանը ստացավ անխորտակ ապահովություն, խաղաղություն, տնտեսական և հասարակական այնպիսի նպաստավոր պայմաններ, որոնք հնարավորություն տվին Հայաստանին դուրս գալու քայքայված վիճակից, ժողովրդի համար պայմաններ ստեղծեցին վերստանալու իր շինարար թափը, աննախընթաց ուժով զարգացնելու հայ մշակույթը, հասցնելով այն համաշխարհային գագաթների: Ժողովուրդների բարեկամությամբ է տոգորված հեղինակի հոդվածը:

> «Թող ավելի սերտ դառնա հայ և արաբ եղբայրությունը Լիբանանի և արաբական բոլոր երկրներու մեջ,— գրում է Մադեյանը,— թող ավելի զարգանա ու բարգավաճի բարեկամությունը Հայաստանի և արաբական մյուս բոլոր երկրների միջև»:

Հոբելյանին պատշաճաբար արձագանքեց ռամկավարների կուսակցության մամուլը Լիբանանում, Միացյալ Արաբական Հանրապետությունում, Ամերիկայի Միացյալ Նահանգներում և մյուս գաղթօջախներում:

Հայրենասիրության նոր ապացույցներ տվեցին սփյուռքահայ հայրենակցական միությունները, որոնք անցած 50 տարիների ընթացքում իրենց



համեստ ավանդն ունեն հայրենիքի զարգացման ու բարգավաճման նվիրական գործում:

> «Սեբաստահայը,— գրում է համասեբաստահայ վերաշինաց միության օրգան «Նոր Սեբաստիա» պարբերաթերթը,— մնաց կապված մայր հայրենիքի կողքին իբր վերստին որդեգրված զավակներ, արտասվեց անոր ցավերուն համար և երջանկացավ անոր հաջողություններուն հետ և ինչպես նվիրվեցավ անցյալին, նույնպես պատրաստ է նվիրվելու ապագային իր ուժերու տարողությանց բարձրագույն չափով»:

Չափազանց լայն ու բազմազան է այն հարցերի շրջանակը, որոնք շոշափվեցին Սովետական Հայաստանի 50-ամյա հոբելյանի առթիվ:

Անհնար է ընդգրկել բոլորը: Բայց կան առաջնահերթ, հիմնական, կենսական նշանակություն ունեցող հարցեր, որոնք, բնականաբար, կազմում էին բոլոր բանավոր ու գրավոր ելույթների, մամուլի նյութերի կամ ժողովրդական հավաքույթներում արտահայտված մտքերի առանցքը:

1920 թ. նոյեմբերի 29-ին, հայ ժողովրդի պատմության համար այդ բախտորոշ թվականի մասին իրենց խոսքն ասացին սփյուռքահայ հասարակայնության ամենատարբեր ներկայացուցիչներ: Եվ ուրախալի է նշել, որ այդ առթիվ արտահայտված բանավոր ու գրավոր մտքերը վկայում են այն նոր խոր փոփոխությունները, որոնք վերջին տասնամյակներին կատարվեցին սփյուռքահայ հասարակական մտքի զարգացման ասպարեզում:

Անդրադառնալով այդ հարցին, «Զարթոնք» թերթը գրում է. «անցնող հինգ տասնամյակները ուսանելի շատ դասեր տվին սփյուռքահայերուս համար»: Ա. Պերպերյանը «Աշխարհ» թերթում ավելի հստակ է արտահայտում այդ միտքը.

> «Շնորհիվ մայր հայրենիքի հարատև աճումին, այս հիսուն տարիների ընթացքին փոխվեցավ նաև մեր՝ սփյուռքահայերուս, հոգեբանությունը: Նախկին անհայրենիք «թշվառ անտեր»-ի գլխիկոր հոգեբանության տեղ այսօր մեր սրտերուն ու միտքին մեջ ամրորեն խարսխված է ազգային հպարտության ոգեշունչ հոգեբանությունը»:

Սփյուռքահայ անվանի նկարիչ, հրապարակագիր ու հասարակական գործիչ Ալեքսանդր Սարուխանը գրում է. եթե չլիներ 1920 թ. նոյեմբերը, «Այսօր ոչ Հայաստան գոյություն կունենար, ոչ ալ անոր հողին վրա՝ թե սփյուռքի մեջ ապրող հայ ժողովուրդ, տոնելու համար ոչ միայն նոյեմբերի 29-ը, այլ առհասարակ հայկական որևէ ուրիշ տոն»: Բնորոշելով հայ ժողովրդի պատմական նշաճումների ողջ իմաստն ու մեծությունը, Ստեփան Շահբազը «Արև» թերթում գրում է, որ մեր ժողովուրդը երբեք չպիտի կարողանար դրանք իրականացնել առանց նոյեմբերի 29-ի: «Բայց իր պարզ գոյությունն անգամ,— շարունակում է նա,— պիտի չկրնար շարունակել մինչև այսօր, առանց անոր»:

Տարիներ շարունակ Սովետական Հայաստանի նկատմամբ թշնամաբար տրամադրված շրջանները, անզոր լինելով ժխտելու հայ ժողովրդի պատմական նվաճումները, ջանում էին ապացուցելու, որ դրանք արդյունք են բացառապես հայ ժողովրդի շինարար ոգու, նրա ստեղծագործական հանճարի:

Սփյուռքահայ հասարակայնության ամենալայն շրջանները, հասարակական ամենատարբեր հոսանքների ներկայացուցիչներ, այդ թվում և քաղաքականությունից բավականաչափ հեռու կանգնած մարդիկ ավելի ու ավելի

հաստատորեն են գալիս այն գիտակցության, որ Հայաստանում տեղի ունեցած պատմական վերափոխումների բանալին պետք է փնտրել ո՛չ միայն մեր ժողովրդի տաղանդի, աշխատասիրության, այլ առաջին հերթին, այնքանի մեջ, որ միայն երկրում հաստատված նոր կարգերը պայմաններ ստեղծեցին, որպեսզի մեր ժողովուրդը կարողանա մինչ այդ չտեսնված մասշտաբներով դրսևորելու իր ազգային տաղանդի ողջ ուժն ու թափը։

Իրավացի է «Արարատ» թերթը, երբ ընդգծում է.

> «Մայր հայրենիքին ներկայի անհավատալի վերելքը արդյունք է մեր ժողովուրդին բնատուր տաղանդին և անոր զուգորդված, ընդելուզված ընկերային դրության, որ մեր սլացքն ու մեր քայլը ոստումի վերածեց։ Ահա թե ինչու Խորհրդային Հայաստանի անհավատալի թվող առաջադիմությունը գնահատելու և բացատրելու ամեն փորձ ու մոտեցում, որ հաշվի չառներ վերոհիշյալ զույգ ազդակները, կամ ընդունելով մեկը, կմերժե ու կանտեսե մյուսը, անպայմանորեն կհանգի սխալ եզրակացության ու չի կրնար դիմանալ գիտական որևէ քննադատության»։

Սփյուռքահայությունը խորապես գիտակցում է, որ սովետական կարգերի հաղթանակը Հայաստանում փրկություն բերեց ո՛չ միայն բուն հայրենիքի ժողովրդին, այլև մեծ եղեռնից փրկված մեր ժողովրդի արևմտահայ հատվածին, որ այդ ողբերգության հետևանքով ցրվել էր աշխարհով մեկ և դատապարտված էր մահվան։ Այս ճշմարտությունն ամբողջ ուժով հնչեց բոլոր գաղութներում։

> «Նոյեմբերի 29-ով փրկված հայրենիքը,— գրում է Հայաստանում և սփյուռքում հայտնի գրող և հրապարակագիր Անդրանիկ Անդրեասյանը,— վերջնական ոչնչացման անդունդեն վերականգնելու իր կենդանի, լուսեղեն իրականությամբ՝ փրկեց նաև գոյությունը ան եղեռնի գեհենային արհավիրքե ճողոպրած արևմտահայ զանգվածներուն, որոնք հողմացրիվ, տարագիր ու բեկոր դարձեր էին հազար հորիզոնի տակ։ Անոնց փշրված հավատքը նոր կամքով, նոր իղձերով զրահվեցավ... Որովհետև թեկուզ հեռուն, թեև տակավին մշուշված, բայց այլևս կար Հայաստանը հայրենի պետությամբ ու հարազատ ժողովուրդով, իբրև շքեղ հարության մը վկան, իբրև հայոց ազգային հավերժության երաշխիքը, որպես մեր նախնիներուն դարավոր տենչերուն իրականացման անառիկ մեկնակետը»։

Հանրահայտ ճշմարտություն է, որ սփյուռքի ազգային ու մշակութային կազմակերպություններն այժմ օրհասական ջանքեր են գործադրում պահպանելու սփյուռքահայ դպրոցը, մշակութային մյուս հաստատություններն ու օջախները։ Ամբողջ սփյուռքահայությունը գերագույն ջանքեր է գործադրում ուծացման վտանգից փրկելու վերահաս սերունդը։ Յուրաքանչյուրի համար պարզ է, որ առանց հայրենիքի հետ սերտ կապեր հաստատելու, անհաղորդ մնալով Սովետական Հայաստանի մշակութային արժեքներին, անկարելի է այդ ասպարեզում հասնել շոշափելի արդյունքների։ Այս միտքը կարմիր թելի պես անցնում է Սովետական Հայաստանի 50-ամյա հոբելյանի առթիվ հրապարակված նյութերում։ Հայտնի հասարակական գործիչ Հրաչ Սեդրակյանը գրում է.

> «Հայրենիքի իրականությունը և անոր հարանուն վերելքը, հայ պետականության գոյությունը ինքնին հպարտության աղբյուր են, հայ մնալու գլխավոր ազդակ՝ սփյուռքի մեջ հասակ նետող հաջորդական նոր սերունդներուն համար... Առանց հայրենիքի և հայ պետականության սփյուռքի մեջ պիտի դառնայինք իր արմատեն խլված և ուղեկորույս զանգվածներ»։

Սփյուռքահայ գրող Պեպո Սիմոնյանը, հաստատելով այդ ճշմարտությունը, այն միտքն է արտահայտում, թե ամեն մի հայ, ինչ համոզմունքի



տեր էլ նա լինի, չի կարող չընդունել այն իրողությունը, որ առանց հայրենիքի լուսաշող իրականության սփյուռքը, «հուսահատություն է և ուշ կամ կանուխ դատապարտված է կորստյան ու ձուլումի»։

Անհրաժեշտ է ամբողջ ուժով ընդգծել այն եղելությունը, որ սփյուռքահայ աշխատավոր զանգվածները, առաջադեմ մտավորականությունն անցած հիսուն տարիների ընթացքում սեփական աչքով տեսան ու հասկացան մեծագույն մի ճշմարտություն. Սովետական Հայաստանի ազգային ու սոցիալական վերածնունդը, նրա անցած փառավոր ուղին, նրա տնտեսության ու մշակույթի անօրինակ զարգացումը տեղի չէր ունենա, եթե չլիներ Սովետական Միության ժողովուրդների եղբայրական համագործակցությունը, նրանց անսասան դաշինքը, ռուս մեծ ժողովրդի օգնությունն ու աջակցությունը։ Չպետք է անտեսել, որ մեր ժողովրդի սփյուռքահայ հատվածը մեծի մասամբ այս ճշմարտությունն ըմբռնեց արտասահմանյան կյանքի յուրահատուկ ու բարդ պայմաններում, երբ նա ամեն օր ենթակա է հայ հետադիմական գաղափարախոսության, արևմտյան տերությունների թշնամական պրոպագանդայի ազդեցությանը։ Չնայած այդ ամենին, ժողովուրդների բարեկամության գաղափարները թափանցեցին սփյուռքահայ զանգվածների գիտակցության մեջ, որում և պետք է տեսնել սոցիալիստական հայրենասիրության անհաղթահարելիությունը, նրա կենսական մեծ ուժը։ Սփյուռքահայ հանրահայտ հրապարակագիր ու հասարակական գործիչ Գերսամ Ահարոնյանը, ելույթ ունենալով Սովետական Հայաստանի 50-ամյա հոբելյանին նվիրված հանդիսությանը, որը տեղի ունեցավ «Ռիվոլի» կինոթատրոնում, երկու հազարից ավելի մարդկանց մասնակցությամբ, Հայաստանի ազգային վերածնունդը բնութագրեց հրաշքի համազոր մի իրողություն։

> «Այս հրաշքը,— ասաց նա,— մենք կպարտինք մեր ժողովուրդի տաղանդին, հանճարին, բայց նաև պետք է ընդունենք, որ այս հրաշքը կպարտինք Խորհրդային Միության եղբայր ժողովուրդներու օգնության, և հատկապես ռուս ժողովուրդի օգնության։ Եվ մենք քաջությունը պետք է ունենանք այս բանը խոստովանելու և ամեն տեղ ըսելու»։

Նույն երեկոյին հասարակական գործիչ ու հրապարակագիր Ժիրայր Նաիրին իր ելույթում ասաց. «Այս բոլորը չէր լինի, եթե հայությունը չվայելեր ժողովուրդներու բարեկամության անդավաճան և հրաշագործ բաղուկը և օգնությունը»։

Նույն ոգով մամուլում կամ հանդիսավոր երեկոներին ելույթներ ունեցան Գառնիկ Ադդարյանը, Անդրանիկ Անդրեասյանը, Նուբար Պերբերյանը, Ստեփան Շահբազը, Լևոն Մկրտչյանը, Հովհաննես Վարժապետյանը, Սեդրակ Շահենը և շատ ուրիշներ։

Սեդրակ Շահենի պատկերավոր խոսքերով՝

> «1920 թ. նոյեմբերի 29-ի պատմական թվականին օգնության հասավ Խորհրդային Ռուսաստանի եղբայրական ձեռքը, դեն շպրտեց, պատռեց Ալեքսանդրապոլի հայակործան դաշնագրությունը, լուսավորեց աշխատավորական կարգերով, և հաստատեց հայկական խորհրդային ամրակուռ պետությունը»։

Ինչպես վերը նշեցինք, նման կարծիքներ ու մտքեր վերջին ամիսներին սփյուռքում արտահայտեցին շատ շատերը։ Լուռ չմնաց և «Նայիրի» շաբաթաթերթի խմբագիր Անդրանիկ Ծառուկյանը, որն իր «Յոթ պատգամ» խորագրով հոդվածում գրում է.

> «Եթե դեռ կան ու կկարծեն—կամ կհուսան—թե Հայաստանին այս ճակատագիրը կրնա փոխվիլ ու փոխվելով ավելի լավ տեղ մը հասցնել երկիրը, դրկեցեք հիմարանոց: Եթե կան, որ կհավատան թե աշխարհ կոչվող այս մոլորակին վրա ռուս ժողովուրդնեն ավելի ապահով բարեկամ կրնան ունենալ հայ ժողովուրդը և հայրենիքը—ծերանոց: Եթե կան, որ կկարծեն, թե Սովետ Միության կարգերը կրնան փոխել՝ մանկանոց»:

*Ու այսպես ամենուր Բեյրութում ու Դամասկոսում, Կահիրեում ու Ալեքսանդրիայում, Փարիզում ու Մարսելում, Նյու-Յորքում ու Դետրոյտում, Բուենոս-Այրեսում ու Սան-Պաուլոյում սփյուռքահայ ժողովուրդը, նրա ծոցից ելած առաջադեմ մտավորականությունը հյուսում է Սովետական Միության ժողովուրդների հավերժ ու անխախտելի բարեկամության փառքը, այդ բարեկամության մեջ տեսնելով իր վերածնված ժողովրդի հետագա հզորության ու վերելքի ամուր և հուսալի գրավականը: Դրանով իսկ նրանք տալիս են համոզիչ վկայությունն այն բանի, որ ձերբազատվել են հին օրերի մոլորություններից, սին երազներից ու պատրանքներից, մեր դարի ոգով իրատես հայացքով են նայում ժամանակակից կյանքի ելևէջներին, հասարակական ու քաղաքական բարդ իրադարձություններին: Այս մտայնությունն ավելի ու ավելի խոր է արմատավորվում սփյուռքահայ հասարակայնության ամենատարբեր խավերում:*

*Սովետական Հայաստանի 50-ամյա հոբելյանին հաջորդած օրերին ես Իտալիայում էի: Միլանայ փոքրիկ հայկական գաղութը, 300 մարդուց ոչ ավելի, հավաքվել էր հայկական ակումբում նշելու մեծ տոնը: Երեկոյին բացակայում էին մի քանի դաշնակցական կամ դաշնակցականամետ մարդիկ: Հատկանշական է, որ երեկոյի զեկուցողն էր Վենետիկի Մխիթարյան միաբանության անդամ Սերոբե Ակըլյանը, որը զեկուցման վերջում ներկաների բուռն ծափահարությունների ներքո հռչակեց. «Ոչինչ հայրենիքի դեմ, ամեն ինչ՝ հայրենիքի համար»:*

*Բնականաբար հարց է ծագում, թե երբ Մխիթարյան ուխտի անդամը հանդես է գալիս նման կոչով, այլևս ի՞նչ հող կարող է ունենալ մեր օրերում դաշնակցության գաղափարախոսությունը:*

*Այս ամենից բնավ չի երևում, որ պայքարն ու հակասությունները հասարակական տարբեր հոսանքների միջև վերացել են կամ թուլացել: Դաշնակցությունը արագաբար կորցնում է իր ոտքի տակի հողը, բայց առաջվա պես նա շարունակում է դավել հայրենիքի դեմ, պայքարել սփյուռքի հայրենասիրական ուժերի դեմ: Ահա թե ինչու սփյուռքահայությունը ձգտում է ուժեղացնել բոլոր հայրենասիրական ուժերի միասնությունը, հաղթահարել հայրենասիրական ճակատի ներսում դեռևս գոյություն ունեցող տարաձայնություններն ու խոչընդոտները:*

*Տեղին է նշել, որ երբ խոսում ենք սփյուռքում գործող հայրենասիրական ուժերի, դրանց նկատմամբ մեր դիրքավորման մասին, չպետք է մոռացության տալ, որ գաղափարական խրամատները տակավին մնում են. ռամկավարների կուսակցությունը, կանգնած լինելով հայրենասիրական դիրքերի վրա և պայքարելով դաշնակցության դեմ, բնավ չի դավանում սոցիալիստական աշխարհայացքը: Նմանապես և մենք մերժում ենք ռամկավարների քաղաքական աշխարհայացքը: Բերենք միայն մի օրինակ: Անցյալ տարվա նոյեմբերի 29-ի իր առաջնորդող հոդվածում «Զարթոնք» թերթը գրեց.*



> «Հայրենիքը մեր լուսատու անշեջ փարոսը պետք է ըլլա, որուն լույսը պետք է ճառագայթե բոլոր լայն ու նեղ ճամբաներուն վրա, որոնք տարբեր ուղղություններե կուգան, բայց կհանգին իրեն: Անիկա պետք է դառնա մեր Հռոմը, որուն կառաջնորդեն բոլոր ճամբաները, ինչպես ըսված էին հին Հռոմի համար. «Բոլոր ճամբաները Հռոմ կտանին»:

*Համաձայն ենք և առարկություն չունենք: Բայց այս թեզին հետևեցին հետևյալ տողերը, որոնք ինչպես կտեսնի ընթերցողը արտահայտում են ռամկավարների քաղաքական քրեդոն.*

> «Հայրենիքը մեր փրկության խարիսխն ու ապավենն է, առանց կարճամտության կարևորություն ընծայելու անոր վարչակարգին ու գունավորումին, որ երկրորդական է, ինչո՞ւ չէ նաև ժամանակավոր ու փոփոխական...»:

*Ինչպես ասում են, մեկնաբանություններն ավելորդ են:*

*Բնական է, որ այս օրերին սփյուռքահայ մամուլի օրգանները շոշափում էին հայ ժողովրդի ազգային վերածննդի հետ առնչվող մի հարց ևս. արևմտյան տերությունների ուխտադրուժ քաղաքականությունը Հայաստանի ու հայ ժողովրդի նկատմամբ, Արևմուտքի դիվանագիտական անվերջանալի խաղերը հայ ժողովրդին վիճակված պատմական ողբերգությունների տարբեր էտապներում: Սփյուռքահայ հրապարակագիրները, թերթելով պատմության էջերը, նշեցին կաթողիկոս Մկրտիչ Խրիմյանի դառն հիասթափությունը Բեռլինի կոնգրեսում, ուր նա ներկայացել էր, իր իսկ թևավոր արտահայտությամբ՝ «թղթե շերեփով», Գլադստոնի տխրահռչակ հայտարարությունն այն մասին, որ Անգլիան հնարավորություն չունի օգնել հայերին, որովհետև անգլիական նավերը չեն կարող բարձրանալ Արարատ լեռ, Լլոյդ Ջորջի, Բալֆուրի, Կլեմանսոյի ու մյուսների դիվանագիտական կեղծիքներն ու դավադրությունները, որոնց զոհը դարձավ հայ ժողովուրդը:*

> «Եվրոպական տերություններու դրուժան, դավաճանական վարքագծին դեմ,— ասաց իր ելույթում Ժիրայր Նաիրին,— բանվորա-գյուղացիական Ռուսաստանը դարձավ իսկական բարեկամության և անկեղծ հոգեկցության օրինակ, որ հայ ժողովրդին ազատատենչ հեղափոխական ըմբոստ ուժերուն թիկունք կենալով, թույլ չտվավ, որ մարտիրոս հայությունը անգամ մը ևս և վերջնականապես սրախողխող ըլլա, նենգությամբ և դավով խլվի ժողովուրդի մը ապրելու, ստեղծագործելու, ծաղկելու իրավունքը, որուն գինը հերոսական Սարդարապատն եղած է»:

*Սովետական Հայաստանի 50-ամյա հոբելյանի տոնակատարության օրերին սփյուռքահայությունն ըստ ամենայնի գնահատեց ու արժեքավորեց այն օգնությունը, որ սովետահայ ժողովուրդը ցույց է տալիս սփյուռքահայ իր եղբայրներին ու քույրերին: Բազմամարդ դահլիճներում ունեցած իրենց ելույթներում, մամուլի էջերում հրապարակված հոդվածներում սփյուռքահայ անվանի գրողները, հրապարակախոսները, հասարակական գործիչները, արվեստագետները երախտագիտական խոսք ուղղեցին հայրենի ժողովրդին, Հայաստանի կոմունիստական կուսակցությանն ու կառավարությանն այն ջերմ հոգատարության համար, որ նրանք ցույց են տալիս սփյուռքահայ ժողովրդի նկատմամբ: Մասնակցելով 50-ամյակի հանդիսություններին, լսելով Հայաստանի կոմունիստական կուսակցության ու կառավարության ղեկավարների գոտեպնդիչ ու խրախուսիչ խոսքերը, սփյուռքահայ գաղութների ներկայացուցիչները վերադարձան ավելի ոգևորված, խանդավառ և լավատես իրենց վաղվա օրվա նկատմամբ:*

*Անդրադառնալով արտասահմանի հայության հետ կապված հարցերին,*

Հայաստանի կոմունիստական կուսակցության Կենտկոմի առաջին քարտուղար Ա. Քոչինյանը Հայաստանի կոմկուսի XXV համագումարին տված իր հաշվետու զեկուցման մեջ խնդիր դրեց.

> «Այսուհետև ևս ամրապնդել ու ընդլայնել կապերը սփյուռքահայ առաջադիմական կազմակերպությունների ու գործիչների հետ, աշխատավոր լայն խավերին մեկնել այն ճշմարտությունը, որ միայն **սովետական իրականության պայմաններում, եղբայրական ժողովուրդների համերաշխ ընտանիքում, լենինյան իմաստուն ազգային քաղաքականության կիրառումով հնարավոր դարձավ հայ ժողովրդի ազգային վերածնունդը»:**

*Կասկածից վեր է, որ այս խոսքերը ջերմ արձագանք կգտնեն սփյուռքահայ բոլոր գաղութներում: Նախորդ տարիների իրենց փորձից մեր սփյուռքահայ եղբայրներն ու քույրերը գիտեն այս հակիրճ խոսքերի նշանակությունը, նրանք գիտեն, որ առաջիկա տարիների ընթացքում ավելի լայն ու բազմակողմանի բնույթ կընդունեն մշակութային, գիտական ու մյուս կապերը սփյուռքի հետ, լայն չափեր կընդունի հայրենադարձությունը, կընդլայնվի տուրիզմը, որ իր երկրորդ հիսնամյակը թևակոխած Սովետական Հայաստանը սեփական հոգևոր արժեքներով առավել ուժեղ կսնի սփյուռքահայ մշակութային կյանքը, դրանով իսկ պատնեշելով ուծացման այն ընթացքը, որն այժմ ավելի կամ պակաս չափով առկա է սփյուռքահայ գրեթե բոլոր գաղութներում:*

*Եզրակացնելով, կարող ենք մի անգամ ևս հաստատել, որ Սովետական Հայաստանի 50-ամյա հոբելյանի տոնակատարությունը բովանդակ սփյուռքում հայրենասիրական նոր հուժկու ալիք հարուցեց, սփյուռքահայ աշխատավորական զանգվածներին նոր ուժ, եռանդ ու կորով ներարկեց, օգնեց իմաստավորելու հայ ժողովրդի ազգային ու սոցիալական վերածննդի ողջ բովանդակությունն ու նշանակությունը: Հայ ժողովրդի աշխարհացրիվ բեկորների ներկայացուցիչները կոչ արեցին ավելի սերտորեն համախմբվելու մայր հայրենիքի շուրջը, ազգային պարտքի խոր գիտակցությամբ սիրել ու փայփայել այն, իսկական հայրենասերի գիտակցությամբ բարձր պահել նրա պատիվը, պաշտպան կանգնել նրա կենսական շահերին և անհաշտ պայքարել նրա թշնամիների դեմ:*

*Կանցնեն տարիներ, և հայրենիքը սփյուռքին կապող կամուրջը կդառնա առավել ամրակուռ ու անխորտակ: Ու չկա մի ուժ, որ ի վիճակի լինի քանդելու այդ կամուրջը, կամ թեկուզ, մի քար պոկելու նրանից: Այդ կամուրջի շաղախը օրըստօրե ամրանում է սփյուռքահայ աշխատավորական զանգվածների հայրենասիրությամբ, իր գոյության երկրորդ հիսնամյակը թևակոխած Սովետական Հայաստանի հզորությամբ ու անպարտելիությամբ:*





Խ. Ա. ԱՎԱԳՅԱՆ

# ԴՐԱԿԱՆ ՀԵՐՈՍԻ ԿԵՐՊԱՐԸ ՍՈՎԵՏԱՀԱՅ ԴՐԱՄԱՏՈՒՐԳԻԱՅՈՒՄ

**Տվե՛ք մեզ գեղարվեստական պիեսներ, ամենահեղափոխական, իրոք ճարյուրտոկոսանոց, բայց իրոք գեղարվեստական պիեսներ, և մենք կխաղանք դրանք:**

Կ. ՍՏԱՆԻՍԼԱՎՍԿԻ

Գրականություն ասելով ոմանք հասկանում են գիրք, մինչդեռ պետք է հասկանալ մարդ. *Դ. Դեմիրճյանի այս թևավոր խոսքը, որ, իհարկե, բնութագրում է և դրամատուրգիական գրականության էությունը, այսօր առանձնակի իմաստ է ձեռք բերում: Մարդը, նրա գործերն ու խոհերը, մտածելակերպն ու հոգեբանությունը, բարոյական և այլ կարգի ըմբռնումները, ավելի քան երբևէ գրավում են սովետական արվեստի ու գրականության գործիչների ուշադրությունը:*

*Սովետական մարդ, դրական մարդ հասկացությունները սոցիալիստական ռեալիզմի հիմնաքարերն են, որոնցով իմաստավորվում է մեր մշակութային-հոգևոր բովանդակ կյանքը. դրանք են խթանում նաև մեր թատրոնի բոլոր նշանակալից քայլերը:*

*Վ. Ի. Լենինը, խոսելով հեղափոխության գլխավոր արդյունքների ու խնդիրների մասին, առանձնահատուկ տեղ էր տալիս նոր մարդու, մարդկային նոր տիպի անհատականության դաստիարակմանը: Բանն այն է, որ նոր մարդու ծնունդը ոմանք ակնկալում էին առանձնահատուկ առաքինի անհատներից, թերահավատությամբ մոտենալով աշխատավոր մասսային, խորշելով նրա հետամնացությունից, տգիտությունից: Սակայն Լենինը, բոլշևիկները գնահատում էին պրոլետարական մասսայի մեծ հնարավորությունները և դրանց իրագործման մեջ էին տեսնում սովետական պետության, ողջ մարդկության պայծառ ապագան:*

*1918 թվականին, դիմելով Ռուսաստանի բանվորներին, Գորկին ասել է. «Բովանդակ բանվորական աշխարհը ձեզ է նայում ջերմ հույսերով: Նա ուզում է հանձինս ձեզ տեսնել նոր, ազնիվ, անշահախնդիր նոր աշխարհի կառուցման գործում անխոնջ մարդկանց: Ուրեմն, մեր ողջ հողագնդին ցույց տվեք Ձեզ իբրև նոր մարդիկ»: Իսկ դրա համար Վլադիմիր Իլյիչը պահանջում էր «օգնել աշխատավոր մասսայի դաստիարակմանն ու կրթությանը՝ հաղթահարելու հին սովորույթները, հին բարքերը, որ մեզ ժառանգություն են մնացել հին հասարակարգից, սեփականատիրական բարքեր ու սովորույթներ, որոնցով վարակված են մասսաները»* (Собр. соч., т. *41*, стр. *400*):

**Ա**ՐՎԵՍՏՈՒՄ, *մասնավորապես թատրոնում և դրամատուրգիայում, հեղափոխության հենց առաջին օրերից ծառացավ նոր մարդու դաստիարակմանն ակտիվ մասնակցելու խնդիրը: Բայց ամենևին էլ դյուրին չէր գտնել դրա գեղարվեստական լուծումը: Ծնվելով առավելապես քաղաքացիական պաթոսից, սովետական երիտասարդ դրամատուրգիան ուներ ագիտացիոն ու դիդակտիկ բնույթ: Նրան պակասում էր կերպարների կենսականությունն ու լիարյունությունը. դրամատուրգները դեռ նոր պիտի սովորեին* ցույց տալ *և ոչ թե* ապացուցել, *ստեղծել բնության արարչագործության գեղարվեստական համարժեքը:*

*Ա. Լունաչարսկին* «Գեղարվեստական թատ-

ռոնի 30-ամյա հոբելյանը» հոդվածում անդրադառնալով այդ հարցին, նշում է. «Այնտեղ, ուր ուղեղի մեջ պարփակված է վիթխարի բովանդակություն, որ պետք է արտահայտվի, ուր ինչը մեծ է, բայց ինչպեսը դեռ թույլ, բնական է՝ գեղարվեստական արդյունքները ձեռք են բերում արհեստական, ուսուցանող բնույթ» (О театре и драматургии, М., 1958, т. 1, стр. 604): Դա դժվար կացության մեջ է դնում թատրոնին, որը, պարզ է, չէր կարող նման պիեսներով գոհացնել համաշխարհային-պատմական իրադարձությունների մասնակից ու ականատես հանդիսականին:

Հեղափոխության ընդերքից ծնվող նոր մարդը դրամատուրգիական երկի լիարժեք հերոս կարող էր դառնալ տևական որոնումների, ստեղծագործական մեծ ջանքերի շնորհիվ միայն: Ընդորում, հեղափոխական ոգևորությունը, պաթոսը, այդ մարդու համար բնորոշ լինելով, իհարկե, նրա միակ հատկանիշը չէին: «Ժամանակակից գրողը, դրամատուրգը,— նշում է Մ. Գորկին իր Պիեսների մասին նշանավոր հոդվածում,— գործ ունի կենցաղային մարդու հետ, որը դարերով դաստիարակվել է դասակարգային պայքարի պայմաններում, խորապես վարակված է կենդանական անհատապաշտությամբ և առհասարակ ծայրաստիճան խայտաբղետ, խիստ բարդ, հակասական երևույթ է... Ուստի, մենք չպետք է պարզունակացնենք այսօրվա կենցաղային մարդուն, այլ պետք է նրան ցույց տանք ինքն իրեն՝ իր ներքին խճողվածության և երկատվածության ողջ գունեղությամբ, «սրտի ու մտքի ներքին հակասություններով»: Հարկավոր է պատկերվող ամեն անհատի մեջ, բացի ընդհանուր դասակարգայինից, գտնել այն անհատական միջուկը, որ առավել բնորոշ է նրան և, վերջին հաշվով, վճռում է նրա սոցիալական վարքագիծը» (Советские драматурги о своем творчестве, сб., М., 1967, стр. 9—10):

Պետք է ասել, որ սովետական դրամատուրգիայի բոլոր նշանակալից հաջողությունները կապված են այս խնդրության ըմբռնման և գեղարվեստական արտահայտման հետ: Հիրավի, «մարդկային նյութի ազնվացումը» (Մ. Գորկի), որ կատարվում է սոցիալիստական շինարարության, սովետական ժողովրդի աշխատանքային ստեղծագործության ընթացքում ու դրա շնորհիվ՝ հեղափոխության մեծագույն նվաճումներից է: Եվ մեր դրամատուրգիայի մեծագույն երախտիքն էլ հենց ակտիվ մասնակցությունն է պատմական այդ գործին, դրան նպաստելը: Ու, եթե հեղափոխության Մրրկահավը հպարտությամբ հայտարարում էր՝ «Սոցիալիստական Սովետների Միությունում ծնվում է նոր մարդկություն», մեր թատրոնը, դրամատուրգիան, իհարկե, իրենց լուման ունեն այդտեղ:

Սովետական դրամատուրգիայում հանդես է գալիս նոր մարդու կերպարը, որը հեղափոխության ու քաղաքացիական կռիվների հերոսն է, կյանքի սոցիալական վերափոխման, նոր հասարակարգի կառուցման գործուն մասնակիցը, մարդկային նոր հատկությունների կրողը: Ա. Վ. Լունաչարսկու և Վ. Վ. Վիշնևսկու, Կ. Ա. Տրենյովի, Բ. Ա. Լավրենյովի, Ա. Գ. Գլեբովի, Վ. Վ. Իվանովի, Ա. Ն. Աֆինոգենովի, Ն. Ֆ. Պոգոդինի, Վ. Մ. Կիրշոնի և սովետական այլ դրամատուրգների ստեղծած կերպարների կենդանի, ռեալ հատկանիշներն են՝ գաղափարական համոզվածությունը և նվիրվածությունը սոցիալիզմի գործին, սոցիալական լավատեսությունը, կոլեկտիվիզմի զգացումը, հայրենասիրության և ինտերնացիոնալիզմի միասնությունը, գործերով, շահերով ու հակումներով ժողովրդին մերվելու ձգտումը, ակտիվ մասնակցությունը կյանքին, արժանապատվության զգացումը, գիտելիքների, կուլտուրայի տենչը:

Մարդկային այս հատկանիշների հողն ու աղբյուրը սոցիալիստական կենսակերպն է և, միաժամանակ՝ հազարամյակների ընթացքում ժողովրդի կուտակած հոգևոր-մարդկային արժեքները, որ իրենց լավագույն դրսևորումներով ներդաշնակում են նոր մարդու ձևավորման ընթացքին, դրան հաղորդելով ժողովրդական երանգներ, հատատունություն:

Բայց տեսնենք, թե ինչպիսին էր վիճակը հայ սովետական դրամատուրգիայում:

Դեռ 20-ական թվականներին մեզ մոտ ևս փորձեր արվեցին դրամատուրգիական երկերի հերոս դարձնել նոր մարդուն: Բայց արդյունքն ավելի քան համեստ էր: Հեղինակներին խանգարողը ո՛չ միայն փորձի ու հմտության պակասն էր, այլև վուլգար-սոցիոլոգիզմի և ձախլիկ պատկերացումների պարտադրանքը:

Նոր, դրական մարդու լիարժեք կերպարներ ստեղծելու փորձեր արեցին Դ. Դեմիրճյանը, Ա. Վարդանյանը, Ա. Ղարագյոզյանը և ուրիշներ:

Բայց նորածնունդ սովետահայ թատրոնը չէր կարող լիարյուն կյանքով ապրել առանց իր հերոսի, այնպիսի բեմական կերպարի, որը հանդիսականի համար լիներ օրինակ, ոգեշնչման աղբյուր: Ու, քանի որ նոր դրամատուրգիան անզոր էր այդ պահանջը բավարարելու, թատրոնն իր հայացքն ուղղեց դասական ժառանգությանը:

Մեծ խորհուրդ կար այն բանում, որ Սովետական Հայաստանի առաջին պետական թատրոնի բացման համար, Ալ. Մյասնիկյանի խորհրդով, ընտրվեց անմահ Պեպոն: Դա ո՛չ միայն անցյալի կուլտուրական ժառանգության լավագույն մասի ճանաչման ու բարձր գնահատության վկայությունն էր, այլև այդ ժառանգության մեջ աշխատավոր մարդու, սոցիալական արդարության համար նրա մղած պայքարի իմաստավորումը:

Շատ տարապանքներ, ազգային ու սոցիալական ճնշում ու հալածանք տեսած հանդիսականը համակ հետաքրքրությամբ էր դիտում ներկայացումը, վերապրում Պեպոյի ճակատագիրը: Պեպոյի վեհ արժանիքները— արդար աշխատանքի պաշտամունք, ազնվություն, անկեղծություն, ճշմարտության համար անձնազոհության ունակություն— հեղափոխության հաղթանակի շնորհիվ կյանքի նոր ասպարեզ ելած հանդիսականի սրտովն էին:

Նոր կենսապայմանների, նոր գաղափարների հաստատման ընդհանուր շահագրգռվածությամբ էր թատրոնը մոտենում նաև համաշխարհային թատերագրության նմուշների ընտրությանը: Անցյալի հերոսները՝ Դոն Քիշոտն ու Համլետը, Կարլ Մոորը, Վիլհելմ Տելը, Նորան, դառնում են սիրելի ու հարազատ կերպարներ նոր հանդիսատեսի համար, նրա դաշնակիցները՝ կյանքի սոցիալիստական վերակառուցման պայքարում:

Դրական նոր մարդու պատկերումը 30-ական թվականների սկզբներից արդեն շոշափելի իրողություն էր, սովետահայ դրամատուրգիայի հիմնորոշ խնդիրը: Բեմ են հանվում քաղաքացիական կռիվների հերոսներին, սոցիալիզմի շինարարության անձնվեր մասնակիցներին ներկայացնող տարբեր ժանրի պիեսներ, որոնց շուրջ գրավոր ու բանավոր լուրջ բանավեճեր են ծագում: Քաղաքում և գյուղում կատարվող սոցիալական վերափոխումների կենտրոնական դեմքը՝ սովետական շարքային քաղաքացին, իր անձով ու հետաքրքրություններով հետզհետե «զատվում էր» ընդհանուր ֆոնից՝ ներկայացնելով թատերական երկերի հերոս լինելու իր իրավունքներն ու հատունությունը: Հերոս՝ ամենից առաջ նոր հոգեբանությամբ, կյանքի հանդեպ նոր վերաբերմունքով, մարդկային ձգտումների անօրինակ մաքրությամբ:

Բայց քաղաքացիական-գեղարվեստական մեծ խիզախության ունակ դրամատուրգը միայն կարող էր նկատել, բարձրացնել, կյանքի անձնագիր տալ այն հատկանիշներին, բարոյական ըմբռնումներին, որոնց լիակատար հաստատումն ու հաղթանակը դեռ վաղվա գործ էին:

Չնայած գեղարվեստական և այլ մոլորություններին ու շեղումներին, ուշագրավ էին Դերենիկ Դեմիրճյանի՝ սովետական թեմաներով գրված պիեսները— Կապուտան, Ցոփորային շող, Նապոլեոն Կորկոտյան: Դրամատուրգը փորձում էր հանդես բերել ժամանակակից սովետական մարդուն՝ հավատարիմ իր այն տեսակետին, թե սովետական թատերագրության գլխավոր ժանրը հերոսական դրաման է, «հերոիկ ժանրը», որի գլխավոր հատկանիշը մանրամասներից ու մանրուքներից զերծ մոնումենտալիզմն է: Հենց այս համոզումով էլ իր դրական կերպարներն ստեղծելիս նա անտեսում էր «կենցաղային մանրաքանդակը», հոգեբանական նրբությունները, հակասություններն և այլն: Եվ հետևանքը լինում էր այն, որ դրական կերպարները հանդես էին գալիս որպես հեղինակային դատողության մարմնացումներ և ոչ իբրև բնավորություններ, հուզական ներաշխարհ ունեցող կենդանի մարդիկ: Դրա օրինակն է Ցոփորային շողը պիեսի հերոսը՝ գործարանի դիրեկտոր Ռադինը:

«Հերոսականի» նման պատկերացումը խանգարում էր տեսնել ու պատկերել կենդանի, իրական մարդուն՝ նրա գործերի ու ներաշխարհի բնական ամբողջությամբ: Դրական անձնավորությունը ներկայանում էր մեզ իր ոչ թե իրական, այլ հեղինակի կամոք, ենթադրաբար տրված հատկանիշներով, որ նրա կյանքի, հոգեբանության բնական արտահայտում-դրսևորումները չլինելով չէին համոզում ընթերցող-դիտողին:

Հերոսականությունը ոչ թե մարդկանց գործերով, փոխհարաբերություններով՝ այլ առավելապես նրանց խոսքերով ներկայացնելու սովորույթը, որքան էլ ազնիվ իր նպատակներով, չէր կարող նպաստել նոր մարդու իրոք հերոսական նկարագրի լիարժեք բացահայտմանը, հանդեցնել դրան:

Եվ, այնուամենայնիվ, գնահատելի էին սովետահայ դրամատուրգիայում դրական մարդու պատկերման փորձերը: Դրանց շնորհիվ ավելի ու ավելի հստակ էր ըմբռնվում էական մի ճշմարտություն. բարձր նպատակը. գաղափարը արվեստում կարող է ըստ արժանվույն հնչել միայն այն դեպքում, երբ ներկայանում է իբրև մարդկային փոխհարաբերությունների ճշմարտություն: Այդ ճշմարտության գեղարվեստական լիարժեք բացահայտումը, մարդկային հոգեբանության բացահայտումը, դրամատուրգի բուն կոչումն է:

Հետզհետե պարզություն էր մտնում և մի այլ հարցում. սոցիալիզմի կառուցման պատմական օրինաչափությունը երևան է գալիս, հաստատվում է մարդկանց կոնկրետ գործերով, ջանքերով, ստեղծագործությամբ, միայն դրանց շնորհիվ: Հետևաբար, դրամատուրգի առաջ ևս բացվում է ժողովրդի ստեղծագործական աշխատանքի հաղորդակից լինելու և այն հրապարակ հանելու հնարավորությունը:

Վ. Ի. Լենինի այն պահանջը, թե՝ «Կյանքի, պրակտիկայի տեսակետը պետք է լինի իմացաբանության առաջին և հիմնական տեսակետը» (Երկեր, հ. 14, էջ 179), ամբողջովին վերաբերում էր նաև իրականության գեղարվեստական ճանաչողությանը: Բանն այն է, որ կյանքի կենդանի ընթացքի արտացոլումը դրամատուրգիական եր-

հեղինակային իրավունքներ ունի նաև թատրոնը, հատկապես՝ ռեժիսոր, ՍՍՀՄ ժողովրդական արտիստ Վարդան Աճեմյանը) կերպարը կառուցել է ավանդականի և նորի բնական զուգորդմամբ: Մարգարն իր երեք որդիների հետ կառուցում է այդ նորը, բայց և ժողովրդի բարի ավանդույթների պահապանն է ու պաշտպանը: Հնի և նորի մեկտեղումը, որի նախօրինակները սովետահայ դրամատուրգիայում մենք տեսնում ենք դեռ 30-ական թվականներին, Մարգարի կերպարում դառնում է շատ ցայտուն և շրջապատի մարդկանց էության գնահատման յուրատեսակ չափանիշ:

Մարգարի կողքին, օրինակ, պարզորոշ երևում է Շմավոնի ինչ լինելը. սա ձգտում է, որ առերևույթ ամեն ինչ «պատշաճ» լինի, «կանոնավոր», գիտե, որ աշխատավոր մարդու հանդեպ պետք է «ուշադիր» լինել, որ դեմոկրատությունը ղեկավար անձի համար «անհրաժեշտ հատկություն» է, և որ «լավ մարդու» համարումը խիստ շահեկան է դիրք ունեցողի կամ դրան ձգտողի համար: Մինչդեռ Մարգարը պարզ է, մարդամոտ, բարի, մտքով ու հոգով ազնիվ աշխատավոր մարդ, սովետական քաղաքացի, հաստատ գիտե, որ աշխարհը, այո՛, շուռ է եկել ու գնում է,— պե՛տք է գնա,— իր նմանների հիմնած արդար ճանապարհով:

**Բ**ՈԼՈՐՈՎԻՆ վերջերս բեմ հանվեց Զարզանդ Դարյանի Հանրապետության նախագահը պիեսը՝ նվիրված Հայաստանում սովետական կարգերի հաստատման 50-ամյակին:

Հեղափոխության փոթորիկներից, քաղաքացիական կռվից, ռազմական կոմունիզմից դեպի խաղաղ կյանք, կառուցում, ստեղծագործություն, դժվարություններ, բարդություններ, ուլտրա-հեղափոխականության ու անխոհեմ ոգևորության դիմադրությունը կոտրելու ջանքեր, մարդկանց հին պատկերացումների, սովորույթների, հոգեբանության վերափոխման ոգորումներ, հեղափոխության հումանիստական էության դրսևորում— այս է պիեսի բովանդակությունը:

Հայ դրամատուրգիայում, փաստորեն, առաջին անգամ մենք տեսնում ենք Վ. Ի. Լենինի և Ալ. Մյասնիկյանի կերպարները: Անչափ պատասխանատու և պատվավոր այս խնդրի լուծման գործում հեղինակին շատ օգնեց Սունդուկյանի անվան թատրոնի կոլեկտիվը՝ Վարդան Աճեմյանի գլխավորությամբ: Եվ, ահա, հեղափոխության մեծ առաջնորդը, ամենամարդկային մարդը և նրա զինակից ու բարեկամ, հայ ժողովրդի պանծալի զավակ Ալ. Մյասնիկյանը մեր առջև են՝ դրամատուրգիական տպավորիչ և ուրույն պատկերմամբ:

Հայ բազմաչարչար ու բզկտված ժողովրդին հանգստություն, խաղաղ, ստեղծագործ աշխատանքի հնարավորություն, ազգերի եղբայրական համագործակցության ու փոխօգնության պայմաններում երկիրը վերականգնելու, շենացնելու պատեհությունն էր ընձեռում բոլշևիկների կուսակցությունը: Այդ պատմական միսիայով է Հայաստան գալիս Ալեքսանդր Մյասնիկյանը՝ ի հայտ բերելով լենինյան հանձնարարությունը կատարելու մեծ կամք ու կարողություն: Եվ լավն այն է, որ համարյա միշտ բնական, համոզիչ են նրա խոսքն ու գործը, հեռու «մեծ մարդու» հովերից՝ պարզ ու անկեղծ: Նա բարությունը, անկեղծությունը, մարդկայնությունը չի ձևացնում, այդ հատկությունները ոչ թե նրա կերպարը «մարդկայնացնելու» միտումով արվող հավելումներ են, այլ հենց այդ գաղափարների, այդ վսեմ գործի անհրաժեշտ ու հավաստի արտահայտություններ: Սա հատկապես ընդգծում ենք, որովհետև հակառակ օրինակներ մեր դրամատուրգիան հաճախ է տվել:

Մյասնիկյանի կերպարի մյուս արժանիքը անսահման ու անվերապահ ժողովրդասիրությունն է, որ ավելին է, քան սովորական հայրենասիրությունը: Դա մարքս-լենինյանի արյունակցական մերձավորությունն է երկրի բոլոր բարիքները, ողջ գեղեցկությունն ստեղծող մարդկանց հետ, նրա դավանած բոլշևիկյան հումանիզմի դրսևորումը: Եվ խորհրդանշական է Մյասնիկյանի խոսքը. «Թող այսուհետև աշխատանքի երգը թնդա և ավետի հող, սերմացու, խաղաղություն, երջանկություն աշխատավոր մարդու համար: Դա՛ է հեղափոխությունը, դա՛ է մեր կյանքի, երազների, պայքարի իմաստը»:

**Ս**ՈՎԵՏԱՀԱՅ դրամատուրգիայի հիսնամյա ճանապարհն արգասավորվել է դրական մարդու կերպարի համառ որոնումներով: Նվաճումները, ինչպես տեսանք, փոքր չեն, թեև կարելի էր ավելին ակնկալել թատրոնի ու թատերագրության մարդուց:

Մեր թատրոնում դրական մարդու կերպարը կերտելու ջանքերն արտացոլումն են կոմունիստական կուսակցության կեսդարյա պայքարի՝ հանուն աշխատավոր մարդու շահերի, նրա ունակությունների ու տաղանդի զարգացման:

Այդ պայքարին առավել ակտիվ մասնակցելը, դրական մարդու կերպարի խոր, նուրբ, բարձրարվեստ պատկերումը մեր դրամատուրգների պարտքն է, արվեստի այդ ճյուղի հետագա զարգացման գլխավոր պայմանը:

# ԿՈՒՍԱԿՑԱԿԱՆ ԿՅԱՆՔ

## ԿՈՒՍԱԿՑԱԿԱՆ ԺՈՂՈՎԸ ԴԱՍՏԻԱՐԱԿՈՒԹՅԱՆ ԴՊՐՈՑ Է

Ա. Գ. ՄՈՒՐԱԴՅԱՆ

ՀԿԿ Աշտարակի շրջկոմի առաջին քարտուղար

Անգնահատելի է կուսակցական ժողովի դերը կոմունիստների դաստիարակության, կուսկազմակերպությունների առջև ծառացած տնտեսական ու քաղաքական խնդիրների լուծման գործում: Կուսակցական ժողովում կոմունիստները սովորում ու սովորեցնում են, քննադատում և քննադատվում, որոնցում իրենց անելիքները կուսակցության դիրեկտիվների կենսագործման ասպարեզում:

Կուսակցական ժողովը, որպես դաստիարակության դպրոց, կոչված է ո՛չ միայն հարցեր քննարկել և որոշումներ կայացնել, այլև ամեն մի կոմունիստի նոր բան տալ, մի աստիճանով բարձրացնել նրա գիտելիքները, նրան ներգրավել ակտիվ հասարակական աշխատանքում: Շատ օրինակներ կարելի է բերել, երբ ՍՄԿԿ շարքերը թեկնածու ընդունվելուց հետո, մեկ տարվա ընթացքում, մարդկանց մեջ մեծ փոփոխություն է տեղի ունենում: Այդ ժամանակամիջոցում նրանք քաղաքականապես հասունանում են, ավելի խոր պատկերացնում հարցերը, առավել պատասխանատվությամբ վերաբերվում դրանց լուծմանը: Բայց չէ՞ որ մեկ տարվա ընթացքում նրանք նոր դպրոց, տեխնիկում, ինստիտուտ չեն ավարտում. ուրեմն ի՞նչն է նրանց մեջ նկատելի փոփոխություն մտցնում: Պետք է անվերապահորեն ասել, որ փոփոխությունների մեծ մասը թեկնածուի կյանքում տեղի է ունենում կուսակցական ժողովներին մասնակցելու, ավագ ընկերներին լսելու, հանձնարարություններ ստանալու և կատարելու միջոցով: Մասնակցելով հարցերի նախապատրաստմանն ու քննարկմանը, կուսժողովներում ելույթ ունենալով, լսելով ուրիշներին՝ երիտասարդ կոմունիստը, և ոչ միայն նա, շատ բան է սովորում: Եվ պատահական չէ, որ Աշտարակի շրջանի կոլտնտեսությունների, սովխոզների, արտադրական ձեռնարկությունների սկզբնական կուսկազմակերպությունները միջին օղակում ղեկավար աշխատանքի են առաջ քաշում այն կոմունիստներին, ովքեր հասկանում և սիրում են գործը, հանդես բերում բանիմացություն ու շատ բանով տարբերվում մյուսներից:

Իրոք, կուսակցական ժողովը դաստիարակության դպրոց է, սակայն վեր-

չինս իր այդ նպատակին ծառայում է միայն այն դեպքում, երբ օրակարգում դրվում են վաղօրոք նախապատրաստված, կոմունիստներին հուզող հարցեր։ Այդ ժամանակ քննարկումն անցնում է արդյունավետ, քննադատության ու ինքնաքննադատության մթնոլորտում, որի շնորհիվ ժողովի որոշումը դառնում է գիտակցված գործողությունների ծրագիր։

«Յարոսլավլի քաղաքային կուսկազմակերպությունում կուսակցական ժողովների անցկացման պրակտիկայի մասին» ՍՄԿԿ Կենտկոմի հայտնի որոշման մեջ ասվում է, որ միմիայն նախապատրաստված ժողովը կարող է դառնալ կոմունիստների դաստիարակության իսկական դպրոց։ Այդ որոշմամբ կուսկազմակերպությունների ուշադրությունը հրավիրվեց այն բանին, որ կուսակցական ժողովների ներգործությունը զգալիորեն իջնում է, որովհետև դրանցում հաճախ բացակայում է գործարար, սկզբունքային հարցադրումը, չի ծավալվում մտքերի լայն փոխանակություն, ժողովներն անցկացնելիս անբավարար է հաշվի առնվում կուսակցության անդամների գիտակցական մակարդակը, իսկ որոշումները հաճախ կրում են ոչ-կոնկրետ, դեկլարատիվ բնույթ։

Մեր շրջանի կուսկազմակերպությունները վերջին ժամանակաշրջանում բարելավել են կուսակցական ժողովների նախապատրաստման ու անցկացման գործը։ Կուսշրջկոմը հատուկ ուշադրություն է նվիրում այն բանին, որ սկզբնական կուսկազմակերպություններում լուրջ և պատասխանատու մոտեցում դրսևորվի ժողովների օրակարգի ընտրության, հարցերի նախապատրաստման ու քննարկման և որոշումների կենսագործման նկատմամբ։ Այդ նպատակով անցած տարվա փետրվարին հրավիրեցինք կուսկազմակերպությունների քարտուղարների սեմինար-պարապմունք, որտեղ «Ինչպե՞ս նախապատրաստել և անցկացնել կուսակցական ժողովը» թեմայի մասին զեկուցեց շրջկոմի երկրորդ քարտուղար Մ. Խաչատրյանը։ Բացի այդ, մենք ակտիվիստների և շրջկոմի պատասխանատու աշխատողների միջոցով շրջանի ավելի քան 45 սկզբնական կուսկազմակերպություններում ուսումնասիրեցինք կուսժողովների նախապատրաստման ու անցկացման և կոմունիստների ակտիվության բարձրացման հարցերը։ Այնուհետև կուսշրջկոմում ամփոփեցինք ուսումնասիրության արդյունքները, մշակեցինք միջոցառումների լայն պլան, որի իրագործումով զգալի չափով բարձրացավ կուսակցական ժողովների դերը որպես դաստիարակության դպրոցի։

Անցած տարվա ապրիլին կուսշրջկոմի պլենումը քննարկեց կուսակցական ժողովների նախապատրաստման և անցկացման վիճակը Օշականի և Սասունիկի սովխոզների կուսկազմակերպություններում։ Քննարկումը ցույց տվեց, որ հիշյալ կուսկազմակերպությունները որոշակի գործ են կատարել կուսակցական ժողովները դաստիարակության դպրոց դարձնելու, արտադրության մեջ կոմունիստների ավանգարդային դերն ապահովելու համար։ Դա, ինչ խոսք, դրական ազդեցություն է ունեցել արտադրության վրա։

1969 թ. այդ սովխոզներն առաջին անգամ տնտեսական տարին փակեցին օգուտով և լուրջ նախադրյալներ ստեղծեցին հետագա հաջողությունների համար։

Պլենումն ընդգծեց, որ ինչպես Օշականի, այնպես էլ Սասունիկի սովխոզի կուսկազմակերպությունների աշխատանքում պրակտիկա է դարձել ամեն մի նոր ժողովում կոմունիստներին տեղեկացնել նախորդ ժողովի որոշման կատարման մասին։ Պլենումը միաժամանակ վեր հանեց այդ կուսկազմակեր-



պությունների գործունեության թերությունները, նշեց, որ մի շարք կոմունիստներ (հիմնականում շարքային աշխատողներ) ժողովներում ելույթ չեն ունենում, հանձնարարություններ չեն ստանում, այդ գործում ավելի շատ մեղք ունեն կուսկազմակերպությունների բյուրոները, նրանց քարտուղարները։

Պլենումը կուսկազմակերպությունների քարտուղարներից պահանջեց աշխատել յուրաքանչյուր կոմունիստի հետ, նրան մասնակից դարձնել կուսակցական կյանքին, աստիճանաբար բարձրացնել նրա դերն ու ակտիվությունը։ Սա համարվեց կուսկազմակերպության քարտուղարի գլխավոր անելիքներից մեկը։

Շատ կարևոր է, երբ ունկնդրում ենք կոմունիստին, լսում նրա խորհուրդը։ Բերեմ մեկ օրինակ։ Անցյալ տարի, երբ նախապատրաստվում էր շրջկոմի բյուրոյում քննարկելու խաղողի բերքահավաքի և բերքի կորուստը կանխելու հարցը, շրջկոմ հրավիրեցինք նաև մի քանի շարքային կոմունիստների, այդ թվում նաև Օշականի սկզբնական կուսկազմակերպության անդամ, բանվորուհի Գայանե Արիստակեսյանին։ Բերքի պահպանության շուրջ նրա հետ ունեցած զրույցը, ըստ էության, հիմք հանդիսացավ այդ հարցի կապակցությամբ բյուրոյի որոշման համար։ Նա խորհուրդ տվեց բերքի պահպանության համար մոբիլիզացնել և կոնկրետ հանձնարարություններ տալ անմիջականորեն խաղողագործական բրիգադների շարքային անդամներին։ Շրջկոմի բյուրոյի որոշմամբ այդպես էլ արվեց։ Արդյունքը գոհացուցիչ էր. բերքը լավ պահպանվեց և համարյա անկորուստ հավաքվեց։

Շարքային կոմունիստին ունկնդրելը, նրա խորհուրդներն ընդունելը խրախուսում է հենց այդ կոմունիստին և օգնում գործին։ Նման օրինակներ շատ կարելի է բերել սկզբնական կուսկազմակերպությունների կյանքից։

1969 թ. մայիսի 13-ին Աշտարակի սովխոզի կուսկազմակերպության ժողովում քննարկվեց «Այգիների մշակությունը և կուսկազմակերպության խնդիրը» հարցը։ Ժողովն անցավ բարձր մակարդակով, գործարար մթնոլորտում, որովհետև ճիշտ էր ընտրվել օրակարգը, հարցի նախապատրաստմանը և որոշման նախագծի մշակմանը մասնակցել էր 15 կոմունիստ։ Կոմունիստները նախապես գիտեին ժողովի օրակարգի մասին, տեղյակ էին զեկուցման թեզերին։ Դրական է նաև այն, որ հարցի նախապատրաստության ընթացքում մի շարք բրիգադներում զգալի աշխատանք էր կատարվել տեղ գտած թերությունները ու բացերը վերացնելու համար։

Եղվարդի մեքենափորձարկման կայանի կուսկազմակերպությունն անցած տարի հերթական ժողովում քննարկեց խոտհնձի ընթացքը։ ՍՄԿԿ անդամներ Վ. Մնացականյանը, Վ. Միքայելյանը, Մ. Նարիմանյանը հանդես եկան խելացի խորհուրդներով։ Նրանք առաջարկեցին կազմակերպել խոտհնձիչ ագրեգատների երկհերթ աշխատանքը, հնձել բոլոր այն տարածությունները (անտառաշերտեր, ճամփեզրեր, միջնակներ և այլն), որտեղ խոտ կա, ավելացնել հնձող ագրեգատների թիվը, կազմակերպել հնձված տարածությունների ոռոգումը։ Կոմունիստները գործարար մթնոլորտում քննարկեցին ու ընդունեցին նրանց առաջարկությունները և հետագայում ապահովեցին դրանց իրագործումը։ Խոտհունձն ընթացավ հաջողությամբ. զգալիորեն գերակատարվեց կուտակման պլանը։

Կուսժողովներում կոմունիստների կողմից հարցերի գործարար քննարկման և նրանց խելացի առաջարկությունների կենսագործման շատ օրինակներ

Կուսակցական ժողովի որոշումը գործի սկիզբն է։ Վերջինիս ժամանակին կենսագործումը բարձրացնում է ժողովի հեղինակությունը։ Սակայն չպետք է մոռանալ նաև մի կարևոր հանգամանք. ժողովներում բարձրացված ոչ բոլոր հարցերն է հնարավոր շուտափույթ լուծել։ Կուսկազմակերպություններում կոմունիստներից բազմիցս բողոքներ են լսվում իրենց բարձրացրած հարցերի լուծումը ձգձգելու վերաբերյալ։ Այսպես, օրինակ, երկու տարի է, ինչ Ավանի սովխոզի առանձին կոմունիստներ պահանջում են բարեկարգել սովխոզ տանող ճանապարհը, Արագյուղի կոլտնտեսության, Ավանի, Կարբիի սովխոզների կոմունիստներն էլ պահանջում են իրենց գյուղերում կառուցել նոր դպրոցներ։ Պարզ է, նման հարցերը միանգամից, կամ մեկ տարում հնարավոր չէ լուծել, և դա չպետք է դիտվի որպես կոմունիստների կողմից բարձրացված հարցերի նկատմամբ կազմակերպությունների ցուցաբերած անտարբերություն։

Կոմունիստների բարձրացրած հարցերի մի զգալի մասի լուծման համար ժամանակ և հնարավորություններ են պետք։ Շրջանի ամենափոքր կազմակերպությունում անգամ բարձրացված մի շարք հարցերի լուծումը միայն տեղական մարմինների հույսին թողնելը ճիշտ չէր լինի։ Դպրոցների, կուլտ-կենցաղային օբյեկտների, ոռոգման ցանցի շինարարության և մի շարք այլ հարցերի լուծումը, մեզ հետ միասին, պետք է իրենց գործը համարեն նաև հանրապետական վերադաս մի շարք կազմակերպություններ։ Երբ տարիներ առաջ դաշտից ծղոտը և խոտը տեղափոխվում էին սայլերով, վերադաս կազմակերպությունները գրեթե անելիքներ չունեին։ Այժմ շրջանի կոլտնտեսություններում, սովխոզներում, արդյունաբերական և շինարարական կազմակերպություններում աշխատում են հարյուրավոր մեքենաներ, մեխանիզմներ, որոնց պահեստամասերով ապահովելը լուրջ խնդիր է, իսկ դրա լուծումը միայն տեղական մարմիններից կախված չէ։

Ստացվում է այնպես, որ շրջանի ամենահեռավոր գյուղի կուսկազմակերպության ժողովում կոմունիստների բարձրացրած առանձին հարցերին, նրանց առաջարկություններին ու քննադատական դիտողություններին ընթացք տալը վաղուց դուրս է եկել գյուղի, շրջանի ոլորտից, դարձել հանրապետական մասշտաբի խնդիր։ Հետևաբար, հանրապետության շատ կազմակերպությունների ճկուն գործունեությունը մեծ չափով կնպաստի կուսակցական ժողովներում բարձրացված հարցերի ժամանակին ընթացք տալուն, լուծմանը և ժողովների դերի բարձրացմանը։

ՍՄԿԿ XXIV համագումարում ընկ. Լ. Ի. Բրեժնևը կուսակցական մարմինների առջև խնդիր դրեց հետևողականորեն զբաղվել սկզբնական կուսկազմակերպությունների մարտունակության բարձրացմամբ, ամեն կերպ զարգացնել ներկուսակցական դեմոկրատիան, ամրապնդել կուսակցական ու պետական կարգապահությունը, բարելավել կադրերի ընտրության ու դաստիարակության գործը, ամենօրյա հոգատարություն ցուցաբերել կոմունիստների գաղափարական կոփվածության նկատմամբ։ Սկզբունքային մեծ կարևորություն ունեցող այս խնդիրների իրականացման գործում մեծ է կուսակցական ժողովի դերը։

Կուսկազմակերպությունները պարտավոր են, ՍՄԿԿ XXIV համագումարի որոշումների լույսի տակ, վերակառուցել իրենց գործունեությունը, կուսակցական ժողովը դարձնել այն օրգանը, որն ունակ լինի վճռելու տնտեսական ու կուլտուրական շինարարության, մարդկանց քաղաքական դաստիարակության ամենաբարդ ու բազմազան հարցերը։

---

# ԷԿՈՆՈՄԻԿԱՅԻ ՀԱՐՑԵՐ

## ԲԱՆԻՄԱՑ ՕԳՏԱԳՈՐԾԵԼ ԱՇԽԱՏՈՒԺԸ

Վ. Ա. ԿՈՒՐԵՂՅԱՆ, ՅՈՒ. Մ. ՍՈՒՎԱՐՅԱՆ

Կոմունիզմի նյութա-տեխնիկական բազայի ստեղծումը զգալիորեն պայմանավորված է հասարակական արտադրության մեջ զբաղված աշխատանքային ռեսուրսների արդյունավետ օգտագործմամբ։ Դա բացատրվում է ոչ միայն նրանով, որ հասարակական զարգացման գործում վճռականը, գլխավորն աշխատուժն է, այլև նրանով, որ արտադրության կառավարման բարելավումը, պլանավորման կատարելագործումը, տնտեսական խթանման ուժեղացումը ներկա էտապում սերտորեն կապված են դրա արդյունավետ օգտագործման հետ։ Ահա թե ինչու կուսակցության XXIV համագումարի դիրեկտիվներում ասված է. «Ավելի արդյունավետ օգտագործել աշխատանքային ռեսուրսները։ Արտադրության տեխնիկական մակարդակի բարձրացման հիման վրա հետևողականորեն կրճատել ձեռքի և ծանր, ինչպես նաև չորակավորված աշխատանքի կիրառումը ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերում»։

Արդյունաբերական ձեռնարկությունների աշխատուժով ապահովվածությունը և դրա արդյունավետ օգտագործումը սերտորեն առնչվում են աշխատողների թվի պլանավորման հետ։ Հայտնի է, որ արտադրական ձեռնարկության աշխատանքի պլանի մշակման, մասնավորապես արդյունաբերա-արտադրական անձնակազմի թվի որոշման ժամանակ ելնում են արտադրական ծրագրի աշխատատարությունից, մեկ աշխատողի տարեկան աշխատաժամանակի ֆոնդից և աշխատանքի նորմաների կատարման աստիճանից։ Այդ եղանակով հաշվարկված աշխատողների թիվը պետք է ապահովի արտադրական ծրագրի կատարումը։ Այսպիսով, այն անհրաժեշտ է արտադրական ծրագրի կատարման համար և կարող է ծառայել որպես աշխատուժով ապահովվածության չափանիշ։ Ուստի, աշխատողների պլանային և փաստացի թվի հարաբերությունը մի ցուցանիշ է, որը կարող է բնութագրել ձեռնարկության աշխատուժով ապահովվածությունը։

Սակայն, քանի որ աշխատողների պլանային թիվը միշտ չէ, որ արտահայտում է արտադրության իրական պահանջը, այդ պատճառով էլ նշված ցուցանիշի հետ միասին անհրաժեշտ է ուսումնասիրել արտադրության մեջ զբաղված աշխատուժի օգտագործման արդյունավետությունը։ Վերջինս կա-

րող է բնութագրվել ինչպես աշխատանքի արտադրողականության բարձրացման տեմպերով, այնպես էլ արտադրության ծավալի հավելաճումով, աշխատանքի արտադրողականության աճի տեսակարար կշռով: Եթե արտադրանքի հավելաճի մեծ մասը ստացվում է աշխատողների թվի ավելացմամբ և աշխատանքի արտադրողականության աճի ցածր տեմպերի դեպքում աշխատուժի պակաս է զգացվում, ապա այն կարելի է բավարարել ներարտադրական ռեզերվների օգտագործման հաշվին: Այդ դեպքում աշխատողների թիվն աճում է արագ, քան աշխատանքի արտադրողականությունը, իսկ աշխատուժի նկատմամբ պահանջը արտադրության ընդլայնմանը զուգընթաց անընդհատ աճում է և արտադրությունն աշխատուժի մշտական պահանջ է ներկայացնում: Սակայն տվյալ դեպքում, ըստ էության, չի նշանակում, թե ձեռնարկությունն աշխատուժով ապահովված չէ, քանի որ այնտեղ ներարտադրական ռեզերվներն անբավարար են օգտագործվում: Արտադրության ինտենսիվ զարգացման ժամանակ աշխատանքի արտադրողականությունն աճում է արագ, քան աշխատողների թիվը: Այս դեպքում արտադրության մասշտաբների ընդլայնման հետ կապված աշխատուժի լրացուցիչ պահանջը բավարարվում է աշխատանքի արտադրողականության արագ աճի շնորհիվ հարաբերաբար դուրս մղված աշխատուժի օգտագործմամբ և նոր աշխատողների ներգրավմամբ:

Այսպիսով, ձեռնարկության աշխատուժով ապահովվածությունը բնութագրելու համար բավական չէ համադրել աշխատողների փաստացի և պլանային ցուցանիշները: Պետք է դրա հետ ուսումնասիրել տվյալ ձեռնարկությունում զբաղված աշխատուժի օգտագործման արդյունավետությունը:

Հանրապետության արդյունաբերության գրեթե բոլոր ճյուղերում, 1968 և 1969 թթ. տվյալներով, աշխատողների պլանային թիվը գերազանցել է փաստացի թվին, իսկ արդյունաբերության աշխատողների պլանային ցուցանիշը կազմել է՝ համապատասխանաբար՝ 99 և 98,9 տոկոս: Մասնավորապես այդ ցուցանիշը թերակատարվել է էլեկտրատեխնիկական արդյունաբերության, հաստոցաշինության, սարքաշինության մինիստրություններում և գունավոր մետալուրգիայի վարչությունում: Դա նշանակում է, որ հանրապետության արդյունաբերությունը նշված տարիներին, աշխատուժով լրիվ ապահովված չի եղել: Սակայն հետազոտությունները ցույց են տալիս, որ զարգանալով էքստենսիվ ճանապարհով բավարար չեն օգտագործվում ներարտադրական ռեզերվները, հատկապես ցածր է այդ ճյուղերում աշխատուժի օգտագործման արդյունավետությունը: Բավական է նշել, որ արտադրության ծավալի աճը հիմնականում ապահովվում է աշխատողների թվի ավելացման հաշվին: Այսպես, արտադրության ծավալի ամբողջ հավելաճի մեջ աշխատանքի արտադրողականության բարձրացման տեսակարար կշիռը կազմել է 1966 թ. 22 տոկոս, 1967-ին՝ 41,6, 1968-ին՝ 10,7, իսկ 1969-ին՝ 62,9 տոկոս: Ըստ արդյունաբերության առանձին ճյուղերի համախառն արտադրանքի հավելաճում աշխատանքի արտադրողականության բարձրացման բաժինը 1969 թ. բնութագրվում է հետևյալ տվյալներով (աճը, նախորդ տարվա համեմատությամբ, տոկոսներով):



| | Համախառն արտադրանքի աճ | Աշխատողների թվի աճը | աշխատանքի արտադրողականության աճը | Համախառն արտադրանքի հավելաճում աշխատանքի արտադրողականության բարձրացման հաշվին ստացված բաժինը |
|---|---|---|---|---|
| Ամբողջ արդյունաբերությունը՝ | 114 | 105,2 | 106,3 | 62,9 |
| այդ թվում՝ | | | | |
| էլեկտրաէներգիա | 109,5 | 102,9 | 106,4 | 69,5 |
| Սև մետաղաձուլություն | 111,5 | 106,4 | 104,7 | 44,4 |
| Քիմիական արդյունաբերություն | 107,1 | 105,9 | 101,1 | 17,0 |
| Մեքենաշինություն և մետաղամշակում | 120,4 | 107,7 | 111,8 | 62,3 |
| Շինանյութերի արդյունաբերություն | 113,2 | 106,0 | 106,8 | 54,6 |
| Թեթև արդյունաբերություն | 106,6 | 103,9 | 102,6 | 41,0 |

Աղյուսակի տվյալներով 1969 թ. աշխատանքի արտադրողականության բարձրացման հաշվին արտադրության ծավալի աճի տեսակարար կշիռը, արդյունաբերության առանձին ճյուղերում դեռևս բարձր չէ, հատկապես դա վերաբերում է քիմիական և թեթև արդյունաբերությանը, որտեղ այն կազմել է համապատասխանաբար՝ 17 և 41 տոկոս:

Արդյունաբերության առանձին ճյուղերում աշխատանքի արտադրողականության աճի համեմատաբար ցածր տեմպերը բացատրվում է եղած ռեզերվների անբավարար օգտագործմամբ: Ամենից առաջ դա վերաբերում է աշխատաժամանակի օգտագործմանը: Ուսումնասիրություններից պարզվել է, որ հանրապետության արդյունաբերության մեջ զգալիորեն շատ են աշխատաժամանակի կորուստները: Այսպես, 1968 թ. տվյալներով, մեկ բանվորի հաշվով, աշխատաժամանակի կորուստները կազմել են 6,21 օր, իսկ ՍՍՀՄ արդյունաբերության մեջ՝ 2,99 օր: Հատկապես մեծ են աշխատաժամանակի կորուստները բացակայության և պարապուրդների պատճառով: Մեր հաշվարկներով հանրապետության արդյունաբերության մեջ աշխատաժամանակի նշված կորուստների վերացման շնորհիվ հնարավոր կլիներ որպես լրացուցիչ աշխատուժ օգտագործել մոտ 4178 մարդ: Մինչդեռ արդյունաբերության չբավարարված պահանջը 1968 թ. կազմում էր 2445 մարդ:

Աշխատուժի արդյունավետ օգտագործման համար կարևոր նշանակություն ունի նյութական արտադրության մեջ տեխնիկական առաջընթացի նվաճումների ներդրումը: Սակայն հանրապետության արդյունաբերության մեջ նոր տեխնիկայի ներդրման պլանը թերակատարվում է: Այն 1968 թ. կատարվել է 80 տոկոսով, այդ թվում՝ արտադրապրոցեսների մեքենայացման և ավտոմատացման բնագավառում 74 և 78 տոկոսով: Դրա հետ միասին ցածր է աշխատանքի մեքենայացման աստիճանը, որը 1969 թ. 42 տոկոս էր:

Այսպիսով, միայն այս գործոնների ուսումնասիրությունից պարզվում է, որ աշխատուժի ավելի արդյունավետ օգտագործման շնորհիվ կարելի է բավարարել արդյունաբերության լրացուցիչ աշխատուժի պահանջը:

Իհարկե, աշխատուժի, հատկապես որակյալ աշխատուժի պահանջը օբյեկտիվորեն գոյություն ունի և կապված է տեխնիկական առաջընթացի, նոր ձեռնարկությունների կազմակերպման հետ: Սակայն այն կարող է բավարարվել,

մի կողմից՝ աշխատանքային ռեսուրսների աճի հաշվին՝ նոր որակյալ աշխատողների ներգրավմամբ, մյուս կողմից՝ աշխատանքի արտադրողականության արագ աճի շնորհիվ հարաբերաբար դուրս մղված և վերավորակավորված աշխատողների ներճյուղային ու միջճյուղային վերաբաշխմամբ:

Աշխատողների պլանային թվի գերազանցումը փաստացիից բնորոշ է հատկապես առանձին ձեռնարկություններին: Մինչդեռ այդ ձեռնարկություններում աշխատուժի ընդգրկման պլանը չկատարելու դեպքում արտադրության պլանները հիմնականում կատարվել և գերակատարվել են: Այսպես, օրինակ. Քանաքեռի ալյումինի գործարանում 1968 թ. աշխատողների ընդգրկման պլանը 99,1 տոկոսով կատարելու դեպքում արտադրանքի պլանը կատարվել է 102,5 տոկոսով, 1966 թվականին, համապատասխանաբար՝ 94,4 և 103,5 տոկոսով: Երևանի ավտոդողերի գործարանում աշխատողների ընդգրկման պլանը 1968 թ. կատարվել է 95,5, իսկ 1969 թ.՝ 100,4 տոկոսով, այդ տարիներին արտադրանքի պլանը կատարվել է 101,2 և 101,6 տոկոսով: Դրա հետ միասին, այդ ձեռնարկություններում աշխատաժամանակի կորուստները կազմել են փաստորեն աշխատած ժամանակի 16—20 տոկոսը: Այսպիսով, աշխատողների պլնային թվի չպահովելը արտադրական ծրագրի թերակատարման պատճառ չի հանդիսացել:

Աշխատողների ընդգրկման պլանի թերակատարելը հաճախ այն տպավորությունն է ստեղծում, որ իբր Հայաստանում զգացվում է աշխատանքային ռեսուրսների դեֆիցիտ: Մինչդեռ մեր հանրապետությունը Միության ազատ աշխատուժով հարուստ շրջաններից մեկն է: Այդ մասին է վկայում այն փաստը, որ տնային և անձնական օժանդակ տնտեսություններում զբաղված աշխատունակ բնակչության տեսակարար կշիռը մեզ մոտ զգալիորեն բարձր է միութենականից, իսկ մի շարք հանրապետությունների համեմատությամբ (հատկապես մերձբալթյան) այն բարձր է մի քանի անգամ:

Հնարավոր է, որ առանձին ձեռնարկություններում, իրոք, որակյալ աշխատուժի կարիք են զգում, սակայն այդ չի նշանակում, թե ազատ աշխատուժ չկա: Դա, ամենից առաջ, վկայում է, որ առանձին ձեռնարկություններ ժամանակին չեն զբաղվում անհրաժեշտ մասնագիտությունների աշխատուժի պատրաստմամբ և պետական պլանների թերակատարումները բացատրում են աշխատուժի պակասով: Սակայն, ինչպես ցույց տվինք, աշխատուժի թվացող պակասը, մի կողմից՝ պայմանավորված է արդեն զբաղված աշխատուժի օգտագործման ցածր արդյունավետությամբ, մյուս կողմից՝ անհրաժեշտ մասնագիտությունների կադրերի պատրաստման անմխիթար վիճակով: Արդյունաբերական ձեռնարկությունների աշխատուժով ապահովվածությունը կախված է նաև դրանց ճիշտ տեղաբաշխումից, կուլտուր-կենցաղային և բնակարանային պայմաններից:

Հայկական ՍՍՀ պետպլանի տնտեսագիտության և պլանավորման գիտահետազոտական ինստիտուտի աշխատանքի և աշխատավարձի բաժնի կողմից հանրապետության շրջանների և քաղաքների վերաբերյալ կազմած աշխատանքային ռեսուրսների փաստացի և պլանային հաշվեկշիռներն ու առանձին ուսումնասիրությունները ցույց են տալիս, որ հանրապետության աշխատանքային ռեսուրսներն օգտագործվում են անհամաչափ: Առանձին քաղաքներում, հատկապես խոշոր քաղաքներում, զգացվում է աշխատուժի պակաս, իսկ փոքր քաղաքներում և առանձին շրջաններում կա ավելցուկ աշխատուժ: Դա ար-



դյունք է այն բանի, որ ոչ հեռավոր անցյալում արդյունաբերական ձեռնարկություններն առավելապես տեղաբաշխվել են խոշոր քաղաքներում, հատկապես Երևանում: Արդյունաբերության համախառն արտադրանքի մոտ 3/4 թողարկվում է հանրապետության երեք խոշոր քաղաքներում (Երևան, Լենինական, Կիրովական): Այստեղ է զբաղված Հայաստանի արդյունաբերա-արտադրական անձնակազմի մոտ 72 տոկոսը: Ինչ խոսք, որ մեր քաղաքների առաջիկա աճումը և արդյունաբերության նոր օջախների ստեղծումը հանրապետության տարբեր վայրերում կփոխեն այս համամասնությունը:

Պետք է նշել, որ վերջին տասնամյակի ընթացքում հանրապետության արտադրաուժերի ռացիոնալ տեղաբաշխման գործում կատարվել են դրական տեղաշարժեր: Մեծ թվով ձեռնարկություններ կառուցվել են փոքր քաղաքներում և քաղաքատիպ ավաններում, որի շնորհիվ զգալի չափով բարձրացել է փոքր քաղաքների տեսակարար կշիռը արդյունաբերության համախառն արտադրանքի մեջ: Այդ պրոցեսը կշարունակվի նաև նոր հնգամյակի տարիներին: Սակայն պետք է նշել, որ առանձին մինիստրությունների և գերատեսչությունների ղեկավարներ հաճախ դժվարությամբ են համաձայնում ձեռնարկություններ կառուցել հանրապետության փոքր քաղաքներում և քաղաքատիպ ավաններում, պատճառաբանելով, որ չկան աշխատանքային ռեսուրսներ: Դա այն դեպքում, երբ փոքր քաղաքները և շրջակայքի գյուղական վայրերն ունեն բավական ազատ բանվորական ուժ: Այստեղ հիմնական պատճառը ո՛չ թե բանվորական ուժի պակասն է, այլ այն, որ առկա է հիմնականում ոչ որակյալ բանվորական ուժ, որը որակավորման կարիք է զգում: Հետևաբար, որևէ օբյեկտի շինարարությանը զուգընթաց անհրաժեշտ է, որ մինիստրություններն ու գերատեսչությունները միաժամանակ զբաղվեն համապատասխան մասնագիտությունների կադրերի պատրաստման գործով: Այլ կերպ ասած, ձեռնարկության կառուցման նախագծման հետ միասին պետք է պլանավորել նաև որակյալ կադրերի պատրաստումը:

Մեր ուսումնասիրությունները ցույց են տալիս, որ փոքր քաղաքներում անձնական օժանդակ և տնային տնտեսության մեջ զբաղվածների տեսակարար կշիռը 2—3 անգամ բարձր է, քան խոշոր քաղաքներում: Առհասարակ Հայաստանը պատկանում է այն հանրապետությունների շարքին, որոնք ունեն հանրային տնտեսության մեջ չզբաղված աշխատանքային ռեսուրսներ, որոնց մեծ մասը անհրաժեշտ պայմանների ստեղծման դեպքում կարելի է ընդգրկել հանրային արտադրության մեջ:

Արդյունաբերության զարգացման բարձր տեմպերը պետք է զուգակցվի դրան համապատասխան բնակարանային և կուլտուր-կենցաղային օբյեկտների շինարարությամբ:

Բնակարանային և կուլտուր-կենցաղային օբյեկտների՝ հանրապետության բոլոր շրջաններում շինարարության լայն ծավալը կնպաստի ժողովրդական տնտեսության ճյուղերի զարգացմանը, ազատ աշխատանքային ռեսուրսների արտադրության մեջ ներգրավմանը, ինչպես նաև աշխատուժի հոսունության կրճատմանը: Հարկ է նշել, որ փոքր քաղաքներում և շրջաններում համեմատաբար ցածր է կոմունալ-կենցաղային և կուլտուրական սպասարկման մակարդակը, հատկապես փոքր են կուլտուր-կենցաղային օբյեկտների շինարարության մասշտաբները: Այդ պատճառով հաճախ գերատեսչությունները և մինիստրությունները լրացուցիչ ծախսերից խուսափելու նպատակով գերադա-

սում են ձեռնարկություններ կառուցել խոշոր քաղաքներում, որտեղ թեկուզ բանվորական ուժի պակաս է զգացվում։

Անհրաժեշտ է նաև նկատել, որ աշխատուժի արդյունավետ օգտագործումը և, մասնավորապես, աշխատողների թվի կրճատումը նյութապես չեն խրթանվում։ Դեռ ավելին, տնտեսական ռեֆորմի պայմաններում մի շարք գործոններ հակազդում են աշխատուժի տնտեսման վրա։

Հայտնի է, որ նյութական խրախուսման, ինչպես նաև սոցիալ-կուլտուրական միջոցառումների և բնակարանային շինարարության ֆոնդերի մեծությունը, բացի շահույթից հատկացումների նորմատիվից, կախված է նաև աշխատավարձի ֆոնդից։ Որքան մեծ է տվյալ ձեռնարկության աշխատողների թիվը, ուստի և աշխատավարձի ֆոնդը, այնքան մեծ կլինի նյութական խրախուսման ֆոնդը։ Հետևաբար, նյութական խրախուսման ֆոնդի գոյացման գործող կարգի պայմաններում աշխատողների թվի կրճատմամբ ձեռնարկությունները շահագրգռված չեն, որովհետև այն կարող է հանգեցնել աշխատավարձի և խրախուսման ֆոնդերի կրճատմանը։ Նույնը պետք է ասել նաև սոցիալիստական մրցության մեջ առաջնություն շահելու համար տրվող պարգևատրության ֆոնդի վերաբերյալ։

Բացի այդ, ներկայումս արդյունաբերական ձեռնարկություններում ինժեներա-տեխնիկական աշխատողների և ծառայողների աշխատանքի վարձատրության կազմակերպման համար կարևոր նշանակություն ունի տվյալ ձեռնարկության կարգը, որի որոշման չափանիշներից մեկը աշխատողների թիվն է։ Մյուս հավասար պայմաններում (արտադրության տեխնոլոգիա, թողարկված արտադրանքի բարդություն, ժողովրդա-տնտեսական նշանակություն և այլն) աշխատողների թվի մեծությունը պայմանավորում է ձեռնարկության կարգը։ Այս պատճառով էլ ձեռնարկություններում ձգտում են հնարավորին չափ ավելացնել աշխատողների թե՛ պլանային, թե՛ փաստացի թիվը։

Այս գործոնները, բնականաբար, չեն կարող նպաստել աշխատուժի արդյունավետ օգտագործման և տեխնիկական առաջընթացի հետևանքով դրա մի մասի հարաբերաբար դուրս մղման, վերաբաշխման, վերաորակավորման ու օգտագործմանը։ Մինչդեռ արդի էտապում, արտադրության ինտենսիվ զարգացման հետ կապված, անհրաժեշտ է, որ նյութապես խթանվի աշխատողների քիչ թվով արտադրության առավելագույն աճի ապահովումը։ Այս տեսակետից նպատակահարմար է, որ աշխատողների թվի տնտեսումը հանգեցնի նյութական խրախուսման ֆոնդի մեծացմանը։ Այդ նպատակով անհրաժեշտ է անմիջական կապ ստեղծել աշխատանքի արտադրողականության բարձրացման և նյութական խրախուսման ֆոնդի մեծության միջև։ Դա հնարավոր է, եթե շահույթից նշված ֆոնդին հատկացումների նորմատիվը սահմանվի ո՛չ թե իրացման ծավալի (շահույթի) ամբողջ հավելաճով, այլ նրանից, որ ստացվել է աշխատանքի արտադրողականության բարձրացման հաշվին։ Նյութական խրախուսման ֆոնդերի կազմավորման այսպիսի կարգը անմիջականորեն կնպաստի աշխատանքի արտադրողականության արագ բարձրացմանը և արտադրության ինտենսիվ զարգացմանը։

Աշխատուժի արդյունավետ օգտագործմանը զգալիորեն կարող է նպաստել աշխատանքի վարձատրության կազմակերպման և պլանավորման կատարելագործումը, որը նախատեսվում է ՍՄԿԿ XXIV համագումարի դիրեկտիվներով։ Այստեղ կարևոր նշանակություն ունի աշխատանքի նորմավորումը։ Աշ-



խատանքի նորմաները որոշում են որևէ տեսակի արտադրանքի արտադրության կամ տեխնոլոգիական պրոցեսի իրականացման համար ծախսվող կենդանի աշխատանքի չափը։ Դրանք ելակետային տվյալներ են, որոնց միջոցով որոշվում է արտադրանքի աշխատատարությունը և ձեռնարկության աշխատողների թիվը։ Ուրեմն, աշխատանքի նորմաների հիմնավորվածությունից է կախված աշխատողների թվի իրական լինելը։ Սակայն, ներկայումս արդյունաբերության մեջ աշխատանքի նորմավորման բնագավառում կան զգալի թերություններ։ Աշխատանքի նորմաների մեջ գերակշռում են փորձավիճակագրական նորմաները, որոնք սահմանվում են ելնելով նորմավորողի փորձից ու պրակտիկայից և չեն արտահայտում արտադրության կազմակերպման և դրա տեխնիկական զինվածության առկա վիճակը։ Տեխնիկապես հիմնավորված նորմաների տեսակարար կշիռը հանրապետության արդյունաբերության մեջ դեռևս ցածր է և 1969 թ. տվյալներով կազմել է 33, իսկ աշխատանքի նորմաների կատարման միջինը՝ 136,2 տոկոս։ Բարձր է նաև 150 և ավելի տոկոսով նորմա կատարողների տեսակարար կշիռը բանվորների թվում, որը հասնում է մոտ 45 տոկոսի։ Աշխատանքի նորմավորման թերությունների հետևանքով արդյունաբերական ձեռնարկություններում սովորաբար աշխատողների թիվը, որը որոշվում է աշխատանքի նորմաների հիման վրա, գերազանցում է իրական՝ արտադրության զարգացման տվյալ մակարդակին համապատասխանող պահանջին։ Այդ պատճառով ձեռնարկություններում գոյություն ունի աշխատուժի ռեզերվ, որը կարող է օգտագործվել աշխատանքի նորմավորման բարելավման, հատկապես տեխնիկապես հիմնավորված նորմաների ներդրման դեպքում։

Աշխատանքի նորմավորման նշված թերությունները միաժամանակ թուլացնում են աշխատավարձի՝ աշխատանքի արտադրողականության բարձրացմանը խթանող դերը։ Ցածր փորձավիճակագրական նորմաների գերակատարմամբ ապահովելով միջին աշխատավարձի որոշակի մակարդակը, ձեռնարկությունների աշխատողներն ուղիներ չեն որոնում արտադրության ներքին ռեզերվների մոբիլիզացման և օգտագործման, աշխատանքի արտադրողականության հետագա բարձրացման համար։ Ահա թե ինչու ներկայումս խիստ անհրաժեշտ է կատարելագործել աշխատանքի նորմավորումը։

Աշխատուժի արդյունավետ օգտագործման ուղիներից մեկը ՍՄԿԿ Կենտկոմի կողմից հավանության արժանացած Շչոկինոյի քիմիական կոմբինատի աշխատանքի դրական փորձի արմատավորումն է։ Նշված կոմբինատում աշխատավարձի ֆոնդը պլանավորվում է մի քանի տարիների համար՝ կայուն մեծությամբ։ Այն կարող է փոփոխվել արտադրության ընդլայնման կամ տեխնիկական պրոցեսների արմատական փոփոխության դեպքում։ Ձեռնարկությանն իրավունք է վերապահված օգտագործել այդ ֆոնդի ամբողջ տնտեսումը՝ աշխատանքի արտադրողականությունը բարձրացնելու, աշխատողների քիչ թվով արտադրության ծավալը մեծացնելու համար։ Ինչպես հայտնի է, այդ կոմբինատի աշխատանքի մեթոդները ներկայումս արդյունաբերության տարբեր ճյուղերի բազմաթիվ ձեռնարկություններում լայնորեն փորձարկվում են։ Շչոկինոյի քիմիական կոմբինատի աշխատանքի փորձի մասին ՍՄԿԿ Կենտկոմի որոշման մեջ նշված է, որ այն ունի ժողովրդատնտեսական նշանակություն, իսկ արտադրության մեջ դրա ներդրումը հնարավորություն կընձեռի օգտագործելու արտադրանքի թողարկման ավելացման և աշխատանքի արտադրողականության բարձրացման ռեզերվները։

# ԿԱՏԱՐԵԼԱԳՈՐԾԵՆՔ ԱՐԴՅՈՒՆԱԲԵՐԱԿԱՆ ՁԵՌՆԱՐԿՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ԿԱՌԱՎԱՐՄԱՆ ԱՊԱՐԱՏԸ

Խ. Մ. ՌԱՖԱՅԵԼՅԱՆ

*Մեր երկրում, վերջին տարիներս, ժողովրդական տնտեսության պլանավորման և կառավարման գործում նկատելիորեն բարձրացել է հաշվողական տեխնիկայի ու ինֆորմացիոն հաղորդման միջոցների դերը։ Սակայն այս բնագավառում դեռևս շատ անելիքներ ունենք։ Ահա թե ինչու ՍՄԿԿ XXIV համագումարի՝ ՍՍՀՄ ժողովրդական տնտեսության զարգացման իններորդ հնգամյա պլանի դիրեկտիվներում նշվեց. Ժողովրդական տնտեսության պլանավորման գործը և կառավարումը կատարելագործելու նպատակով ապահովել տնտեսագիտական-մաթեմատիկական մեքենաների լայն կիրառումը, էլեկտրահաշվողական և կազմակերպական տեխնիկայի ու կապի միջոցների օգտագործումը։*

*Աշխատելով Երևանի Վ. Ի. Լենինի անվան մետաքսի կոմբինատում որպես մեքենահաշվային կայանի պետ, առաջավոր փորձի փոխանակման նպատակով մոտիկից ուսումնասիրել եմ ինչպես մեր հանրապետության, այնպես էլ երկրի մի շարք արդյունաբերական ձեռնարկությունների կառավարման ոլորտում օգտագործվող կազմակերպական տեխնիկայի արդյունավետության մակարդակը։*

*Կառավարման ապարատի կառուցվածքը կատարելագործելու հարցում զգալի հաջողությունների են հասել Մոսկվայի պետական առանցքակալների, երկրորդ ժամացույցի գործարանները, մանվածքա-գործվածքային ձեռնարկությունների միավորումը, Լենինգրադի օպտիկա-մեխանիկական միավորումը, Կիևի ու Ռիգայի մետաքսի կոմբինատները և բազմաթիվ այլ ձեռնարկություններ։*

*Այսօրվա դրությամբ, կառավարման գործում ամենից ավելի մեքենայացված տեղամասը հաշվապլանային աշխատանքներն են, որոնց տեսակարար կշիռը տնտեսական ինֆորմացիայի մեջ կեսից ավելի է։*

*Հայտնի է, որ էլեկտրոնային մեքենաներով հաշվումները կատարվում են ակնթարթային արագությամբ— մեկ րոպեում մի քանի հարյուր հազար, նույնիսկ միլիոնավոր գործողություն, բայց ծրագրավորման բարդությունն ու սկզբնական ինֆորմացիայի նախապատրաստման համար անհրաժեշտ ժամանակը, սկզբնական փաստաթղթերի նկատմամբ բարձր պահանջները դժվարեցնում են դրանց մասսայական շահագործումը, հատկապես փոքրածավալ ինֆորմացիա մշակելիս։ Եթե նկատի ունենանք նաև դրանց սահմանափակ քանակը, պարզ կլինի, թե ինչու էլեկտրոնային մեքենաներն առայժմ հիմնականում տեղադրվում են հաշվողական կենտրոն կոչվող տեղակայումներում և օգտագործվում են ժողովրդա-տնտեսական նշանակություն ունեցող խոշոր հաշվումների և գիտահետազոտական նպատակների համար։*

*Մոտ ապագայում, երբ վերանան վերը նշված դժվարությունները, շեշտակիորեն կընդլայնվի հաշվա-էլեկտրոնային մեքենաների շահագործման շրջանակները և տնտեսագիտական կիբեռնետիկան էլեկտրոնային իր տեխնիկայով սովորական կդառնա նաև ձեռնարկությունների տնտեսական ինֆորմացիայի մշակման գործում։ ՍՄԿԿ XXIV համագումարի դիրեկտիվներում ասված է. «Իրագործել էլեկտրո-հաշվային մեքենաների սերիական թողարկումը՝ համակցված ինֆորմացիայի ներդրման և դուրս բերման բոլոր ապահովող հարմարանքներով...»։*

*Մեր նպատակն է ՀՍՍՀ արդյունաբերական մի շարք ձեռնարկությունների օրինակով ցույց տալ, թե ինչպես են օգտագործվում եղած հնարավորությունները և ինչ կարելի է անել կառավարման ապարատը կատարելագործելու համար։ Անհրաժեշտ է նշել, որ մեր հանրապետության արդյունաբերական ձեռնարկությունների կառավարման ապարատի վերակառուցումն առայժմ անհրաժեշտ ծավալ չի ստանում։ Դա, առաջին հերթին, կապված է բավարար չափով կազմակերպական տեխնիկա չունենալու և եղածը լիարժեք չօգտագործելու հետ։ Հետևանքը լինում է այն, որ բազմաթիվ միջին ու մանր արդյունաբերական ձեռնարկությունների տնտեսական գործունեությունն արտացոլող ամենօրյա ինֆորմացիան մեծ մասամբ մշակվում է ձեռքով, հնացած մեթոդներով։ Այսպես, ՀՍՍՀ արդյունաբերական ձեռնարկություններից միայն 10 տոկոսն ունեն մեքենա-հաշվային տեղակայումներ, այդ թվում ավելի քան 50-ը՝ մեքենա-հաշվային բյուրոներ՝ հաշվա-ստեղնավոր մեքենաներով, իսկ 6-ը՝ մեքենա-հաշվային կայաններ. դրանք են՝ Հայէլեկտրամեքենաշինական, սարքաշինական գործարանները, Կիրովականի քիմկոմբինատը, կոշիկի «Մասիս» միավորումը, Երևանի Վ. Ի. Լենինի անվան մետաքսի և Լենինականի Մայիսյան ապստամբության անվան տեքստիլ կոմբինատները։ Այս ձեռնարկություններում, բացի հաշվա-ստեղնավոր մեքենաներից, շահագործվում են նաև բարձր արտադրողական հաշվա-պերֆորացիոն մեքենաներ։*

*Որպեսզի հայտնի լինի հաշվային տեղակայումների կազմակերպչական առանձին ձևերի և, հատկապես, շահագործվող մեքենաների արտադրողականության միջև եղած տարբերությունը, նշենք, որ մեքենա-հաշվային բյուրոները հաշվա-ստեղնավոր մեքենաներով հիմնականում կատարում են հաշվապլանային աշխատանքներ, առանց դրանց զգալի վերափոխումների։ Ձեռքի համեմատությամբ, այս մեքենաների վրա աշխատանքի արտադրողականությունը բարձր է 2—4 անգամ։ Մեքենա-հաշվային կայաններում հաշվա-պլանային աշխատանքներից բացի հաշվա-պերֆորացիոն մեքենաներով իրագործվում է արտադրական, ինժեներական, գիտահետազոտական բնույթի բազմաթիվ այլ աշխատանքներ։ Նախկինում ընդունված ձևերն ու մեթոդները հիմնականում վերակառուցվում են մեքենայացման ժամանակակից պահանջներին համապատասխան։ Այստեղ, ձեռքի համեմատությամբ, աշխա-*

տանքի արտադրողականությունը, կախված շահագործման հմտությունից, կարող է բարձր լինել մինչև 10 անգամ։

Մեր հանրապետությունում հաշվային տեղակայումների թիվը համեմատաբար շատ է թեթև արդյունաբերության մինիստրության ձեռնարկություններում։ Եղած 70 ձեռնարկություններից 15-ն ունեն մեքենա-հաշվային բյուրոներ, իսկ 3-ը մեքենա-հաշվային կայաններ։ Ամբողջությամբ վերցրած, կազմակերպական տեխնիկայի օգտագործման միջին մակարդակը մինիստրությունում 60 տոկոսից էլ պակաս է։ Այն դեպքում, երբ նման տեխնիկա ունեցող ձեռնարկություններում մեքենայացվել է ընդհանուր աշխատանքների 25—30 տոկոսը միայն։

Կազմակերպական տեխնիկայի օգտագործման լավ օրինակ են Կիրովականի տրիկոտաժի, Երևանի կաշվի միավորման ձեռնարկությունները, ուր տեղադրված «Ասկոտա—170» մակնիշի բազմա-հաշվիչավոր մեքենաներով կազմվում են աշխատավարձի հետ կապված բոլոր փաստաթղթերը։ Ֆակտուրային մեքենաներով 3—4 անգամ արագացվել են ձեռքի աշխատանքները։ Սակայն Երևանի կարի № 1, տրիկոտաժի № 2 ֆաբրիկաներն անբավարար են օգտվում եղած կազմակերպական տեխնիկայից։ Չորրորդ տարին է, ինչ Լենինականի Մայիսյան ապստամբության անվան տեքստիլ կոմբինատում ստացվել են բարձր արտադրողական հաշվա-պերֆորացիոն մեքենաներ։ Սակայն դրանք չեն օգտագործվում լրիվ կարողությամբ։

Երևանի Վ. Ի. Լենինի անվան մետաքսի կոմբինատը մեր հանրապետության արդյունաբերական խոշոր ձեռնարկություններից մեկն է։ Այստեղ կատարվում են մետաքսաթելի, ոլորման, գործվածքային, ներկման-վերամշակման արտադրապրոցեսներ։ 1959 թ. կոմբինատն աշխատում էր նախնական կարողությունների լրիվ ծանրաբեռնվածությամբ և բաց թողնում 6,8 միլիոն մետր բազմերանգ մետաքսյա գործվածք, որը 1970 թ. հասավ ավելի քան 12 միլիոնի, իններորդ հնգամյակի վերջին կոմբինատը կտա 16 միլիոն մետր գործվածք։ Կոմբինատի արտադրամասերը համալրվել են տեքստիլ արդյունաբերության ժամանակակից տեխնիկայով։ Ներկայումս ձեռնարկության մեկ օրվա տնտեսական ինֆորմացիան գերազանցում է 30 հազարից։ 2500 միայն հիմնական բանվորների արտադրանքի հաշվառման և պլանների կատարման ամենօրյա ցուցանիշները 20 հազարից ավելի են։ Դա կապված է մշակվող գործվածքների բազմազանության հետ։ Պատրաստի արտադրանք է ստացվում (հարթ և ծաղկավոր) 40-ից ավելի արտիկուլներով, որակի 5 առանձին տեսակներով, չհաշված անմշակ գործվածքներն ու բազմաթիվ կիսաֆաբրիկատները։ Հիմնական բանվորներին մի շարք ցուցանիշների համար (նորմայի կատարում, արտադրանքի որակի, հումքի տնտեսում և այլն) վճարվում է նաև պարգևատրում։ Զգալի չափով ինֆորմացիա է կուտակվում նաև հումքի, հիմնական և օժանդակ նյութերի, անմշակ գործվածքների, պատրաստի արտադրանքի, արտադրամասերում և պահեստներում կատարվող տեղաշարժի հաշվառումից։ Ստացվող մեծաքանակ ինֆորմացիայի մշակումը, առանց կազմակերպական տեխնիկայի, անհնար կլիներ կամ կպահանջեր մի քանի անգամ ավելացնել եղած հաշվա-պլանային աշխատողների հաստիքներ։ Ներկայումս կոմբինատի տնտեսական ինֆորմացիայի գերակշռող մեծ մասը մշակվում է կազմակերպական տեխնիկայի միջոցներով, զգալի արդյունավետությամբ։



1963 թ. կոմբինատում ստացվեց և նույն տարվա վերջին շահագործման հանձնվեցին երկու կոմպլեկտ հաշվա-պերֆորացիոն մեքենաներ։ Մինչ այդ եղած հաշվա-ստեղնավոր և ստացված հաշվա-պերֆորացիոն մեքենաների բազայի վրա կազմակերպվեց մեքենա-հաշվային կայան։ Կազմակերպական տեխնիկայով հիմնականում մեքենայացվեց տեքստիլում ամենաաշխատատարը՝ արտադրանքի և աշխատավարձի հաշվառումը, պատրաստի արտադրանքի շարժը կոմբինատում և դրա իրացումը։

Կոմբինատում կազմակերպական տեխնիկայի ներդրումից ստացված տնտեսական արդյունավետությունը պարզելու համար բավական է համեմատել տեխնիկայի հետ կապված ծախսերը և դրանցից ստացված արդյունքը կամ մեքենայական մշակման մեջ ընդգրկված տեղամասերի աշխատանքների մակարդակը, մինչ մեքենայացումը և դրանից հետո։

Այսպես, 1959 թ. (մինչ մեքենայացումը) կոմբինատում աշխատում էին 2540 մարդ, տեղադրված էին 426 ջուլհակահաստոց, թողարկվեց 6,8 միլիոն մետր մետաքսյա գործվածք։ Նույն թվականին կոմբինատի կառավարման անձնակազմը 236 հոգի էր, որից 73-ը հաշվա-պլանային աշխատողներ։ Ձեռնարկությունում հաշվա-պլանային աշխատանքների մեջ ամենից աշխատատարը բանվորների արտադրանքի և աշխատավարձի հաշվառումն է, որը վարում էին 41 մարդ։

Կոմբինատի արտադրական ծավալը տարեցտարի աճեց։ 1970 թվականին ջուլհակահաստոցների թիվը հասավ 1030-ի, ձեռնարկությունը թողարկեց ավելի քան 12 միլիոն մետր գործվածք։ Ընդհանուր աշխատողների թիվը հասավ 3100-ի։ Ինչպես տեսնում ենք, ջուլհակահաստոցների թիվը ավելացել է 241 տոկոսով, արտադրանքի թողարկումը գրեթե կրկնապատկվել է։ Կազմակերպական տեխնիկայի օգտագործման շնորհիվ հաշվա-պլանային աշխատողների թիվը լրիվ մեքենայավորված բանվորների արտադրանքի և աշխատավարձի հաշվառման տեղամասում ավելացել է 115, մասնակի մեքենայացված տեղամասում՝ 181 տոկոսով։ Այսպիսով, միայն լրիվ մեքենայացված տեղամասում խնայվել է 33 հաստիքային միավոր, որի տարեկան աշխատավարձի տնտեսումը (80 ռ. միջին աշխատավարձով) կկազմի ավելի քան 30 հազար ռուբլի։

Կոմբինատում ներկայումս գործող կազմակերպական տեխնիկան ընդգրկում է ավելի քան 40 մեքենա։ Այդ թվում երկու կոմպլեկտ հաշվա-պերֆորացիոն, 12 հաշվարկային, 10 գումարող, 2 ֆակտուրային, 3 հաշվապահական մեքենաներ, որոնց սկզբնական արժեքը կազմում է մոտ 50 հազար ռուբլի։ Այդ գումարը վերաստացվեց մեկուկես տարվանից մի քիչ ավելի ժամանակում։ Սակայն դրանով չի սահմանափակվում մեքենայացման արդյունավետությունը։ Բացի արտադրանքի և աշխատավարձի հաշվառումից, մեքենայացվել է արտադրանքի իրացման գործը։ Վերահսկվում ու հանրագումարի են բերվում ներկման-վերամշակման արտադրության օրվա և ամսվա ամփոփումները։ 1970 թ. մեքենայական մշակման մեջ ընդգրկվեց պատրաստի արտադրանքի պահեստի, 2-րդ և 3-րդ գործվածքային արտադրամասերի ամենօրյա արտադրանքի հաշվառումը։ Ամեն օր մշակվում, ենթավարպետներին է հաղորդվում նախորդ օրվա և աճողաբար ամսի սկզբի իրենց պլանների կատարման քանակի և որակի ցուցանիշները։

Արդյունավետության համար կարևոր հանգամանքներ են նաև կատար-

վող աշխատանքների որակի և կատարման ժամկետների հարցերը: Ձեռքի աշխատանքի պայմաններում սխալների պատճառով կատարվում էին մի քանի տասնյակ վերահաշվարկներ, իսկ այժմ նվազագույնի է հասել: Լինում են ամիսներ, երբ բոլորովին վերահաշվարկ չի կատարվում: Մինչև մեքենայացումը, սահմանափակ ժամկետների պատճառով, բանվորների արտադրանքը հաշվվում էր մինչև ամսի 26-ը. չորս օրվա արտադրանքը հաջորդաբար փոխադրվում էր մյուս ամսին: Հաշվետու ամսի պլանային և փաստացի տվյալների միջև ստեղծվում էր անհամամասնություն: Մեքենայացման պայմաններում արտադրանքը հաշվվում է լրիվ ամսի համար, 4 օրով խնայվել է ժամանակը: Հաշվետվությունները ներկայացվում են առանց ուշացումների:

Կազմակերպական տեխնիկայի արդյունավետության բարձրացման կարևոր լծակներից մեկը մեքենա-հաշվային կայանը տնտհաշվարկի փոխադրելն է: Մեր կայանը տնտհաշվարկի է փոխադրվել 1968 թվականից: Ճիշտ է, այն լիարժեք տնտհաշվարկով չի աշխատում, չունի ինքնուրույն հաշվեկշիռ, սակայն հայտնի է առանձին բաժինների և արտադրամասերի համար կատարվող աշխատանքների ծավալը՝ նորմա-հերթով, կայանի անձնակազմի թիվը, աշխատավարձի ընդհանուր ֆոնդը: Կազմվում է նորմա-հերթի պլանային և փաստացի ինքնարժեքը: Փաստացի ծախսերի հիման վրա հաշվվում է վնասը և օգուտը: Տնտհաշվարկի ամրապնդմանը նպաստում է հիմնական օպերատորներին գործավարձային ձևով աշխատավարձի վճարումը: 19 օպերատորներից 10-ը գործավարձով են աշխատում, որը խթանում է նաև օժանդակ աշխատանքների արագ կատարմանը: Գործավարձի գնացուցակի համար հիմք են հանդիսանում ՍՍՀՄ կենտվիճվարչության միասնական նորմաները: Օպերատորներից շատերը տիրապետում են 2-ից ավելի մասնագիտությունների և անհրաժեշտության դեպքում՝ փոխարինում միմյանց:

Արդյունաբերական ձեռնարկությունների կառավարման և հաշվա-պլանային աշխատանքներում կազմակերպչական տեխնիկայի առավելության պայմաններում էլ տարիների ընթացքում հին ձևերին ու մեթոդներին սովոր որոշ աշխատողներ դժվարությամբ են հաշտվում նոր տեխնիկայի ու առաջավոր մեթոդների արմատավորման հետ:

Այժմ, երբ ՍՄԿԿ XXIV համագումարը մեր կարևորագույն խնդիրներից մեկն է համարում՝ ստեղծել պլանավորման ու կառավարման տնտեսական ինֆորմացիայի հաշվառման և մշակման ավտոմատ սիստեմների ծավալուն ցանց, տնտեսավարները պետք է փոխեն իրենց վերաբերմունքը այդ հարցի լուծման նկատմամբ:

Ներկայումս արդյունաբերական ձեռնարկությունների կառավարման մեջ տնտեսական ինֆորմացիայի կեսից ավելին բաժին է ընկնում հաշվա-պլանային աշխատանքներին, որտեղ և ամենից շատ է զգացվում վերակառուցման կարիքը: Այս տեղամասում վերակառուցման հաջողությունը, մեր կարծիքով, կարող են ապահովել 3 կարևոր միջոցներ: Առաջինը՝ հաշվա-պլանային աշխատանքներում ժամանակակից ձևերի ու մեթոդների արմատավորումն է, երկրորդը՝ աշխատանքների կենտրոնացումը, երրորդը՝ կազմակերպական տեխնիկայի լիարժեք օգտագործումը:

Տնտեսական խթանման նոր պահանջներից ելնելով, հաշվա-պլանային աշխատանքներում պարտադիր է ձեռնարկության ո՛չ միայն տեղամասերի, այլև առանձին վերցրած կոլեկտիվի յուրաքանչյուր անդամի առաջադրանքի



կատարման ստուգումը և դրանց համապատասխան խրախուսման ֆոնդերի անսխալ բաշխումը: Արդյունաբերական ձեռնարկություններում վերը նշված աշխատանքները կատարվում են ամենաբազմազան մեթոդներով և ձևերով: Սովետական Միության բազմաթիվ գործարաններում վաղուց արմատավորվել են արտադրական ծախսերի և արտադրանքի ինքնարժեքի հաշվառման նորմատիվային, նյութական արժեքների հաշվառման մնացորդային մեթոդները, հաշվապահական հաշվառման օրագրա-օրդերային ձևը և այլն, որոնք զգալի արդյունք են տալիս: Մինչդեռ, մեր հանրապետության շատ ձեռնարկություններ չեն հրաժարվել հաշվառման մեմորիալ-օրդերային ձևից, նյութերի համար շրջանառության տեղագրեր կազմելուց: Կան գլխավոր հաշվապահներ, որոնք չեն խորանում օրագրա-օրդերային ձևի առավելությունների մեջ և որպես վերադասից պարտադրված ձև մասնակիորեն ընդունում են այն, գործածության մեջ թողնելով նաև նախկինը: Նրանք ձգտում են ապահովել հաշվապահական հաշվառման կրկնակի գրանցման պահանջները՝ ժամանակին հաշվեկշիռ ստանալու նպատակով: Այնինչ, հաշվեկշռի տվյալները, հատկապես նյութական արժեքները, ճշտվում են ուշացումներով, կապված նրա անալիտիկ հաշվառման և ուղղումների հետ: Իսկ ուղղումներն արտացոլվում են միայն հաջորդ հաշվետվություններում:

Ժամանակն է, որպեսզի այս գործում հնին կառչող ընկերները փոխեն իրենց վերաբերմունքը, ապարեն տան նորին, առաջադիմականին: Չէ՛ որ հաշվապահական հաշվառման օրագրա-օրդերային ձևը, նյութերի հաշվառման մնացորդային մեթոդը զգալի չափով կրճատում են այդ աշխատանքների վրա ծախսվող ժամանակը, հաշվետվությունները ստացվում են ավելի հավաստի տվյալներով, բացառում են մեմորիալ օրդերների, գրանցման օժանդակ մատյանների, շրջանառության տեղեկագրերի օգտագործումը: Հաշվետու ամսին ապահովվում է աշխատանքների հավասարաչափ բաշխումը բոլոր օրերի վրա: Սինթետիկ և անալիտիկ միաժամանակ հաշվառումը բացառում է սխալների հնարավորությունը և միասնական է ժողովրդական տնտեսության բազմաթիվ ճյուղերի համար:

Կազմակերպչական նոր մեթոդի կիրառման առավելության մի օրինակ ևս: Աշխատանքային օրվա հաշվետախտակի մեջ դեռ տիրապետող է աշխատած օրերի կամ ժամերի մասին նշում կատարելու հնացած մեթոդը (նշումներ են կատարվում բոլոր ներկա և բացակա օրերի համար): Նորով նախատեսվում է նշել և հաշվել միայն բացակաները, իսկ ներկան ստանալ օրացուցային ժամանակից հանելով բացական: Այս աննշան թվացող միջոցառման շնորհիվ կիսով չափ կրճատվում են հաշվառուի հաստիքները: Միայն մետաքսի կոմբինատում այդ գործով զբաղվում են 14 մարդ, 7-ի փոխարեն:

Անդրադառնալով կառավարման ապարատի կենտրոնացմանը, պետք է նշել, որ այդ հարցը լուծվում է տարբեր եղանակներով: Ներկայումս լայն տարածում է ստացել և զգալի արդյունավետ է արտադրական միավորումների կազմակերպումը:

Առանձին տեղերում արդյունաբերական ձեռնարկությունների ներսում հաշվա-պլանային աշխատանքների ծառայությունները կազմակերպվում են առանց արտադրամասային բաժանումների, կենտրոնացնելով այդպիսիք կառավարման կենտրոնական ապարատում:

Գործնականում ապացուցվում է, որ կազմակերպական տեխնիկայով հա-

մալրված խոշոր տեղակայումների արդյունավետությունը, փոքրերի համեմատությամբ, զգալի չափով մեծ է։ Սակայն մեքենայացման գործով զբաղվող որոշ աշխատողներ ձգտում են միայն ավելացնել այդ տեղակայումների քանակը՝ պլան կատարելու միտումով, իսկ եղածների արդյունավետությունը բարձրացնելու հարցերը մոռացվում են։ Միայն Վ. Ի. Լենինի անվան Հայէլեկտրամեքենաշինական գործարանն ունի 4 կոմպլեկտ հաշվա-պերֆորացիոն մեքենաներ, իսկ մյուս 5 ձեռնարկությունները երկուական, որի պայմաններում ամսվա վերջին դժվար է ապահովել կուտակված ինֆորմացիայի ժամանակին մշակումը կամ մեքենայացման մեջ նոր աշխատանքների ընդգրկումը։

Երևանի Շահումյանի անվան շրջանում գործում են մետաքսի կոմբինատի, տրիկոտաժի № 1, № 2 ֆաբրիկաների մեքենա-հաշվային տեղակայումները՝ իրենց սպասարկող և ղեկավար անձնակազմով։ Եթե դրանք միացվեն և համալրվեն հաշվա-պերֆորացիոն նոր մեքենաներով, արդյունավետությունը զգալի չափով կբարձրանա։ Շատ տեղերում հաշվա-ստեղնավոր մեքենաները հանձնվում են անձնական օգտագործման, առանձին հաշվապահների, պլանարարների և այլ աշխատողների։ Օգտագործման այս եղանակը զգալի չափով նվազեցնում է տեխնիկայի արդյունավետությունը։ Ամենալավագույն դեպքում այդ մեքենաներն օրվա ընթացքում օգտագործվում են 1—2 ժամ, մյուս ժամերին պարապուրդ են տալիս։ Ամենակատարյալ տեխնիկան անգամ անգործության կմատնվի, եթե չստեղծվեն աշխատանքի պայմաններ։

Կազմակերպական տեխնիկայի օգտագործման բարձր արդյունավետությունը կարելի է ապահովել տեխնիկայի կենտրոնացման և կոմպլեքսային օգտագործման շնորհիվ միայն։ Այն նախատեսում է, սկսած սկզբնական փաստաթղթերից մինչև ամփոփ հաշվետվությունները, կատարել կազմակերպական տեխնիկայի օգնությամբ։

Համակցման եղանակով էլեկտրոնային և հաշվա-պերֆորացիոն մեքենաների աշխատատարությունը, ձեռքի համեմատությամբ, պակաս է ավելի քան 10 անգամ, իսկ էլեկտրոնային մեքենաներինը՝ 100 և ավելի շատ. վերջինում ինքնարժեքը համեմատաբար բարձր է, կապված մեքենաների բարձր արժեքի և աշխատանքների բարդության հետ։

Ձեռնարկության կառավարման աշխատանքներում հաշվա-ստեղնավոր և հաշվա-պերֆորացիոն մեքենաների ներդրումը նպաստավոր պայմաններ են ստեղծում բարձր արտադրողական էլեկտրոնային մեքենաների համար։

Արդյունաբերական ձեռնարկությունների կառավարման աշխատանքների մեքենայացման և նոր մեթոդների ներդրման հաջողությունը, ամենից առաջ, պահանջում է առանձին մինիստրություններում այդ գործով ունենալ միասնական մասնագետ ղեկավար։ Ներկա պայմաններում, երբ այդ հարցերով զբաղվում են մինիստրությունների գլխավոր հաշվապահները, մեր կարծիքով, իրեն չի արդարացնում։ Պետք է ընդլայնել մեքենա-հաշվային տեղակայումների ցանցը, եղածները համալրելով էլեկտրոնային կցորդներ ունեցող հաշվա-պերֆորացիոն մեքենաներով։

Հանրապետության կենտրոնական վիճակագրական վարչության միջոցով անհրաժեշտ է բարելավել կազմակերպական տեխնիկայի պարբերական պարտադիր վերանորոգումները, ապահովել տեղերին անհրաժեշտ պահեստամասերով։

---

Հոբելյանական ՏԱՐԵԹՎԵՐ

Լենինյան ուղիով
1971թ. №4

# ԱՂԱՍԻ ԽԱՆՋՅԱՆ

(Ծննդյան 70-ամյակի առթիվ)

Ջ. Ս. ԿԻՐԱԿՈՍՅԱՆ



Լրացավ Հայաստանի կոմունիստական կուսակցության ականավոր գործիչ, հայ ժողովրդի սիրված զավակ Աղասի Ղևոնդի Խանջյանի ծննդյան 70-ամյակը:

Աղասի Խանջյանն այն փոքրաթիվ մարդկանցից էր, որոնց վիճակվել է իրավի խոր հետք թողնել մեր ժողովրդի վերընթաց երթում, Հայաստանի կոմունիստական կուսակցության պատմության էջերում: Հայ իրականության մեջ նա Ստ. Շահումյանի, Ալ. Մյասնիկյանի, Ս. Լուկաշինի գործի արժանավոր շարունակողն էր, Հայաստանում սոցիալիզմի կառուցման մեջ մեծ ավանդ ներդրած ղեկավար կուսակցական գործիչ: Այսօր մի անգամ ևս մեր հայացքի առջև վերակենդանանում է կոմունիզմի գաղափարներին անսահմանորեն նվիրված մեծ հայրենասերի և ինտերնացիոնալիստի բյուրեղյա կերպարը, կերպարն այն մարդու, որն իր կարճատև, բայց հույժ արգասալի կյանքը նվիրաբերեց նոր հասարակարգի կառուցման դժվարին պայքարին:

Աղասի Խանջյանը ծնվել է 1901 թ. հունվարի 30-ին, Արևմտյան Հայաս-

տանի Վան քաղաքում, ուսուցչի ընտանիքում: Հայրենի քաղաքում ուսանելիս պատանի Աղասին իրեն դրսևորել է իբրև ուսումնատենչ և ակնբախ ունակություններով օժտված:

Տակավին 14 տարեկան էր նա, երբ առաջին համաշխարհային իմպերիալիստական պատերազմի որոտը հասավ հեռավոր Վան, իր հետ բերելով մահ և ավերածություն: Վանի հայությունն առաջիններից էր, որ զգաց երիտթուրքական կառավարողների հարվածները, առաջինը դիմագրավեց նրանց հայասպան քաղաքականությանը և, իր պաշտպանական սխրալի դիմադրությունից հետո ապաստան գտավ Կովկասում, ռուսական զենքի ու իշխանության հովանու ներքո: Հայրենի հողից պոկված, նահանջի ու գաղթի ճանապարհը բռնած տասնյակ հազարավորների մեջ էր նաև խանջյանների ընտանիքը:

Ինքնին հասկանալի է, որ զգայուն պատանի Աղասին իր հասակակիցների հետ միասին խոր ցավով վերապրեց իմպերիալիստական այդ սպանդի ազգայնամոլ քաղաքականության դժնի հետևանքները, հարազատ ժողովրդի ողբերգական և անօգնական վիճակը: Բնական է, որ ուշիմ և մարդամոտ այս պատանին ջանալու էր սպառիչ պատասխան գտնել իրեն մտատանջող այն հարցին, թե ով է հանցավոր հարազատ ժողովրդի ու հայրենի երկրի այդ աղետավոր կացության համար: Ինչո՞ւ հայությունը ոչնչանում ու լքում է իր դարավոր հայրենին: Մի՞թե չկան ուժեր, որ կորավից լինեն թշվառ գաղթականներին, ճանապարհներին մեռնող հազարավոր մանուկներին ու վիրավոր կառամյալներին: Աղասին ձգնում էր պատասխան գտնել այդ այրող հարցերին: Ահա թե ինչու հետագայում նա գրում էր. «Այդ փախուստի և գաղթականների կյանքի դժվարին ու սարսափելի պայմանները խոր տպավորություն թողին ինձ վրա: Այդ կապակցությամբ ես շատ էի մտածում պատերազմի, նրա պատճառների ու հանցագործների մասին»:

Եվ ահա, թուրքական յաթաղանից մազապուրծ գաղթական հոծ զանգվածների հետ միասին, Երևանում հանգրվանեց Խանջյանների ընտանիքը, ճաշակելով անօթևանության, քաղցի ու համաճարակների դառնությունները:

Շուտով Աղասին ուսումը շարունակեց Երևանի թեմական դպրոցում, այնուհետև Էջմիածնի ճեմարանում, աշխատեց տպարանում, կապեր հաստատեց ծխախոտագործ սոցիալ-դեմոկրատ բանվորների հետ: Նրա կյանքում սկսվում է քաղաքական արագ հասունացման մի շրջան: Նա իր բախտը կապում է հեղափոխական շարժման հետ: 1917 թ. փետրվարյան հեղափոխության, ցարի տապալման լուրը կայծակի արագությամբ տարածվում է երկրով մեկ, ազատության համար պայքարի հանելով նորանոր զանգվածների: Այդ պահին էլ Աղասի Խանջյանը մտնում է տեղական սոցիալ-դեմոկրատական կազմակերպության շարքերը, փինվորագրվում նոր հասարակարգի համար մարտնչողների բանակին:

Նա մխրճվում է վառվռուն երիտասարդների շրջանը, սեր ու հեղինակություն նվաճում, դառնալով երիտասարդական հեղափոխական շարժման ղեկավարներից մեկը: 1917 թ. գարնանը Երևանի բոլշևիկներն ակտիվ քայլերի էին դիմել երիտասարդությանը դաշնակցության ազդեցությունից կտրելու, լենինյան գաղափարները պրոպագանդելու, աշխատավորությանը ճիշտ կողմնորոշելու նպատակով: Առաջին շարքերում էր Աղասին: Իր մարտական ընկերներ Ղուկաս Ղուկասյանի, Արմենակ Բուդաղյանի և մյուսների հետ, բոլշևիկների



ղեկավարությամբ Երևանում կազմակերպում է երիտասարդ մարքսիստների ինտերնացիոնալիստական խմբակ:

Հետագա տարիներին նա պատեհ առիթներով քանիցս հիշատակել է, որ թեմական դպրոցի և առհասարակ Երևանի երիտասարդության հոգևոր կյանքի վրա անջնջելի տպավորություն է գործել բոլշևիկյան կուսակցության ականավոր տեսաբան-հրապարակախոս Արշավիր Մելիքյանը, որն իր հուժկու տրամաբանությամբ, հռետորական հմայքով և արծարծվող գաղափարների ճշմարտացիությամբ գերում էր ունկնդիրներին ու տառապող երիտասարդներին: Այդ բարերար ազդեցությունը, որն ունեցել է Ա. Մելիքյանը սպարտակյանների վրա, երիտասարդ բոլշևիկների կողմից մեր մամուլի էջերում բազմիցս հավաստված է:

«1917-ին մենք կազմակերպվեցինք երիտասարդ մարքսիստ-ինտերնացիոնալիստների միություն տեղական բջջի իրավունքներով»,— հիշում է իր ինքնակենսագրականում Աղասի Խանջյանը: Այդ միության գործունեության գլխավոր նպատակն էր երիտասարդության հոգում սերմանել սոցիալիստական գաղափարներ, նրանց դաստիարակել կոմունիստական ոգով: Ուշագրավ է, որ 16—17-ամյա պատանին 1917 թ. ապրիլին հանդես է գալիս Երևանի աշակերտների համաքաղաքային ժողովում միանգամայն կազմակերպված, քաղաքականապես նպատակասլաց ելույթով, պայքարի դրոշ պարզելով աշակերտության շրջանում՝ ընդդեմ դաշնակցության: Այդ ելույթի բովանդակությունը ամփոփված է *Աշակերտական կյանքը և դիմակավորված գործիչները Երևանում* հոդվածում, որը լույս է տեսել «Նոր սերունդ» թերթի 1917 թ. մայիսի 1-ի համարում:

Այս հոդվածն ավարտվում էր այն լավատեսական համոզմամբ, որ հայ աշակերտությունը մոտ ապագայում գիտակցության գալով, կճանաչի «թորոսյաններին» (իմա դաշնակցականներին), դուրս կգա նրանց ազդեցության ոլորտից և կգնա այն ճանապարհով, որը տանում է դեպի բոլոր ազգերի համագործակցությունն ու եղբայրությունը:

Անդրադառնալով սպարտակյանների հեղափոխական ընդհատակյա գործունեության գնահատմանը, Խանջյանը հատկապես ընդգծել է, որ իրենց կոմունիստական աշխարհայացքի կազմավորման և քաղաքական կոփվածության առումով, լուրջ նշանակություն են ունեցել մարքսիստական բանախոսությունները ու բանավեճերը, կուսակցական կազմակերպության մարտական հանձնարարությունների անթերի կատարումը (տե՛ս «Սպարտակ» ժողովածու, Երևան, 1935): Ի դեպ, այստեղ հարկ է նշել, որ երիտասարդ սպարտակյանները հակառակորդների դեմ մղած պայքարում իրոք ձեռք էին բերել գրչի ու մտքի ակնբախ սրություն և գաղափարների կատարյալ հստակություն:

1918—1919 թվականները ծանր տարիներ էին Հայաստանի աշխատավորության համար: Զանգվածային սովը, թշվառությունը հասել էին գագաթնակետին: Պատերազմի, կոտորածների հետևանքները ո՛չ միայն չէին վերացվել, այլև դաշնակների տիրապետության օրոք ավելի ողբերգական բնույթ էին ստացել: Ահա այս դժնի պայմաններում ժողովրդի փրկության իրական ելքի՝ սովետական իշխանություն հաստատելու ուղու վրա հաստատապես կանգնած էր Աղասի Խանջյանը: Ղուկաս Ղուկասյանի, Արմենակ Բուդաղյանի հետ միասին, նա հիմնադիրն էր Երևանի երիտասարդ կոմունիստների «Սպարտակ» կազ-

մակերպության: Նրանց ջանքերով 1919 թ. մայիսին լույս է տեսնում «Սպարտակ» անլեգալ թերթի առաջին համարը:

Այս թերթում հրապարակած իր *Ինտերնացիոնալի մեծ տոնը* հոդվածում նա, իիրավի, համարձակ, համոզիչ խոսք էր ասում աշխատավոր ժողովրդին: «Եվ այսօր, երիտասարդ ու կենսունակ աշխատանքի և կառամյալ կապիտալի միջազգային պայքարի այս նշանավոր պահին, երբ կրկին դուրս է գալիս միջազգային հեղափոխական պրոլետարիատը տոնելու մայիսը, նրա դրոշակների վրա պարզորոշ գրված է.

Կորչի՛ կապիտալի տիրապետությունը,

Կեցցե՛ աշխատանքի գերիշխանությունը:

Կեցցե՛ սոցիալիստական հեղափոխությունը»:

Սպարտակյաններն ընթանալով բոլշևիկյան կուսակցության ղեկավարությամբ, իրենց մարտական գործունեությամբ ու պայքարով լուսավորում էին Հայաստանի աշխատավորության ազգային ու դասակարգային ազատագրման միակ ճանապարհը, Ռուսաստանի հաղթական պրոլետարիատին միանալու հեղափոխական ուղին:

1919 թ. սեպտեմբերին Աղասին գտնվում էր բանտում, երբ Բաքվում տեղի ունեցած Անդրկովկասի երիտասարդական հեղափոխական կազմակերպությունների առաջին անլեգալ կոնֆերանսում նրան ընտրեցին երիտասարդական կազմակերպությունների Անդրկովկասյան բյուրոյի անդամ:

1920 թվականի հունվարին Հայաստանի կոմունիստական կազմակերպությունների առաջին կոնֆերանսում նա հանդես եկավ «Սպարտակ» կազմակերպության գործունեության մասին զեկուցմամբ: Այս շրջանում Աղասին Սովետական Ռուսաստանում հաղթանակած սոցիալիստական գաղափարների անխոնջ պրոպագանդիստն էր, անձնուրացաբար լծվել էր Հայաստանում սովետական կարգերի հաստատման գործին:

Եկավ 1920 թվականի փոթորկոտ մայիսը: Ժողովուրդը ոտքի էր ելել՝ թոթափելու սովի ու թշվառության, անարխիայի և մաուզերիզմի տիրապետությունը: Երևանի աշխատավորության մայիսմեկյան ցույցերի առաջին շարքերում էր Աղասի Խանջյանը, երիտասարդության հակադաշնակցական ելույթների կազմակերպիչներից մեկը: Դժբախտաբար Հայաստանում սովետական իշխանության հաստատումն առժամանակ հետաձգվեց: Դաշնակցական իշխանության հետապնդումների ծանր պայմաններում, 1920 թ. ամռան ամիսներին, Աղասի Խանջյանը գլխավորում էր Երևանի կոմունիստների գործունեությունը, նրանց ջանքերը միավորում առաջիկա նոր մարտերի համար: Օգոստոսին նա ձերբակալվում է: 1920 թ. հոկտեմբերի 28-ին Երևանի Արտակարգ դատարանն իր դատաստանական ատյանում կայացրեց հետևյալ որոշումը.

«Գտնելով ապացուցված Հայաստանի կոմունիստական կոմիտեի անդամ-քարտուղար Աղասի Խանջյանի հակապետական գործունեությունը, դատապարտել 10 տարվա տաժանակիր աշխատանքի»:

1920 թվականի հոկտեմբերին Ռուսաստանի կոմունիստական (բոլշևիկների) կուսակցության Կենտկոմի կավմբյուրոն, քննության առնելով Հայաստանի կոմունիստական կուսակցության Կենտկոմի կազմը, բանտում գտնվող Աղասի Խանջյանին հաստատեց որպես Հայաստանի կոմունիստական (բոլշևիկների)



կուսակցության Կենտկոմի անդամ: Դաշնակցական բանտից նա ազատվեց սովետական իշխանության հաստատման շնորհիվ:

1920 թվականի դեկտեմբերի սկզբից մինչև 1921 թվականի փետրվարը Աղասի Խանջյանը վարում էր մեր կուսակցության Երևանի քաղաքային կոմիտեի քարտուղարի պաշտոնը, հանդիսանում ՀԿԿ Կենտկոմի բյուրոյի անդամ, երիտասարդական ավյունով գործնական մասնակցություն ցուցաբերելով սովետական իշխանության կազմավորմանն ու ամրապնդմանը:

Դաշնակների փետրվարյան արկածախնդրության օրերին նա պայքարի առաջին գծում էր, իր ողջ եռանդը, կազմակերպչական ձիրքը նվիրաբերելով սովետական կարգերի վերականգնման, թշնամական ուժերի վերջնական ջախջախման գործին:

Սովետական, վերածնվող նոր Հայաստանին առաջին հերթին գործիչներ էին պետք, կրթված, բանիմաց մարդիկ: Եվ ահա, Աղասի Խանջյանը մեկնում է Մոսկվա՝ ուսանելու Սվերդլովի անվան կոմունիստական համալսարանում: Սակայն այստեղ նրան չվիճակվեց ուսումը շարունակել մինչև վերջ: 1922 թ. նոյեմբերի 21-ին կուսակցությունը նրան աշխատանքի գործուղեց Լենինգրադ:

1922-ից մինչև 1928 թվականը նա Լենինգրադում վարում էր կուսակցական պաշտոններ Վիբորգյան շրջկոմում, ապա Մոսկովյան-Նարվյան շրջկոմում, որպես կազմակերպչական բաժնի վարիչ և հանդիսանում էր մարզային կուսակցական կոմիտեի անդամ:

Լենինգրադյան գործունեության ժամանակաշրջանը ուսման հարուստ դպրոց էր Խանջյանի համար: Թրծվելով հեղափոխական պրոլետարիատի բովում, նա ձեռք բերեց կուսակցական-կազմակերպչական և պրոպագանդիստական աշխատանքի նախանձելի փորձ, եռանդուն գործունեություն ծավալեց տրոցկիզմի և տրոցկիստական-զինովևական բլոկի դեմ՝ հանուն կուսակցության շարքերի լենինյան միասնության: Այստեղ Աղասի Խանջյանն իրեն դրսևորեց որպես բանվորական մասսաների հիանալի կազմակերպիչ, կուսակցական-քաղաքական անձնուրաց աշխատող:

Թերթելով «Ленинградская правда» թերթում, կենտրոնական մի շարք ամսագրերում տպված նրա հոդվածները, զեկուցումների տեքստերը, ակնբախ է դառնում հանուն նոր կյանքի մղվող պայքարի այն փոթորկոտ մթնոլորտը, որի մեջ ապրում և գործում էր Աղասի Խանջյանը: Բազմաթիվ փաստեր վկայում են այն մեծ հարգանքը, որ նա վայելել է իր աշխատած կուսակցական կազմակերպություններում, աշխատավորական շրջաններում: Նրան ջերմ սիրով են հիշում լենինգրադյան ժամանակակիցները: «Բյուրեղյա մաքրության մարդ էր Աղասի Ղևոնդովիչը: Ժողովրդի երջանության համար մաքառած այդպիսի մարտիկների մասին պետք է իմանան սերունդները»,— գրում է լենինգրադցի հին բոլշևիկ Իգնատ Իվանովիչ Նիկիտինը:

Պատահական չէ, որ կուսակցության Լենինգրադի մարզկոմը դժվարությամբ համաձայնեց Խանջյանին աշխատանքի տեղափոխելու Հայաստան: 1928 թվականին կուսակցությունն Աղասի Խանջյանին գործուղում է աշխատանքի՝ Հայաստան: Սկզբում նա ընտրվում է Հայաստանի կոմունիստական կուսակցության Կենտկոմի երկրորդ, ապա՝ 1930 թվականի մայիսին, երբ նա ընդամենը 29 տարեկան էր՝ առաջին քարտուղար:

Այդ ժամանակահատվածը մեր երկրի կյանքում արմատական տեղաշարժե-

րի, սոցիալիստական շինարարության հուժկու ծավալման տարիներ էին. ինդուստրացում, առաջին, հետո երկրորդ հնգամյակ, գյուղատնտեսության կոլեկտիվացում, տևական և անողոք պայքար կուսակցական շարքերի միասնության համար: Հիրավի այդ մի դժվարին ժամանակաշրջան էր: Ինչպես ամբողջ Միությունում, այնպես և Հայաստանում, հիմնովին վերափոխվում էր կյանքը, կիրառվում էին նոր չափանիշներ, ստեղծվում էր նոր հոգեբանություն, ծագում էին նոր խնդիրներ: Անցյալի գիրկն էր անցնում որբերի և գաղթականների, սովի ու համաճարակի, ցնցոտիների Հայաստանը, ասպարեզ բացելով լույսի, կուլտուրական ծաղկման, նոր կյանքի առաջ:

Սոցիալիզմի նյութա-տեխնիկական բազան Հայաստանում ստեղծվում էր երեկվա ավերակների վրա: Բազմաթիվ էին ու դժվարին վերափոխությունների պրոբլեմները: Կուսակցական կազմակերպություններից ուժերի գերլարում էր պահանջվում:

Այն տարիներին տակավին ուժեղ էին հին աշխարհի հոգեբանության, դասակարգային թշնամու ոտնձգությունների երևույթները: Կոմունիստներին սպանում էին բանդիտները, թղթակիցներին՝ գյուղական համբաների վարձկանները, պատասխանատու գործիչների անձնական պակասություններն անմիջական թիրախ էին դառնում բանսարկու քաղքենիների համար: Նորի երկունքին ընթացակցում էին պատմության գիրկն անցնող մարդկանց որոգայթներն ու դավերը՝ կյանքի բոլոր մարզերում: Կոմունիստները ո՛չ միայն կոչված էին նոր կառուցումները ծավալելու, այլև լենինյան գաղափարներն արմատավորելու նոր աշխարհի կերտման բազմապան մարզերում, նոր ապրելակերպի ու կենցաղի վառ օրինակներով աշխատավորական զանգվածներին համակելու լուսավոր իդեալներով:

Հայաստանի ինժեներ-տեխնիկների և գյուղատնտեսական մասնագետների համագումարում (1931 թ.) արտասանած իր բովանդակալից ճառում Ա. Խանջյանն ասել է. «Շեշտը դնելով բանվոր դասակարգին հարազատ տեխնիկական նոր ինտելիգենցիայի պատրաստման գործի վրա, թերագնահատո՞ւմ ենք արդյոք որևէ չափով հին ինտելիգենցիայի դերն ու նշանակությունը: Ոչ՛ և: Հին ինտելիգենցիայի այն խավերը, որոնք ազնվորեն ձգտում են միաձուլվելու բանվոր դասակարգի հետ, բանվոր դասակարգի խնդիրները դիտում են որպես իրենց սեփական խնդիրները, «պատրաստ են խղճի մտոք իրագործելու կուսակցության քաղաքականությունը», նրանք մեզ համար ամենացանկալի կինակիցներն են, և պետք է որ նրանք՝ անվերապահորեն քայլելով բանվոր դասակարգի հետ, միևնույն շարքերում՝ իրենց հարազատ փորձը և ունակություններն ի սպաս դնեն սոցիալիզմի կառուցման մեծ գործին»:

Հայաստանի կոմունիստների գործունեությունը Խանջյանը գլխավորում էր բանիմացորեն, կազմակերպչական ունակությամբ, իր հրապուրիչ խառնվածքով և իմաստալի խոսքով: Նա սովորեցնում էր գործիչներին, տոգորում վեհ գաղափարներով, հստակ ուղղություն տալիս նրանց բարդ գործունեությանը:

Մեծ երախտիք ունի նա մեր հանրապետության արդյունաբերության, գյուղատնտեսության զարգացման, կուլտուրական շինարարության ընդլայնման գործում:

Արդյունաբերական շինարարությունը ծավալվում էր, մտնում իր հունը: Ըստ էության նոր էր կազմավորվելու մեր հանրապետության արդյունաբերական բանվոր դասակարգը: Մեզ անհրաժեշտ էր բարձրորակ տեխնիկական մտավորականություն: Խանջյանը տնտեսական շինարարության եռուեռի մեջ էր, Հայաստանի ժողկոմխորհի նախագահ, ականավոր պետական գործիչ Սահակ Տեր-Գաբրիելյանի և հանրապետության մյուս ղեկավար աշխատողների հետ միասին, գլխավորում էր արդյունաբերական նոր ճյուղերի, նոր գործարանների ու ֆաբրիկաների հիմնադրման գործը:



Նրա անվան հետ է առնչված արդյունաբերական այնպիսի խոշոր ձեռնարկությունների հիմնարկումը, որպիսիք են՝ Երևանի Կիրովի և Կիրովականի Մյասնիկյանի անվան քիմիական կոմբինատները, Երևանի ձեթ-օճառի, պահածոների, բամբակազտիչ, կարբիդի, Արարատի ցեմենտի գործարանները, Լենինականի տեքստիլի վերակառուցումը, Ձորագէսի, Քանաքեռգէսի, Ղափանի հարստացուցիչ ֆաբրիկայի, Ալավերդու նոր հալոցքի կառուցումը ու Երևան—Սևան երկաթուղու կառուցման նախաձեռնումը: 1930 թվականին, երբ ստեղծարար մտահղացումները գործի էին վերածվում, կուսակցության VII համագումարին տրված Կենտկոմի հաշվետվության մեջ Խանջյանն ասում էր, թե Երևան—Սևան երկաթգծի հարցը խոշոր նշանակություն ունի Հայաստանի տնտեսության բարձրացման համար:

Եթե այժմ կենդանի լիներ ընդամենը 70-ամյա Խանջյանը, մեծագույն հաճույքով պիտի գնացքով մեկներ Սևան ու տեսներ, որ նոր երկաթգծի լիակատար կառուցումը մոտենում է իր ավարտին: Բնականաբար նա և նրա սերունդը գոհունակությամբ կիրճվեին իրենց ստեղծագործ մտահղացումների ու պլանների քառապատկումն ու տասնապատկումը տեսնելով: Աղասի Խանջյանը խորամուխ էր հանրապետության տնտեսական կյանքին, լավ գիտեր նրա առանձնահատկությունները, որի շնորհիվ նրան հաջողվում էր կուսակցական կազմակերպությունների, ամբողջ աշխատավորության ջանքերը նպատակամղել ամենակոնկրետ խնդիրների կենսագործմանը:

Մեծ է Աղասի Խանջյանի ավանդը քաղաքում և գյուղում ծավալված կուլտուրական հեղափոխության բոլոր մարզերում: Նրա ղեկավարության տարիներին ստեղծվեցին հանրապետության պոլիտեխնիկական, անասնաբուժական-անասնաբուժական, մանկավարժական, բժշկական, գյուղատնտեսական, մարքսիզմ-լենինիզմի ինստիտուտները: Նա լայն գործունեություն էր ծավալել հանրապետությունում գիտության, կրթության և կուլտուրայի զարգացման ու նոր կադրերի պատրաստման բնագավառում:

Մեր մայրաքաղաք Երևանը (և ոչ միայն Երևանը), հարուստ հուշեր է փայփայում Խանջյանի կենսագործունեության վերաբերյալ: Նա օրեր ու գիշերներ է անցկացրել Երևանի առաջին նախագծերի մոտ, ճարտարապետ Ալեքսանդր Թամանյանի արվեստանոցում մտորել այսօրվա Երևանի մասին:

Մեր ժողովրդին քաջ հայտնի է նրա հոգատար ու լայնախոհ վերաբերմունքը հանրապետության կուլտուրայի, գրականության, գիտության ու արվեստի մտավորականության նկատմամբ: Դյուրին գործ չէր, երեսնական թվականների հախուռն վերընթացին զուգընթաց, կառուցել ներկա օպերայի թատրոնը՝ ազգային ճարտարապետության հոյակապ կոթողներից մեկը և հաստատուն հիմքեր արկանել հայկական սովետական օպերային մշակույթի, կայուն հիմքերի վրա դնել կոնսերվատորիան, միութենական ասպարեզ բերել մեր ժողովրդի ազգագրական չքնաղ պարարվեստը, մինչ այդ չեղած ծավալով զարգացնել սովետահայ մամուլն ու հրատարակչական գործը, գիտական մակար-

ցանկով ապահովել մարքսիզմի կլասիկների և, հատկապես, մեծ Լենինի երկերի հրատարակության հույժ կարևոր գործը, քայլ առ քայլ առաջ մղել հայ ժողովրդի անցյալի հոգևոր ժառանգության քննադատական յուրացման և մասսայականացման պատվաբեր նախաձեռնությունը:

Աղասի Խանջյանի աշխատանքի ոճում տիրապետողը գաղափարայնությունն էր, կուսակցական, պետական չափանիշները:

Լինելով խիստ գործնական, նա հաղորդակից էր մասսաներին, խորհրդակցում էր մարդկանց հետ, ազդում նրանց վրա իր համեստությամբ, հստակ հարցադրումներով, խստաբարո պահանջկոտությամբ, անտնտեսավարության, թափթփվածության նկատմամբ իր անհաշտությամբ: Հետևողական իր ուղղամտությամբ, գործելակերպի հստակությամբ, քաղաքական գործչին հատուկ շիտակությամբ ու պարզությամբ, սխալների ու թերությունների անսեթևեթ ու գործնական քննադատությամբ նա կզալի հետք էր թողնում մարդկանց մտածելակերպի ու գործելակերպի վրա: Նրան խորթ էին խնդրի արծարծման մակերեսայնությունը, անպատասխանատվությունը: Ամենափոքր հարցն անգամ շոշափելիս, դրսևորում էր հետևողականություն, չէր հանդուրժում քաշքշուկը, գիտեր խորանալ գործերի մանրամասների մեջ, կարողանում էր գտնել հանգուցային հարցերի ճիշտ լուծումը:

Նա ձգտում էր գտնել աշխատանքի օպտիմալ մեթոդներ, մշտապես առանձնահատուկ նշանակություն տալով գործի կազմակերպչական կողմին: «Աշխատանքի բոլշևիկյան ոճի առանձնահատկությունն այն է, որ միասնականություն լինի լայն ծրագրերի և այդ ծրագրերի կիրառման համար կատարվող ամենօրյա գործնական կոնկրետ աշխատանքի միջև», ասում էր նա:

Նա խորապես հետամուտ էր կուսակցական և պետական մարմինների ընդունած որոշումների ճիշտ կատարմանը: Կուսակցության գծի կենսագործման ստուգումը պետք է կատարվի «ոչ թե ընդհանուր, համապարփակ բանաձևերով, այլ առօրյա, գործնական աշխատանքով, մեր պայքարի և շինարարության յուրաքանչյուր կոնկրետ ճակատամասում»,— ասում էր Աղասի Խանջյանը: Կուսակցական կրքոտությամբ խարազանելով անտարբերությունը, նա միշտ և ամենուր սկզբունքային էր: Դժբախտաբար, նշում էր նա, մինչև օրս մեզ մոտ մնում են՝ թափթփվածությունը, բամբասանքը, պատասխանատվության զգացումի բացակայությունը:

Աղասի Խանջյանը տեսականորեն և բազմակողմանիորեն պատրաստված գործիչ էր, մարքսիզմ-լենինիզմի մարտական գաղափարների լավագույն պրոպագանդիստը: Չնայած զբաղվածությանը, նա ժամանակ ու հնարավորություն էր գտնում սիստեմատիկաբար խորանալու տեսության մեջ, հետևելու քաղաքական և գեղարվեստական գրականության նորույթներին: Նա օժտված էր հրապարակախոսական և հռետորական փայլուն ձիրքով: Ժամանակակիցները նշում են, որ նրա խոսքն անբռնազբոս էր, շեշտված անկեղծությունն ու անմիջականությունը, արագ տրամաբանելու կարողությունը նրան հնարավորություն էին ընձեռում համակելու ունկնդիրներին, համոզելու նրանց:

Խանջյանի ժամանակակիցների հուշերում աչքի է զարնում այն միտքը, որ նրա գործունեությունն ու առօրյա վարքագիծը մշտապես ներհյուսված էին կոմունիստական հումանիզմի ու նոր մարդու բարոյական սկզբունքներով: Ատելով քծնանքն ու շողոքորթությունը, նա օրինակ էր հանդիսանում մարդկանց մեծ թե փոքր գործերում դրսևորելու լենինյան վարվելաձև՝ վիճելիս, հարցերը



քննարկելիս ելնելու գաղափարների սկզբունքներից, այլ ոչ սուբյեկտիվ համակրանքից կամ հակակրանքից:

Մոռացած անձնական վայելքն ու բավականությունները, նա մեծագույն ճիգերով հետևում էր գիտության, տեխնիկայի, արվեստի ու գրականության, մամուլի էջերում սևեռված մարդկային ինտելեկտի բազմապիսի տեղաշարժերին: Նորի սուր զգացումը թելադրում էր նրան մոտ կանգնել այն մարդկանց ու կոլեկտիվներին, որոնք նորարարներ էին իրենց նախասիրած մարզերում: Նա իր հեղինակությամբ խրախուսում էր նոր ծիլերի աճը մեր կյանքի բոլոր բնագավառներում: Նա չէր երկնչում չկամ, կյանքի բարդ պրոբլեմները չըմբռնող ընկերների քրթմնջոցներից, անսկզբունք մոտեցումներից և հետևողականորեն սատարում էր հասարակական առաջադիմության նկրտումներին:

Աղասի Խանջյանն անդուլ ուշադրությամբ հետևում էր հայ գաղթավայրերի քաղաքական կյանքին, ձգտում Սովետական Հայաստանի շուրջը համախմբել սփյուռքահայության առաջադիմական, աշխատավորական շրջաններին, ծավալել հայրենադարձությունը. կրքոտությամբ հակահարված էր տալիս սովետական կարգերի թշնամիներին:

Նա հպարտանում էր, ոգևորվում և տոգորում կանգվածներին ասելով. «Մինչև հեղափոխությունն ազգերի և ժողովուրդների համաշխարհային ժանդարմ՝ ցարական կայսրությունը, հետամնաց, կրոնամոլ, բարբարոսական, կեղեքիչ, ճանապարհազուրկ, առանց զարգացած արդյունաբերության այդ երկիրը պրոլետարական հեղափոխության հրաշակերտ ուժով վերածվել է պատմության առաջամարտիկի, վերածվել է աշխատավոր մարդկության հույսի, վերածվել է նոր, սոցիալիստական աշխարհի համար մարտնչող տասնյակ ու հարյուրավոր միլիոն աշխատավորների դրոշակի»:

Աղասի Խանջյանը մեծ ինտերնացիոնալիստ էր, սովետական բոլոր ժողովուրդների հաստատուն բարեկամության ջատագովը, կյանքում լենինյան ազգային քաղաքականության անբասիր կիրառողը: Նրա գործունեության հավատո հանգանակն էր՝ աչքի լույսի պես պահել ՍՍՀՄ ժողովուրդների եղբայրական դաշնը ու մազաչափ չխախտել մեր նվիրվածությունը ռուս ժողովրդին: Աղասի Խանջյանն առաջին համաշխարհային պատերազմի տարիներին անցել էր թուրքական գեհենի միջով, քաջածանոթ էր հարազատ ժողովրդի դառնաղետ պատմության դասերին և ամբողջ խորությամբ գիտակցում էր սովետական ժողովուրդների մեծ ընտանիքում՝ հայ աշխատավոր ժողովրդի ապահովության, սոցիալական և ազգային առաջընթացի խոր իմաստը:

Ահա թե ինչու, բազում առիթներով նա մեծագույն գոհունակությամբ ու հպարտությամբ էր հիշատակում մեր նվաճումները ազգային քաղաքականության ոլորտում:

«Խորհրդային Հայաստանի տնտեսական անօրինակ վերելքին համապատասխանում են կուլտուրական շինարարության հսկայական թափն ու ծավալը: Լենինյան ազգային քաղաքականության անշեղ կիրառման արդյունքներն այսօր այնքան են ակնբախ ու անվիճելի, որ մեր թշնամիներն իսկ անկարող են դրանք բացասել: Խավարի ու տգիտության, ասիական թմրածության և դանդաղաշարժության դասական կենտրոնը, Երևանը, Հայաստանն առհասարակ՝ արդեն անճանաչելի է դարձել: Անգրագիտության մասսայական վերացում, ընդհանուր պարտադիր ուսման կիրառում, միջնակարգ և բարձրագույն ուսումնական հիմնարկների, ինչպես նաև գիտական հիմնարկությունների

իսկայական մի ցանց, նախախորհրդային որևէ չափով չչափվող հրատարակչական գործ, սեփական գիտական և մասնագիտական կադրերի հետզհետե խտացող շարքեր, կինո, թատրոն, գրականություն, երաժշտություն,— այս բոլոր բնագավառներում աչքի ընկնող հաջողությամբ մենք կառուցում ենք սոցիալիստական կուլտուրան ազգային ձևով»:

Որքա՜ն անմիջականություն, անկեղծություն և հուզաթաթավություն կա Աղասի Խանջյանի քաղաքական այս խանդաղատալի և ճշմարտացի գնահատումի մեջ:

Որքա՜ն տեղին են հնչում այդ խոսքերը այսօրվա մեր մեծ Միության քաղաքական ու տնտեսական հաղթարշավի պահին, երբ մեր կուսակցության XXIV համագումարը սովետական ամբողջ ժողովրդին, բոլոր կոմունիստներին տվել է աշխատանքի ու ստեղծագործական խիզախումների նոր, հոյակապ ծրագիր:

Իր գիտակցական կարճատև կյանքի ընթացքում նա բազմաթիվ օրինակներով համոզում էր հին աշխարհը գրոհող Հայաստանի աշխատավորական կանգվածներին, որ նրանք ի վիճակի են լիովին կենսագործելու մեծ Լենինի աշխարհաշեն իդեալները, որի հիմնադրած կուսակցության՝ ՍՄԿԿ անձնուրաց և հավատարիմ մարտիկն էր ինքը: Իր աննահանջ մաքառումներով նա ապացուցեց, որ կոմունիստների կուսակցությունն է այն միակ կենսունակ կազմակերպությունը, որը կարող է առաջավոր մարդկության պրոգրեսիվ երթի առաջնորդը մնալ:

Սովորելով Մոսկվայում, աշխատելով հեղափոխության օրրան Լենինգրադում, քաղաքականորեն վերամկրտվելով պրոլետարական միջավայրում, Խանջյանի գործունեության մեջ ցայտուն կերպով դրսևորվում էր հավատարմությունը լենինյան ավանդներին: Համագումարներում թե պլենումներում, հրապարակային բազում ելույթներում, թե հոդվածներում և ամենակարևորը՝ գործնականում, կարմիր թելի պես երևում է նրա անաղարտ նվիրվածությունը սոցիալիստական ինտերնացիոնալիզմի գաղափարներին, սովետական ժողովուրդների լենինյան միասնության քաղաքականությանը:

Այն տարիներին Սովետական Հայաստանը մասն էր կազմում Անդրկովկասի ֆեդերացիայի: Նա ամբողջությամբ նվիրված էր երեք հանրապետությունների տնտեսական, կուլտուրական և քաղաքական սերտ համագործակցությունն ամրապնդելու, արտադրաուժերը ճիշտ, ժողովուրդների կենսական շահերին համապատասխան տեղաբաշխելու, նրանց ինտերնացիոնալ կուռ համախմբումն ապահովելու գործին:

Անդրկովկասի սոցիալիստական վերածնության ու նրա ժողովուրդների եղբայրական դաշինքի ամրապնդման գործում անուրանալի են Աղասի Խանջյանի՝ այդ անբասիր գործչի, մեծ ծառայությունները:

Խանջյանը մասնակիցն էր կուսակցության XV, XVI և XVII համագումարների: XVII համագումարում նա ընտրվեց ՀամԿ(բ)Կ վերստուգիչ հանձնաժողովի անդամ, իսկ սովետների VI և VII համագումարներում ՍՍՀՄ Կենտգործկոմի անդամ:

Հայաստանում սովետական իշխանության հաստատման 15-րդ տարեդարձի առիթով, 1935 թվականին նա արժանացավ կառավարական բարձր պարգևի՝ Լենինի շքանշանի:

Սակայն ուժերի բուռն ծաղկման տարիքում կտրվեց նրա կյանքի թելը:



Նա զոհ դարձավ անհատի պաշտամունքի տարիներին սանձարձակ դարձած ժողովրդի թշնամի Բերիայի մեքենայություններին:

Աղասի Խանջյանը խոր ակոս է թողել մեր ժողովրդի սրտում, կուսակցության պատմության մեջ:

Սովետական Հայաստանի արդի նվաճումների մեջ կա և նրա անսպառ եռանդի բաժինը: Իր անբասիր, գաղափարական բուռն գործունեությամբ, անաղարտ հայրենասիրությամբ Խանջյանն արժանացավ աշխատավորության սիրուն, խոր հարգանքին ու վստահությանը: Անմեռ ավանդը, որ նա թողել է սերունդներին, իր կյանքի պայքառ օրինակն է, նրա անձնուրաց նվիրվածությունը՝ աշխարհը կոմունիստորեն վերակառուցելու լենինյան հավերժ կենդանի գործին:

Արդ, մեծարելով Խանջյանին, մեր հարգանքի ու երախտագիտության տուրքն ենք հատուցում կոմունիստ հեղափոխականների խիզախ սերնդին, որն իր հերոսական պայքարով ու բազում սխրանքներով ապահովեց սոցիալիզմի հաղթանակը մեր երկրում: Տակավին 1930 թվականին Աղասի Խանջյանը, խանդավառված սոցիալիզմի հերոիկայի վարակիչ պաթոսով, գրել է.

«Մեր սոցիալիստական հայրենիքի հեղափոխական բազկերակի անընդհատ ուժեղացող զարկն զգում ենք հենց նաև այստեղ՝ հեռավոր և փոքրիկ Հայաստանում, մեր վերականգնվող ու զարգացող պղնձահանքերում, Զորագէսի և Քանաքեռի հոյակապ աշխատանքներում, տուֆի և պեմզայի ընդարձակվող հանքերում, քիմիական արդյունաբերության բարձրացող գիգանտներում, տեքստիլի իլիկների երգերում, կառուցվող անասնապահական խորհրդային տնտեսություններում, ոռոգման վիթխարի աշխատանքներում, վերափոխվող և նորաշեն մեր քաղաքներում և գյուղերում: Հայաստանի խորհրդայնացման երկրորդ տասնամյակը սկիզբ կլինի նոր ու ավելի խոշոր, ավելի հոյակապ աշխատանքների ու կառուցումների, Խորհրդային Միության սոցիալիստական վերակառուցման ընդհանուր ու միասնական պլանի սահմաններում»:

Մշտապես լավատես Աղասի Խանջյանի սերնդի ստեղծատենչ իղձերը վաղուց գործի են վերածվել հետնորդների անօրինակ ջանքերով և աշխատանքային հերոսագործությամբ:

Հավերժ փա՜ռք լենինյան գաղափարների ջահակիրներին:

Սովետական Հայաստանի կոմունիստները և բոլոր աշխատավորները խոր երախտագիտությամբ են նշում Աղասի Խանջյանի՝ մեր ժողովրդի սիրասուն զավակի ծննդյան 70-ամյա հոբելյանը, արժանին հատուցում նրա պայծառ, հավերժ կենդանի հիշատակին:



# Գիտությունը և կյանքը

## ԳԻՏՈՒԹՅՈՒՆԸ ԾԱՌԱՅՈՒՄ Է ՄԱՐԴՈՒՆ

Կյանքն իր սահմաններն ունի։ Ութսունն առաջվա պես կրիտիկական տարիք է։ Եվ, ահա, հույսեր, որ միշտ այդպես չի լինելու։ Հետազոտողներն առաջին անգամ իրենց տրամադրության տակ ունեն փաստեր, որոնք ցույց են տալիս, թե մոտակա երեսուն տարում կիրականանա մարդու ամենահամարձակ երազանքը՝ հնարավոր կլինի արհեստականորեն երկարացնել կյանքը։

Այժմ արդեն կատարվում են սնկային կուլտուրաների, անվակիրների, մկների երիտասարդացման այն հրաշքները, որոնք մոտ ապագայում կփորձարկվեն նաև մարդու վրա։

Դրախտի՝ ֆանտաստիկ երկարակեցության, դռների բանալին մարդկանց տալիս են գնդասեղի ծայրից էլ փոքր, միաբջիջ, փոքրիկ էակները, որոնց անվանում են ամենապարզ կենդանիներ (միաբջիջներ)։ Աշխարհի հնագույն կենդանի օրգանիզմներն են դրանք։ Հինավուրց օվկիանոսի ջրերը դեռևս միլիարդավոր տարիներ առաջ լիքն էին դրանցով։ Այդ միաբջիջներն այժմ առաջվա պես ջրում են ապրում, կամ, իբրև հիվանդահարույց բջիջներ, հաստատվում օտար օրգանիզմներում։ Այդպիսի միաբջիջներ են նաև դիզենտերիայի հարուցիչները— այդ ահավոր ամեոբաները։

### ԱՆՄԵՌ ԲՋԻՋՆԵՐ

Տարիքի պրոբլեմն ուսումնասիրողներն իրենց փորձերում նախապատվությունը տալիս են բջիջներին՝ երկու պատճառով։

Առաջին. միաբջիջներն օժտված են այնպիսի հատկություններով, որպիսիք կցանկանար ունենալ մարդը— նրանք անմեռ են. «հասունանալով» կիսվում են, և յուրաքանչյուրից առաջանում է երկու նոր բջիջ։

Երկրորդ. իսկն ասած, մարդու մարմինն իրականում ոչ այլ ինչ է, եթե ոչ այդպիսի միաբջիջների խումբ։ Նրա մկաններն ու արյունը կազմված են մոտ հազար միլիարդ առանձին բջիջներից, որոնց ընդհանուր կառուցվածքը ոչնչով չի տարբերվում լճակում բնակվող միաբջիջների կառուցվածքից։ Զանազանությունը սոսկ այն է, որ մակրոօրգանիզմ կազմող բջիջները կրում են իրենց մահվան դատավճիռը։

Եթե մարդկային առանձին բջիջները տեղափոխենք սնուցող հեղուկի մեջ, նրանց վերադարձնելով նախնական ազատությունը, վերջիններս սկզբում կզարգանան որպես սովորական միաբջիջներ. կկիսվեն նոր, երիտասարդացած բջիջների, որոնք, իրենց հերթին, կզարգանան ու նորից կկիսվեն։ Բայց հետո հանկարծ ամեն ինչ ընդհատվում է։ Կորչում է բազմանալու ունակությունը, բջիջներն սկսում են ոչնչանալ։

Հիսուներորդ կիսումից հետո փորձանոթում ակսվող համատարած մահացումը տեղի է ունենում նաև մարդու մարմնում։ Այն սկսվում է մոտ 30 տարեկանում, սկզբում, գրեթե, աննկատ։ 80 տարեկանում մեռնում են մարմնի մոտ 10 կիլոգրամ բջիջներ։ Վերջապես ողջ բջջակույտը՝ մարդը, մեռնում է։

Ինչո՞ւ են մարմնի բջիջները մահանում, իսկ միաբջիջ օրգանիզմները՝ ոչ։ Այդ հարցը դարձել է հետազոտության հիմնական պրոբլեմը։ Գիտնականներին ճիշտ ուղու վրա կանգնեցրեց առաջին հայացքից արտառոց թվացող հաջողությունը։ Նրանք կարողացան անմեռ միաբջիջ օրգանիզմները դարձնել մեռնող։

Բուֆալոյի համալսարանի պրոֆեսոր Դանիելին բացառիկ մի փորձ կատարեց ամեոբայի՝ արհեստականորեն ստեղծված մեռնող բջիջների վրա։ Փոքրիկ շպրիցի օգնությամբ այդ բջիջներից նա վերցրեց աննշան քանակությամբ սպիտակուց և պատվաստեց «անմեռ» ամեոբաներին։ Հանկարծ սկսեցին ոչնչանալ ամեոբաները, ինչպես և այն բջիջները, որոնցից վերցված էր պատվաստված սպիտակուցը։

Եվ եզրակացրին. պրոբլեմի լուծումը, ըստ երևույթին, պետք է որոնել ո՛չ թե ժառանգական նյութի, այլ բջջային սպիտակուցի՝ պրոտեինի մեջ։ Պրոֆեսոր Դանիելիի կարծիքով հենց այդտեղ է սկսվում այն պրոցեսը, որը մենք ծերացում ենք անվանում։ Փաստորեն մարդու օրգանիզմի հազար միլիարդ բջիջներից յուրաքանչյուրն արտադրական և վերահսկող բարդ ագրեգատներ ունեցող «սպիտակուցի ավտոմատ ֆաբրիկայի» նման մի բան է։ Սակայն այն ևս մերթ ընդ մերթ անպետք, յուրատեսակ խոտան է արտադրում։ Քանի դեռ այս պրոցեսը բացառիկ է, վտանգավոր չէ։ Բայց ագրեգատները կարող են խափանվել, և անընդհատ խոտան կարտադրվի։

Ըստ պրոֆեսոր Լեսլի Օրջելի տեսության, ծերացումը ոչ այլ ինչ է, եթե ոչ արտադրական արատների էսկալացիա, «սխալների մեծ աղետ»։ Հետազոտողները հիմք ունեն ուրախանալու այդ առիթով։ Ավելի վատ կլիներ, եթե արատները հայտնաբերվեին ժառանգական նյութի մեջ։ Գիտնականները համոզված են, որ սպիտակուցի արատները կարելի է շտկել։



Օրգանիզմի բջջային կառուցվածքում արդեն արվում են այդօրինակ «վերակառուցման» առաջին փորձերը։ Ապացուցված է, որ բջիջներին վնասում են այն նյութերը, որոնցից, օրինակ, փչանում է յուղը, իսկ ավտոդողերը դյուրաբեկ են դառնում։ Այդ նյութերը կոչվում են ազատ ռադիկալներ։ Այնինչ ռետինի արդյունաբերության մասնագետները և սննդամթերքի արտադրության ոլորտում զբաղված քիմիկոսներն այնպիսի միջոցներ են գտել, որոնցով ազատ ռադիկալները վնասազերծելով, հնարավոր է լինում դանդաղեցնել մթերքների քայքայման պրոցեսը։

Չի՞ կարելի արդյոք յուղի փչացումը կանխելու ասպարեզում կուտակված փորձը կիրառել մարդու վրա։ Արդյունաբերության բնագավառում գործադրվող կոնսերվանտները փորձարկվեցին մկների վրա։ Արդյո՞ւնքը. սովորական ժամանակից միջին հաշվով 44 տոկոսով երկար ապրեցին մկները։ Այդ նշանակում է, որ մարդու կյանքը կարելի կլինի 70-ից հասցնել 105 տարվա։ Բայց, եթե ծերացման պրոցեսն իրոք բացատրվում է բջիջներում արտադրվող սպիտակուցների արատներով, ապա կարելի է փորձել օգնել օրգանիզմին՝ ձերբազատվելու վնասաբեր նյութերից։

Օրգանիզմի բնական պաշտպանները հակամարմիններն են։ Չի՞ կարելի արդյոք ստիպել նրանց գործել, երբ անհրաժեշտ է ոչնչացնել անպետք սպիտակուցը։ Հակամարմիններն առաջանում են, մասնավորապես, ոսկրուղեղում։ Եվ, ահա, գիտնականները 97 շաբաթական մկանը ներարկեցին երիտասարդ մկնից վերցրած ոսկրուղեղ։ Տվյալ տեսակի մկան կյանքի մաքսիմում տևողությունը 156 շաբաթ է։ Փորձամուկը ռեկորդ սահմանեց. ապրեց 204 շաբաթ։

Անգլիացի գիտնական Կոմֆորտի խոսքերով, ծերացման պրոցեսը հսկողության տակ կառնվի մոտակա 10—15 տարում։ Որոշ հետազոտողներ համոզված են, որ մինչև 2000 թվականը մարդը կապրի առնվազն 150 տարի։

### ՄԱՐԴԸ ՕՎԿԻԱՆՈՍԻ ՀԱՏԱԿՈՒՄ

Վեց հազար մետր խորությունում ծովի հատակը լուսանկարներում այնպիսի տեսք ունի, կարծես խորհրդավոր ջրասույզ հսկաները քարասալարկել են այն։ Հատակը ծածկված է գնդերով։ Հատուկ տրալի օգնությամբ հետազոտողները նրմուշ վերցրին այդ զարմանահրաշ քարերից։ Պարզվեց, որ դրանք կազմված են արժեքավոր հանքաքարերից, որոնք պարունակում են 45 տոկոս մանգան, 1 տոկոս կոբալտ, 1,4 տոկոս նիկել և 1,8 տոկոս պղինձ։ Դեռևս հայտնի չէ այդ մետաղահանքերի գունդերի ծագումը։ Ենթադրում են, որ դրանք գոյացել են մետաղակուլ միկրոօրգանիզմների կուտակումից, որոնք խմբավորված տեղավորվում են մի միջուկի շուրջը։ Եթե այդպես է, ապա մետաղ «լափողները» խիստ անհագ են։ Նրանց ստեղծած «քարասալարկները» ծածկում են ծովի հատակի ողջ մակերեսի գրեթե մեկ քառորդը. դրանց ընդհանուր քաշը հասնում է մոտ 500—1000 միլիարդ տոննայի։ Այսօր արդեն նավթի համաշխարհային հանույթի մեկ վեցերորդն ստացվում է ծովի հատակից։

Մոտակա 30—40 տարում, Ատլանտիկայի կենտրոնում, ջրի ընդերքում մարդիկ կփորձեն կառուցել մի իսկական քաղաք-կայան՝ բնակելի շենքերով ու խանութներով, փողոցներով ու ռեստորաններով։ Տեխնիկական բնագավառի մասնագետները շինարարության առաջին իսկ փուլում կբախվեն այնպիսի դժվարությունների, որոնք չեն զիջի Լուսնի վրա հրթիռ իջեցնելու հետ կապված բարդություններին։ Ջրի ճնշումը վիթխարի է 3500 մետր խորությունում, ուր կառուցվելու է կայանը։ Ժամանակակից պողպատե ջրասույզ նավերն այդ խորությունում կճզմվեին, ինչպես լուցկու տուփը՝ դարբնի կռանի տակ։

Չնայած մեծ հուսալիությանը, պողպատե խցերն այնքան էլ պիտանի չեն ստորջրյա մշտական բնակարանների կառուցման համար։ Այդպիսի խցերի հիմնական թերությունն այն է, որ դրանք կոռոզիայի են ենթարկվում, իսկ աղի ջուրը քայքայում է պողպատը։

Ապակին համարվում է փխրուն նյութ։ Սակայն գիտնականները պարզել են, որ այն ջրի մեջ զարմանալի հատկություններ է ձեռք բերում։ Ծովն իջեցվող ապակյա լիքը գնդի դիմացկունությունը յուրաքանչյուր մետրում ավելանում է։ Մասնագետներն այդ համարում են խորության շնորհիվ թրծվելու բացառիկ երևույթ։

Ապագա գունդ-բնակարանի առաջին փորձնական մոդելը պատրաստվել է անցյալ ամառ և հաջողությամբ փորձարկվել 3500 մետր խորությունում։ Ընդ որում, գնդի յուրաքանչյուր քառակուսի սանտիմետրը ենթարկվել է ավելի քան 10 ցենտներ ճնշման։ Այս փորձարկումները, ըստ էու-

թյան, սկզբունքորեն լուծեցին ստորջրյա ավանի կառուցման կարևորագույն խնդիրը։

Բայց կարո՞ղ է արդյոք 3500 մետր խորությունում ողջ մնալ միս ու արյունից կազմված էակը։ Առավելագույն խորությունը, ուր առանց բատիսկաֆի կարող է սուզվել մարդը, առայժմ մոտ 350 մետր է։ Բայց այդ խորությունում իսկ հարկ է լինում դիմել տեխնիկայի հնարքներին։ Բժիշկների հաշվումներով մարդը չի կարող 400 մետրից խոր սուզվել, որովհետև ջրի ճնշումն այնտեղ այնքան մեծ է, որ հնարավոր չէ արտաշնչել օգտագործված գազը։

Սակայն, հայտնի է, որ ձկները դիմանում են ջրի մեծ ճնշմանը, որովհետև, ջրով են շնչում։ Ուստի, եթե հեղուկի արտաշնչումը պաշտպանում է մահաբեր ճնշումից, ապա, ուրեմն, խոր սուզվող մարդու օրգանիզմը նույնպես պետք է վերափոխել։ Թող նա շնչի հեղուկով— այնպես, ինչպես շնչում էր պտղահեղուկի մեջ, մոր արգանդում։

Առաջինը փորձարկվեցին մկները, որոնց տեղավորեցին թթվածնով հարուստ աղաջրի լուծույթի, այսպես կոչված՝ ծովաջրի մեջ։ Կենդանիների վրա կատարված փորձերի հաջողությունը դրդեց պրոֆեսոր Իոհաննես Կիլստրին առաջին համարձակ փորձը կատարել մարդու վրա։ Այդ առթիվ իր հոժարակամությունը հայտնեց ամերիկյան ջրասույզ Ֆրենսիս Ֆալեյչիկը։ Անվտանգության համար փորձերն սկզբում կատարվում էին միայն թոքերով։ Շնչառական ուղիները մտցվեց երկտակ խողովակ, որի ծայրերը գտնվում էին բրոնխներում։ Այդպիսով, ամեն մի թոքը կարող էր շնչել առանձին։ Սովորական օդը թափանցում էր միայն թոքի ձախ կեսը։ Ջրասուզակը խողովակի միջով աջ թոքով ներշնչում էր թթվածնով հարուստ աղաջուրը։

Ոչ մի բարդություն։ Ֆրենսիս Ֆալեյչիկը շնչելիս չէր դժվարանում։ Սակայն դեռ վաղ էր հաղթանակ տոնել։ Թեև շնչառական հեղուկը թոքերին լավ էր թթվածին մատակարարում, բայց արտաշնչելիս այն բավարար չափով չէր հեռացնում ածխածնի երկօքսիդը. այդ վտանգավոր էր։

Բայց շնչառական հեղուկ կարող է լինել ո՛չ միայն աղաջուրը. կան և այլ, ավելի համապատասխան հեղուկներ։ Այսպես, ֆթորային սինթետիկ որոշ միացություններ կարող են երեք անգամ ավելի լավ թոքերից դուրս մղել ածխածնի թունավոր երկօքսիդը։ Բացի այդ, դրանք ավելի հեշտ է հարստացնել թթվածնով։ Եվ այսպես, հիմնական միջոցը գտնված է։ Հետազոտողները համոզված են, որ մոտ ապագայում ջրասուզակները կապահովվեն շնչառական այնպիսի հարմարանքով, որտեղ օդի դերը կկատարի հեղուկը։ Նրանք համոզված են նաև, որ այնժամ խորքերի առաջին հետազոտողների համար սարսափելի չի լինի ստորջրյա ոչ մի ճնշում։

## ՍՆՆԴԱՄԹԵՐՔ՝ ՆԱՎԹԻՑ

Յուրաքանչյուր երկու ամսում մարդը կլանում է իր մարմնի կշռին հավասար ուտելիք։

Սննդամթերքի այդ սարն ունենալու համար նա վայրագորեն փչացրել է երկրագունդը, ստեղծել գյուղատնտեսություն։ Բույսերի քիմիական ֆիզիոլոգիայի տյուբինգենյան ինստիտուտում (ԳՖՀ) հաջողվեց կատարել՝ ցորենը փորձանոթում, բնության դեղատոմսով պատրաստվող «ալյուրով» փոխարինելու առաջին քայլերը։

Լավերում (Ֆրանսիա) այս տարվա վերջում կգործարկվի առաջին ձեռնարկությունը, որն ամեն տարի նավթից կստանա այնքան «միս», որքան 80 հազար կենդանուց, որոնցից յուրաքանչյուրը կունենա մեկ ցենտներ քաշ։

Հետազոտողների նպատակն է՝ սովորել այնպիսի ուտելիք պատրաստել, որը, մի կողմից՝ սովորականի չափ, նույնիսկ ավելի համեղ լինի, մյուս կողմից՝ հեշտ ու արագ պատրաստվի և կարիք չլինի բնությանը վնասող հողագործության։

Արդեն ստեղծվել է սննդամթերքի արդյունաբերական թողարկումն ապահովող ավտոմատի նախատիպը։ Գիտնականները փորձասարքն են մղում գազեր— ածխածնի երկօքսիդ, ջրածին ու թթվածին և ստանում են ֆորմալդեհիդ— հիմնական սկզբնանյութը ածխաջրերի արտադրության համար։ Արտադրանքը դեռևս աննշան է՝ օրական 40 գրամ, բայց կարևորն սկզբունքն է. ապացուցված է, որ ածխաջրեր կարելի է անմիջաբար ստանալ ածխածնի երկօքսիդից, ջրածնից և թթվածնից։

Հավանաբար տիեզերագնացների համար սննունդ արտադրող փոքրիկ ապարատը շուտով կդառնա հացահատիկի ու կարտոֆիլի դաշտերի իսկական մրցակիցը։

Սովետական Միությունում, ԱՄՆ-ում և ԳՖՀ-ում ակտիվ աշխատանքներ են տարվում այդ ապարատն արդյունաբերական նշանակություն ունեցող սարքի փոխարկելու։ Որոնում են այնպիսի կառուցվածք, որն առավելագույն չափով էժանացնի ողջ պրոցեսը։

Բույսն օգտագործում է ո՛չ միայն էժան հումք, այլև ձրի էներգիա՝ արևի ճառագայթները։ Դրանց միջոցով և օգտվելով բիոքիմիական հանճարեղ «տրյուկից», այն բաժանում է ջուրը բաղադրիչ տարրերի, և այդպիսով, չնչին քանակությամբ էներգիա ծախսելով, նախադրյալներ ստեղծում ածխաջրերի յուրացման համար։

Բույսերի բիոքիմիայի տյուբինգենյան ինստիտուտում պրոֆեսոր Հելմուտ Մեցներին հաջողվեց զուտ քիմիական ճանապարհով, բույսերից փոխառված դեղատոմսով կատարել նույնպիսի «ֆոտոլիզ»։ Հենց որ լույս է ընկնում փորձանոթի ջրի վրա, այն սկսում է տարրալուծվել իր բաղադրիչների՝ ջրածնի և թթվածնի, ճիշտ այնպես, ինչպես այդ լինում է բույսի տերևի վրա։ Այդպիսով, կատարվեց ածխաջրերի էժան արտադրման վճռական մի քայլ։ Հնարավորություն ստեղծվեց կառուցելու ածխաջրերի արտադրության առաջին գործարանը։

Ժամանակակից ընտանի կենդանիները չափազանց դանդաղ են սպիտակուց արտադրում։ Հինգ ցենտներ կշռող ցուլը խոտի սարեր է ուտում, բայց օրական արտադրում է ընդամենը 500 գրամ սպիտակուց։ Կենդանի էակներ կան, որ ավելի արագ են աճում։ Դրանք չափազանց մանր են, միաբջիջ։ Բայց հինգ ցենտներ այդպիսի միկրոօրգանիզմները կարող են 2500 անգամ ավելի սպիտակուց արտադրել, քան ցուլը։

Սպիտակուցի այդպիսի արտադրող է ջրիմուռը՝ մեկ հարյուրերորդական միլիմետր տրամագիծ ունեցող այդ փոքրիկ բջջագունդը։ Կաստրոպ-Ռաուքսելում (ԳՖՀ) կառուցվում է այդ միկրոբի բուծմամբ զբաղվող առաջին ձեռնարկությունը։ Ջրիմուռի բուծումը պարզ պրոցես է. ջրիմուռը ցցում են պարարտանյութով հագեցած քաղցրահամ ջրի մեջ, և այն սկսում է արագ բազմանալ։

Մյուս կուլտուրան՝ մակարդի միկրոբն է։ Այն բուծում են ո՛չ թե ջրում, այլ նավթի մեջ։ Արդյունքները հիանալի են։ Երկու տոննա ցածրորակ նավթից կարելի է ստանալ մեկ տոննա բարձրորակ սպիտակուց։ Ներկայումս անգլիական «ԲՊ» ֆիրման Լավերում՝ ֆրանսիական Մարսել նավահանգստի մոտակայքում, կառուցում է նավթից սպիտակուց արտադրող առաջին գործարանը։ Սպիտակուցի մյուս ֆաբրիկան կառուցվում է Շոտլանդիայում։ Նավթի մեջ միկրոօրգանիզմներ բուծելու գործարար աշխատանքներ են ծավալվել Սովետական Միությունում։

Ճաքարից կարելի է պատրաստել բազմազան կոնֆետներ։ Այդպես էլ սպիտակուցն օգտագործելով որպես ելանյութ՝ քիմիկոսներն այժմ իսկ կարող են մոգական գավազանի հարվածով զարմանահրաշ ուտեստներ մատուցել։ Դրա լավագույն օրինակն է «Արչեր-Դանիելս Միդլենդ» ֆիրմայի գործունեությունը։ Տեխնիկական յուրահատուկ պրոցեսի օգնությամբ ֆիրման սոյայի բակլայից ստանում է սպիտակուց և փոխարկում այն ցանկացած պարենամթերքի՝ թռչնի, տավարի մսի, վետչինայի, ճարպի, մրգերի ու բանջարեղենի։

## ՀԱՐՁԱԿՈՒՄ ՎԻՐՈՒՍԻ ՎՐԱ

Ինտուիցիայի և սովորական հաջողությունների զուգակցումը հանգեցրեց մեծ հայտնագործության։ Այդ սկսվեց սովորական հավի ձվի վրա կատարված մի փորձից, որը, առաջին հայացքից, կարող է բոլորովին անօգուտ թվալ։

Պատահում է, որ երեխան միաժամանակ հիվանդանում է ջրծաղիկով և կարմրուկով։ Այդ ժամանակ կարմիր ցանը չի պատում ողջ մարմինը։ Ծաղկի յուրաքանչյուր թարախապալարի շուրջը երևում է մաշկի բաց գույնը։ Հետազոտողների մեծ մասին դա լիովին հասկանալի էր թվում. այնտեղ, ուր բույն է դնում մի վիրուսը, մյուսը չի կարող հայտնվել։ Չէ՛ որ խիստ մացառուտ դաշտում հատիկը ևս չի աճում։

Սակայն Ցյուրիխի պրոֆեսոր, միկրոբիոլոգ Ժան Լինդենմանը առանց ստուգման չթողեց «հատիկային» այդ տեսությունը։ Նա որոշեց պարզել, թե ինչո՞ւ չեն կարող երկու տարբեր վիրուսներ ապրել մեկ բջջում և ճի՞շտ է, որ դրանք դուրս են մղում միմյանց։ Նրա մտքով իսկ չէր անցնում, որ իր հետաքրքրասիրության շնորհիվ կգտնի ժամանակակից բժշկության պատմության մեջ գուցե և ամենակարևոր հայտնագործության հետքը— կհայտնաբերվի վիրուսային հիվանդությունները հաղթահարող նյութը։ Այդ նյութը կոչվում է ինտերֆերոն։

Բժշկությունը մինչև օրս անզոր է վիրուսների հանդեպ։ Պատվաստումներն օգնում են միայն մի քանիսի դեմ։ Հուսալի միջոց չկա։ Սակայն նորագյուտ նյութը՝ ինտերֆերոնը, ըստ երևույթին, ունակ է զրկելու վիրուսներին իրենց ամենազոր ուժից։

## ԱՆՏԵՍԱՆԵԼԻ ԹԱՂԱՆԹ

Կենդանիների վրա կատարած հարյուրավոր փորձերը ցույց են տալիս, որ ինտերֆերոնի օգնությամբ օրգանիզմն, ասես, ծածկվում է անտեսանելի թաղանթով, որից վիրուսները փախչում են, ինչպես արյունարբու շնաձկները՝ ջրասույզ նավերից։

1956 թ. Ժան Լինդենմանը կատարեց մի բարդ փորձ։ Նա վերցրեց տասն օր թխսի տակ դրված հավի ձուն և երկու անգամ անընդմեջ ճտի սաղմի մեջ ներարկեց վիրուսի տարբեր տեսակներ։ Եվ, ահա, հետազոտական բարդ պրոցեսի ընթացքում նա գտավ, որ յուրաքանչյուր վիրուսի կենսատարածությունը կազմում է սաղմնաբջջի ուղիղ կեսը։ Ուստի, նա մտածեց, որ եթե տեսությունը ճիշտ է, ուրեմն, երկուսն էլ պետք է հավասարաչափ զարգանան։

Սակայն հետազոտողը հուսախաբվեց։ Մի քանի օր անց, հավի ձվից նա հանեց սաղմը և փորձեց գտնել վիրուսները. ապարդյուն։ Սկզբում Լինդենմանը մտածեց, թե ինչ-որ տեղ սխալվել է։ Նա կրկնեց փորձը մի քանի անգամ, բայց դարձյալ ապարդյուն։ Ի վերջո, տեղի տվեց. հուսահատվելով, անցավ ուրիշ հետազոտությունների։

Մոտ մեկ տարի անց, գիտնականը հնարավո-

# ՆՈՐ ՔԱՂԱՔՆԵՐ

## ՅՈԹՆԱՄՅԱ ԱԲՈՎՅԱՆՈՒՄ

(ԼՐԱԳՐՈՂԻ ՆՈԹԵՐ)

Դարեր առաջ մարդիկ եկել են այստեղ և համոզվել, որ վայրը զովասուն է, հարմարավետ։ Այլևս չեն հեռացել. հիմնել են իրենց տունն ու տեղը և մնացել ուրարտական Ուրուր բերդի շրջակայքի Ուրուր բնակավայրում։ Երբ էլը՝ ժողովուրդը, շատացել է, բազմացել, էլառ է դարձել այն։

Հոկտեմբերյան արևը հույսի ու լույսի շողերով ողողեց մեր երկիրը. զարթնած աշխարհը թոթափեց ազիտությունն ու կարիքը և, բազում դժվարություններ հաղթահարելով, սկսեց զարդնել իր նոր կյանքը, սովորել, ստեղծել, կառուցել...

Վեհապանծ, առնական ու քնքուշ երկրամաս. այսպես անվանեց Լեոնիդ Իլյիչ Բրեժնևը քարակոփ մեր երկիրը՝ քարն իսկ կանաչեցնող հիսնամյա Սովետական Հայաստանը։

Կերպարանափոխվել, այդ երկրամասի հանրապետական ենթակայության 19 քաղաքներից մեկն է դարձել 2500-ամյա Էլառը— այժմյան Աբովյան քաղաքը։ Ջահել են այստեղ և՛ կառուցողն ու բանվորը, և՛ ղեկավարն ու ծառայողը— ամենաշատը 40—45 տարեկան... Եվ հանրապետական ռադիոն ու ՀԿԿ Աբովյանի շրջկոմի և աշխատավորների դեպուտատների շրջսովետի «Արշալույս» թերթը շատ հաճախ հայտարարում են. «ՀՍՍՀ Մինիստրների սովետի պրոֆտեխնիկական ուսումնարանը կատարում է... ընդունելություն՝ հետևյալ խմբերում՝ փականագործ-ավտովարորդների, քարտաշ-որմնադիրների, ներակարարների. ընդունվողներն ապահովվում են աշխատանքով»... և հրավիրում են՝ եկեք մեզ մոտ սովորելու։ Ու գալիս են...

Չորս միջնակարգ դպրոց, մեկ տեխնիկում և պրոֆտեխնիկական 2 ուսումնարան։ Աբովյանի ուսումնական հաստատություններն են սրանք։ Շրջանավարտները կարող են աշխատել հենց տեղում՝ կիսահաղորդիչ սարքերի, երկաթ-բետոնե կոնստրուկցիաների գործարաններում և արդյունաբերական այլ ձեռնարկություններում։

Առնվազն կես ժամ ավտոբուսի սպասելուց հետո ընդամենը կես ժամում այնտեղ ենք. շուրջն ամեն ինչ նոր է, հուսադրող, ուրախացնող... Դատարկ, բոլորովին դատարկ տեղում, Երևան—Սևան մայրուղու ձախ կողմում, բարձրացել են գործարաններ, իսկ դրանց դիմաց կառուցվում է քաղաքը։ Այդպես մի ժամանակ վանքերի, եկեղեցիների շուրջն էին կազմավորվում բնակավայրերը, իսկ այժմ նոր մարդն այլևս հրաշք չի հայցում երկնքից, հրաշքն ինքն է գործում, կերտում, կառուցում... Աբովյանում աշխատողների 40 տոկոսը գալիս է Երևանից. եկել են քաղաքի շրջակա գյուղերից ու ավաններից, Հայաստանի տարբեր ծայրերից։ Եվ ինչո՞ւ միայն Հայաստանի, գալիս են Նովոսիբիրսկից ու Կուրսկից, Տաշքենդից, Տալինից, Բաքվից, Կիևից և Ուկրաինայի այլ քաղաքներից, Ռուսաստանի հեռավոր վայրերից։ Եկել են շինարարներ, հյուսներ ու որմնադիրներ, ծեփագործներ ու ներկարարներ, կռունկավարներ, ուսուցիչներ ու բժիշկներ...

Հեռավոր ու ցուրտ Տայգայից այստեղ եկավ մի ռուս մեխանիկ։ Չանցած մեկ տարի, նա գրեց, կանչեց կնոջը. դժվար է մենակ, ու Նատաշկային շատ եմ կարոտել։ Եկավ կինն ու սարսափեց. «Ի՞նչ պիտի անենք, դեռ տուն էլ չունես ու մեզ կանչեցիր»։

— Հանրակացարանում կապրենք, մինչև տուն կստանանք, դու մի՛ սարսափիր։

Ձմեռ էր։ Իսկ երբ բացվեց գարունը, կինը նույնպես սիրահարվեց արևաշատ քաղաքին ու գրեց ընկերուհուն, քրոջը. «Արևն այստեղ այնպե՜ս ջերմ է ու առատ... Ամեն ինչ հետաքրքիր է, քանի որ ինքդ ես քո ձեռքով ստեղծում, պատրաստում. քանդելու բան չկա, միայն կառուցում է, կառուցում... Երեխաների համար ևս լավ է— մանկապարտեզներ, դպրոցներ... աշխատանք՝ որքան ասես, աշխատող է պետք։ Հավաքիր ունեցած-չունեցածդ, արի, գոհ կլինես»։

Այդպես գրում են իրար ու կանչում։ Նորերն



են գալիս։ Գալիս են, և ամբողջովին կառուցավայրի վերածված այս քաղաքի բնակչությունը 1970 թ. անցնում է 20.000-ից։ Որտե՞ղ է մնում 1963 թ. 1800-ը։ Եկել, հայրենի երկնքի տակ ծվարել են և բազմաթիվ հայրենադարձներ— բնակչության մոտ 20 տոկոսը։ Նրանք եկել են՝ շենացնելու հայրենի երկիրը, ամենքի հետ գործելու, պայքարելու, ոչ բարբառելու ձեռնածալ։

Սկզբում ինչպես նրանց, այնպես և Սովետական Միության տարբեր ծայրերից եկածների համար անհասկանալի էր թվում շատ բան. քաղաք է, բայց ոչ թատրոն ունի, ոչ պուրակներ, ջրավազաններ ու ծառուղիներ, ամենուր քարեր են, կառուցվող կիսաշեն շենքեր, հիմնափոսեր...

Բայց այն քաղաք է։

Ամեն առավոտ այն արթնանում է, կյանքը հոսում է նրա գործարաններում, ուսումնական հաստատություններում, ամենուր, իսկ երեկոյան վաստակած քաղաքը քուն է մտնում՝ առավոտվա կրկին կառուցելու, խիզախելու, հրաշք մանուկի պես ժամով մեծանալու համար։

### ԳՆԱՆՔ ԳՈՐԾԱՐԱՆ

Հինգերորդ տարին է, ինչ արտադրանք է տալիս կիսահաղորդիչ սարքերի գործարանը։ Նրա անունն արդեն հայտնի է դարձել ոչ միայն մեր հանրապետությունում, այլև նրա սահմաններից դուրս։ Հայէլեկտրագործարանի արտադրամասի պետ էր էլեկտրիկ ինժեներ Կոնստանտին Առաքելյանը, երբ նրան նշանակեցին նորաստեղծ այս ձեռնարկության դիրեկտոր։ Մեծ գործարան, մեծ հոգսեր... Կյանքը դարձավ առավել լարված, աշխատանքը՝ բարդ։ Մարդիկ, մասնագետներ են պետք, իսկ այդպիսիք շատ քիչ էին. պետք էր գտնել, համոզել, հավաքագրել, հրապուրել, խրախուսել... Մարդկանց այստեղ խրախուսում են պարգևներով, առաջքաշմամբ, Միության առաջնակարգ գործարանները գործուղելով, ուսման ուղարկելով և, ամենակարևորը՝ բնակարան են տալիս։ Առաքելյանն այստեղ շփվում է տարբեր վայրերից եկած բազմապիսի մարդկանց հետ և, որքան դժվարին ու բարդ, նույնքան հետաքրքրական են դառնում մարդկային հարաբերությունները, աշխատանքային մթնոլորտը...

Հետաքրքրական է դիրեկտորի նախասենյակում, մեծ սեղանին տեղադրված գործարանի ապակեծածկ մակետը, որի մասնաշենքերին ու արտադրամասերին ծանոթացնում, դրանց մասին մանրակրկիտ տեղեկություններ է տալիս կուսակցական կազմակերպության քարտուղարը՝ Սերգեյ Հակոբյանը։

— 1970 թվականին գործարանի հիմնական արտադրամասերում բանողներն անցան կիսավտոմատ գծերի յուրացմանը և դրա շնորհիվ զգալի չափով նվազեց բանվորական ձեռքի կարիքը։ Շահագործման է հանձնվել էլեկտրաէներգիայի մասնաշենքի էներգետիկայի բաժինը, որը հնարավորություն է ընձեռում անցնելու հեղուկ և գազային վիճակում ազոտի, թթվածնի, չորացված և գազային օդի արտադրությանը։

Ընկեր Հակոբյանն առաջնորդում է գործարանի առաջին հարկի մի այլ արտադրամաս։

— Բացի հիմնական արտադրանքից մեզ մոտ թողարկվում են և ուժեղացուցիչներ,— պատմում է արտադրամասի պետը՝ կոմերիտական Յուրա Մարգարյանը,— Հայաստանի կեսդարյա հոբելյանին մեր արտադրամասի նորարարները նվիրեցին «Հայաստան—50», 16 վատանոց «էլեկտրոնիկա» ուժեղացուցիչները, իսկ «Կռունկի» հզորությունը հասնում է 32 վատի։ Դրանք խոնավությունից չեն փչանում, դիմանում են ավտոմեքենայի ցնցումներին։

Գետնին շարված են դրանց փորձանմուշները։ Պահանջարկը մեծ է. խնդրում են Միության տարբեր վայրերի համերգասրահները, նվագախմբերը, հատկապես կիթառիստները։

Պատկառելի աշխատավորական կոլեկտիվ ունեցող գործարանի հեռանկարները նոր հնգամյակում ավելի վառ են ու հարուստ։ Մի այլ արտադրամասում ենք։ Արտակարգ մաքուր, լուսավոր, վիթխարի մի սրահ է այն. ճեփ-ճերմակ խալաթներով ու գլխադիրներով մատաղահաս աղջիկներ են բոլորը՝ սևահեր, շիկահեր... խոշորացույցի օբյեկտիվին հառված սև, կապույտ, խաժ աչքեր... մաքրությունն ու լռությունն են իշխում այս՝ նուրբ ձեռքեր, սուր միտք ու աչք պահանջող գործարանի արտադրամասերում։ Կուսկազմակերպության քարտուղարի առանձնասենյակում ենք։

— Ահա մեր աստղուհին՝ Սվետլանա Մոխսեսյան, ձևավորող բանվորուհի է, II արտադրամասի պետի տեղակալը։ Սովորում է մարքսիզմ-լենինիզմի համալսարանում և գործարանին կից էլեկտրոնային կիսահաղորդիչների տեխնիկումում, պատրաստվում է ՍՄԿԿ շարքերն ընդունվելու։

Դիմացս նստած է միջահասակ, թխամորթ, կրակոտ, ածխի պես սև աչքերով ու գանգուր մազերով, կենսախինդ մի աղջիկ։

— Սվետլանային պարելիս պիտի տեսնել, նրան ճանաչելու, սիրելու համար։ Մեր երգի-պարի խմբակի լավագույն պարուհիներից է։

Սեղանի շուրջն են մի քանի հոգի, ամենքն էլ տարբեր տեղերից։ Ահա նրանցից ամենամեծը՝ շրջանային պատվո տախտակի, պատվոգրի, Լենինի ծննդյան 100-ամյակը նշանավորող հոբելյանական մեդալի արժանացած զոդող բանվորուհի, 41-ամյա Հայկանուշ Զաքարյանը։ Գործարան է եկել 1969 թ., Կիրովաբադի շրջանի Դաշքեսան գյուղից։

Երեք տարի առաջ Ադրբեջանի Շահումյանի

ները՝ լաբորատորիաներում ու գործարաններում, կարողն ու ձեռը, նախագծողն ու պլանավորողը, սովորողն ու սովորեցնողը... Ահա այս բազում կատարողներից կազմված մեծ նվագախմբի դիրիժորներն են՝ ՀԿԿ Աբովյանի շրջկոմի առաջին քարտուղար Վազգեն Հարությունյանը և քաղաքային սովետի գործադիր կոմիտեի նախագահ Լեոն Ավետիսյանը:

Պատանի քաղաք, երիտասարդ ղեկավարներ, երիտասարդ բանողներ...

Դափանցի է Հարությունյանը, Երևանի պետական համալսարանի պատմության ֆակուլտետն ավարտած, կուսակցական-հասարակական աշխատանքի հարուստ փորձով... Վեցերորդ տարին է, ինչ նա այստեղ է, և քաղաքն իրենն է ասես, ու ինքը՝ քաղաքինը. ամեն ինչ նրան հուզում է. և՛ նորակառույցի բնակարանամուտն ապրող բնակիչների ուրախությունը, և՛ երաժշտական ու այլ դպրոցների կառուցման ձգձգումը, ուշացումը, և՛ հաճախակի կազմակերպվող շաբաթօրյակները... Ե՛վ այն, որ պետք է խնդրել ՍՍՀՄ համապատասխան մինիստրություններին՝ վերանայելու քաղաքի կոմպլեքսային զարգացման հարցը. չէ՛ որ Աբովյանը դառնալու է մեր Միության արդյունաբերական կենտրոններից մեկը... Հոգսերը շատ են, և կարևորագույններից մեկը խիստ հսկողությունն է արդյունաբերական ձեռնարկությունների նախագծային կարողությունների առավել իրացման վրա:

— Ինտերնացիոնալ մեր քաղաքում շատ կարևոր է վերաբերմունքը մարդու նկատմամբ,— ասում է ընկեր Հարությունյանը,— մարդն իր աշխատանքով կարիք ունի նկատվելու: Ճիշտ է, դժվար, բայց անհրաժեշտ է աշխատողների հանդեպ լինել միաժամանակ և՛ ուշադիր ու խստապահանջ, և՛ սրտացավ ու սկզբունքային, անաչառ: Նման մթնոլորտում գործը հաճույքով է արվում, և շատ բան է արվում:

Նրա մասին ասում են՝ ջահել է մեր քարտուղարը և վստահում է իրենից շատ ու շատ ջահելների. այդպիսի վստահությունը պարտավորեցնում է. ամեն ինչ անում ես՝ անհնարինն իսկ հնարավոր դարձնելու. այդ վստահությունից ինքդ էլ բարձրանում ես քո աչքին, հավատում ուժերիդ, կարողություններիդ...

Իսկ Լեոն Ավետիսյանի մասին ասում են՝ մեր քաղաքը գտել է իր սովետի արժանավոր նախագահին. այդ շատ կարևոր է: Նա սիրում է քաղաքը. գործունյա է, հասկացող ու համարձակ... Տեղացի է Ավետիսյանը, ծանոթ են նրան ամեն սար ու քար, գիտե նույնիսկ, թե ո՛ր ծառերն են ավելի լավ աճում այստեղ: Կուսակցական եռամյա դպրոցը, Երևանի պետական համալսարանի պատմության ֆակուլտետը, ՍՄԿԿ ԿԿ առընթեր կուսակցական բարձրագույն դպրոցն ավարտած նախագահն ունի սովետական և կուսակցական աշխատանքի երկարամյա փորձ: Այժմ շատ հարցեր են մտահոգում նրան: Իսկ բնակարաններ բաշխելիս քունն էլ փախչում է նրա աչքերից. պետք է արդար լինել, օբյեկտիվ, ճշտորեն իմանալ, թե ո՛ւմ է առավել անհրաժեշտ առաջին հերթին... Իսկ այդ միշտ հեշտ չէ... Եվ հետո...

— Քաղաքը՝ քաղաք, բայց մենք դեռ քաղաքացի չունենք. քաղաքացի իր ավանդույթներով ու սովորույթներով. պարզ է, դրա համար դեռ ժամանակ է պետք, դրացիություն, համատեղ կյանք, արվեստ, կուլտուրա... Իսկ կուլտուրան... գնացքով կամ ավտոմեքենաներով չես տեղափոխի ուր հարկն է. այն ստեղծվում է ամեն օր, ամեն բառի ու մտքի, ամեն արարքի հետ... Հաճախ հաճույքով լսում եմ մեր ջահելների վեճերը երաժշտության, բանաստեղծության, այս կամ այն ներկայացման մասին: Հենց այս էլ կուլտուրայի ծնունդն է. ամեն ծնունդի պես դժվարին, տանջալի, բայց և հաճելիորեն անխուսափելի:

Իսկ հեռանկարնե՞րը մոտ ապագայում 60—70 հազար բնակչությամբ քաղաքի... դրանց մասին մեծ ոգևորությամբ պատմում են երկուսն էլ: Միայն գործող ձեռնարկությունների հաշվին թողարկվող արտադրանքի ծավալը IX հնգամյակում կավելանա 3 անգամ, կկառուցվեն նոր, կավարտվեն կիսավարտ գործարանները: Կկառուցվի կապի շենքը, այս տարի կսկսվի ուսումնական կենտրոնի կառուցումը (պոլիտեխնիկական ինստիտուտի մասնաճյուղով և էլեկտրատեխնիկումով). 1975 թ. կբացվեն բիոլոգիայի ինստիտուտը, գենետիկայի ինստիտուտի լաբորատորիաները... կառուցվում են բիոքիմիական պրեպարատների, հացի գործարանները... Շահագործման կհանձնվի կուլտուրայի պալատը՝ 800 տեղանոց դահլիճով, 15 հազար տեղանոց ստադիոնը, կըհիմնվեն նոր դպրոցներ, մսուր-մանկապարտեզներ, կձևավորվի քաղաքի հրապարակը՝ իր հուշարձաններով, կավարտվի և քաղաքի կենտրոնական զբոսայգին, կկանաչապատվի քաղաքը, կըբացվեն առևտրի, կենցաղսպասարկման նոր տաղավարներ, կկառուցվեն բնակելի նոր շենքեր...

Այդքան գործարաններ, արդյունաբերական խոշոր քաղաք և ոչ մի ծխնելույզ: Ահա թե ինչու արդյունաբերական այս կենտրոնը նաև հանգստավետ է, առողջարար...

●

Կանցնեն տարիներ... գարունը կանաչով ու ծաղկով կծածկի քաղաքի պուրակներն ու այգիները, կծփա արհեստական լիճը, ջահելները. սիրող զույգերը, արովյանցի դարձած, ձեռք-ձեռքի, կելնեն անտառածածկ սարերն Աբովյանի ու կերազեն ապագայի մասին, կնախագծեն նոր հեռանկարներն իրենց: Ու թե կարդան տողերն այս, գրված իրենց քաղաքի մասին՝ տարիներ առաջ, թերևս ժպտալով կասեն մեկ-մեկու՝ «էս որ պատահեց, մեր քաղաք հսկան մի մանուկ էր դեռ՝ յոթ-ութ տարեկան»:

ԷՄՄԱ ՍԱՐՈՅԱՆ

# ԵՐԻՏԱՍԱՐԴ ԳԻՏԱԿԱՆ ԱՇԽԱՏՈՂԻ ամբիոն

## ՓԱՍՏԱԿԱՆՈՒԹՅՈՒՆԸ ԱՄՈՒՍՆԱԿԱՆ ՀԱՐԱԲԵՐՈՒԹՅՈՒՆՆԵՐՈՒՄ

Սովետական ընտանիքի ամրապնդման, ամուսինների և զավակների անձնական ու գույքային իրավունքների և շահերի պաշտպանության նպատակով, օրենքը նախատեսում է ամուսնության գրանցման որոշակի կարգ, գրանցման փաստին տալով ուրույն իրավաբանական նշանակություն: Այդ կարգի համաձայն ամուսնությունը կատարվում է միայն քաղաքացիական կացության ակտերի գրանցման պետական մարմիններում (Հայկական ՍՍՀ ամուսնության և ընտանիքի օրենսգրքի 12-րդ հոդ.): Քաղաքացիների փաստական ամուսնական հարաբերությունների փաստի ձևակերպման, վավերացման որևէ կարգ օրենքը չի նախատեսում, չնայած նյութական իրավունքի նորմերը այդ փաստի հետ ևս կապում են որոշակի իրավական հետևանքների ծագում, փոփոխում կամ դադարում: Այդ իրավունքների իրականացումն ապահովելու նպատակով սովետական քաղաքացիական դատավարության մեջ գործում է փաստական ամուսնական հարաբերությունների մեջ գտնվելու փաստի դատական հաստատման ինստիտուտը:

Դեռևս ՌՍՖՍՀ ԿԳԿ-ի 1917 թ. դեկտեմբերի 18-ին ընդունված «Քաղաքացիական ամուսնության, երեխաների և քաղաքացիական կացության գրքերը վարելու մասին» դեկրետով երկրում օրինական համարվեց միայն գրանցված ամուսնությունը: Դեկրետի պարտադիր գրանցման նորմերը գործում էին նաև Հայաստանում, մինչև 1927 թ. նոյեմբերի 1-ը: ՀՍԽՀ 5-րդ գումարման կենտրոնական գործադիր կոմիտեի 2-րդ նստաշրջանի 1927 թ. սեպտեմբերի 18-ի որոշումով հաստատված և 1927 թ. նոյեմբերի 1-ից գործողության մեջ դրված Հայկական ՍՍՀ ամուսնության, ընտանիքի և խնամակալության օրենսգիրքը սահմանեց, որ փաստական ամուսնական հարաբերություններն իրենց իրավաբանական հետևանքների տեսակետից հավասարեցվում են գրանցված ամուսնություններին, այսինքն՝ օրենքը ճանաչում էր նաև փաստական ամուսնական հարաբերությունները:

ՍՍՀ Միության Գերագույն սովետի նախագահության 1944 թ. հուլիսի 8-ի «Հղի կանանց, բազմազավակ և միայնակ մայրերին ցույց տրվող պետական օգնությունն ավելացնելու, մայրության և մանկության պահպանությունն ուժեղացնելու, «Հերոսուհի մայր» պատվավոր կոչում սահմանելու և «Մայրական փառք» շքանշան ու «Մայրության մեդալ» մեդալ հիմնելու մասին» հրամանագրի 19-րդ հոդվածը ևս սահմանեց, որ միայն գրանցված ամուսնությունն է առաջ բերում օրենսգրքով նախատեսված ամուսինների իրավունքներն ու պարտականությունները: Հրամանագրի հիշյալ հոդվածը փաստական ամուսնական հարաբերությունների մեջ գտնվող անձանց իրավունք վերապահեց այդ հարաբերությունները ձևակերպել ամուսնությունը գրանցելու միջոցով, նշելով փաստական համատեղ կյանքի ժամանակամիջոցը: Հրամանագրի 19-րդ հոդվածի պահանջը կարող էր կատարվել միայն այն դեպքում, երբ երկու ամուսիններն էլ կենդանի էին, մինչդեռ պատերազմական պայմանները և ամուսիններից մեկի մահը (ինչպես և բնական մահը) դա անհնարին էին դարձնում: Այս կապակցությամբ անհրաժեշտ էր լրացումներ կատարել Հրամանագրում, որը մասամբ արվեց ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահության 1944 թ. նոյեմբերի 10-ի նոր Հրամանագրով:

Այդ հրամանագրով սահմանվեց, որ եթե փաստական ամուսնական հարաբերությունների մեջ գտնվող անձերից մեկը մահացել կամ անհայտ կորել է ռազմաճակատում, ապա մյուս ամուսինն իրավունք ունի այդ հարաբերությունների հաստատման խնդրով դիմել դատարան: Փաստական ամուսնական հարաբերությունների մեջ գտնվելու փաստի հաստատման դատական կարգ սահմանվեց սովետական քաղաքացիների

լայն իրավունքների կենսագործումն ապահովելու նպատակով: Մեր օրենսդրությունը ո՛չ միայն հռչակում է քաղաքացիների իրավունքները, այլև նյութական ու իրավական երաշխիքներ է ստեղծում սոցիալիստական պետության շահերի հետ ներդաշնակ միահյուսվող նրանց անձնական կամ գույքային իրավունքների պաշտպանության համար: Փաստական ամուսնական հարաբերությունների մեջ գտնվելու փաստը, եթե այն հաստատվում է օրենքով սահմանված կարգով, համահավասար է գրանցված ամուսնությանը: Նշված փաստի հետ նյութական իրավունքի նորմերը կապում են կենսաթոշակի, ժառանգման և այլ կենսական իրավունքների առաջացումը: Հետևաբար, փաստի հաստատման դատական կարգը կյանքի է կոչված քաղաքացիներին օգնելու այն բոլոր դեպքերում, երբ նրանք այս կամ այն պատճառներով չեն կարողացել ժամանակին գրանցել իրենց ամուսնությունը և մյուս ամուսնու մահվան հետևանքով հետագայում զրկվել են այդ հնարավորությունից:

«Իրավունքը սոսկ փաստի պաշտոնական ճանաչումն է»[1], քանի որ քաղաքացիների անձնական կամ գույքային իրավունքների ծագումը, փոփոխումը կամ դադարումն իրականում կախված է ոչ թե փաստերի հաստատումից, այլ հաստատվող փաստից: Ասվածից չի կարելի հետևեցնել, թե փաստերի հաստատման դատական կարգը սոսկ ձև է: Առանց այդ կարգը պահպանելու հնարավոր չէ հաստատել իրավունքների ծագման, փոփոխման կամ դադարման հիմք հանդիսացող փաստը և օգտվել դրա հետ կապված իրավունքներից: «Դատավարությունը և իրավունքը»,— ասում է Կ. Մարքսը,— այնպես սերտորեն են կապված իրար հետ, ինչպես, օրինակ, բույսի ձևերը՝ բույսերի հետ, իսկ կենդանիների ձևերը՝ կենդանիների մսի ու արյան հետ: Միևնույն ոգին պետք է շնչավորի դատավարությունը և օրենքները, քանի որ առաջինը սոսկ օրենքի կենսաձևն է, հետևաբար և նրա ներքին կյանքի արտացոլումը»[2]:

Փաստական ամուսնական հարաբերությունների մեջ գտնվելու փաստի հաստատման վերաբերյալ գործերը իրավաբանական նշանակություն ունեցող փաստերի մեջ նշանակալից տեղ են գրավում: Մինչդեռ, Հայկական ՍՍՀ ժողդատարանների պրակտիկայում ոչ միայն բացակայում է միասնությունը, այլև թույլ են տրրվում սխալներ:

Գործող օրենսդրությունը թույլատրում է փաստական ամուսնական հարաբերությունների մեջ գտնվելու փաստը հաստատել օրենքով սահմանված դեպքերում, եթե քաղաքացիական կացության ակտերի գրանցման պետական մարմիններում ամուսնությունը չի կարող գրանցվել ամուսիններից մեկի մահվան հետևանքով (Հայկական ՍՍՀ քաղ. դատ. օր-ի 246 հոդ., 4-րդ կետ): Անհրաժեշտ է բացատրել «Օրենքով սահմանված դեպքերում» կապակցությունը, որը տվյալ կոնկրետ դեպքում նույնական է «ենթակայություն» հասկացությանը:

Քննարկվող փաստի ենթակայության առաջին պայմանն այն է, որ փաստական ամուսնական հարաբերությունների մեջ գտնվող ամուսիններից մեկը պետք է մահացած լինի: Երբ կենդանի են երկու ամուսինները, նրանք պետք է փաստը պատշաճ կարգով ձևակերպեն ԶԱԳՍ-ի մարմիններում: Երկու ամուսինների կենդանության օրոք դատարանի կողմից փաստը հաստատվել չի կարող:

Փաստական ամուսնական հարաբերությունների մեջ գտնվելու փաստի ենթակայության հարցը լուծելիս պետք է նկատի ունենալ, որ ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահության 1944 թ. նոյեմբերի 10-ի Հրամանագրի ընդունումից հետո դատական պրակտիկան ապացուցեց, ր ամուսնությունը գրանցելու մասին 1944 թ. հուլիսի 8-ի Հրամանագրի 19-րդ հոդվածի պահանջը հաճախ չի կարող կատարվել ո՛չ միայն ամուսիններից մեկի ռազմաճակատում անհայտ կորելու կամ մահանալու պատճառով, այլ նաև ուրիշ դեպքերում: Ահա թե ինչու, դատական պրակտիկայի ամփոփման հիման վրա, ՍՍՀՄ Գերագույն դատարանի պլենումի 1954 թ. մայիսի 7-ի «Այն փաստերի հաստատման վերաբերյալ գործերով դատական պրակտիկայի մասին, որոնցից կախված են քաղաքացիների անձնական կամ գույքային իրավունքների ծագումը, փոփոխումը կամ դադարումը» № 3 որոշման[3] 3-րդ կետի «դ» ենթակետը սահմանեց, որ դատարանի քննությանը ենթակա են փաստական ամուսնական հարաբերությունների մեջ գտնվելու փաստի հաստատման վերաբերյալ գործերը, երբ ամուսիններից մեկի մահվան կամ Հայրենական պատերազմի ժամանակաշրջանում անհայտ կորելու հետևանքով, փաստական ամուսնական հարաբերությունները չէին կարող ձևակերպվել ամուսնությունը ԶԱԳՍ-ի մարմիններում գրանցելու միջոցով, ինչպես նաև այն առանձին բացառիկ դեպքերում, երբ ամուսիններից մեկի մահը թեև տեղի է ունեցել

[1] К. Маркс и Ф. Энгельс, Соч., т. 4 1955, стр. 115.

[2] К. Маркс и Ф. Энгельс, Соч., т. 1 1955, стр. 158.

[3] Сборник постановлений пленума Верховного Суда СССР 1924—1963 гг. Изд. «Известия Советов трудящихся СССР», М., 1964, стр. 108—113.



Հայրենական պատերազմն ավարտվելուց հետո, բայց ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահության 1944 թ. հուլիսի 8-ի հրամանագրի հրատարակումից առաջ ծագած փաստական ամուսնական հարաբերությունները շարունակվել են մինչև ամուսնու մահվան պահը և օբյեկտիվ հանգամանքները (երկարատև ծանր հիվանդությունը և ամուսնության գրանցումը խանգարող այլ հանգամանքներ) հնարավորություն չեն տվել ամուսիններին 1944 թ. հուլիսի 8-ից հետո ամուսնությունը գրանցել ԶԱԳՍ-ի մարմիններում:

ՍՍՀՄ Գերագույն դատարանի պլենումի 1954 թ. մայիսի 7-ի որոշման 3-րդ կետի «դ» ենթակետի կիրառման պրակտիկան ևս ապացուցեց փաստական ամուսնական հարաբերությունների հաստատման ենթակայության հարցում եղած սահմանափակումների աննպատակահարմարությունը, քանի որ ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահության 1944 թ. հուլիսի 8-ի հրամանագրի 19-րդ հոդվածը փաստական ամուսնական հարաբերությունների մեջ գտնվող անձանց ոչ թե պարտավորեցնում էր պարտադիր կարգով ձևակերպել ամուսնությունը, այլ նշում էր, որ նրանք «կարող են» անել այդ: Եվ այն անձինք, որոնք Հրամանագրի հրատարակումից հետո զանազան պատճառներով չէին ձևակերպել փաստական ամուսնական հարաբերությունները, չէին կարող իրականացնել այդպիսի հարաբերություններից ծագող իրենց կենսաթոշակի, նպաստի, ժառանգման և այլ իրավունքները: Ահա թե ինչու գործող օրենսդրությունը հրաժարվեց այդ բոլոր սահմանափակումներից և փաստական ամուսնական հարաբերությունների հաստատումը թույլատրեց օրենքով սահմանված այն բոլոր դեպքերում, երբ քաղաքացիական կացության ակտերի գրանցման մարմիններում ամուսնությունը չի կարող գրանցվել ամուսիններից մեկի մահվան հետևանքով: ՍՍՀՄ Գերագույն դատարանի պլենումի 1966 թ. փետրվարի 25-ի «Իրավաբանական նշանակություն ունեցող փաստերի հաստատման վերաբերյալ գործերով դատական պրակտիկայի մասին» № 2 որոշման 6-րդ կետը այդ կապակցությամբ պարզաբանել է, որ փաստական ամուսնական հարաբերությունների մեջ գտնվելու փաստի հաստատումը կարող է տեղի ունենալ այն բոլոր դեպքերում, երբ այդ հարաբերությունները ծագել են մինչև ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահության 1944 թ. հուլիսի 8-ի Հրամանագրի հրատարակումը: Այսպիսով, օրենքը փաստական ամուսնական հարաբերությունների մեջ գտնվելու փաստի հաստատումը նախկինի նման կախման մեջ չի դնում բացառիկ հանգամանքներից: Մինչդեռ առանձին դատարաններ հրաժարվում են փաստի հաստատման վերաբերյալ դիմումը վարույթ ընդունելուց կամ մերժում են փաստի հաստատումը, պատճառաբանելով, որ կողմերը հնարավորություն են ունեցել 1944 թ. հուլիսի 8-ից հետո գրանցել ամուսնությունը: Այսպիսի դեպքերում տուժում են շահագրգռված անձանց գույքային շահերը, քանի որ նրանք չեն կարող իրավունքի հարցը լուծող մարմիններին ներկայացնել փաստական ամուսնությունը հաստատող պատշաճ փաստաթուղթ:

Համանման վիճակ է ստեղծվում նաև կենսաթոշակի պահանջով դիմելիս, երբ ամուսնությունը գրանցված չէ քաղաքացիական կացության ակտերի գրանցման մարմիններում: Կերակրողին կորցնելու կապակցությամբ խնդրատուն կարող է դիմել կենսաթոշակի պահանջով միայն փաստական ամուսնական հարաբերությունների մեջ գտնվելու փաստը հաստատող դատական վճիռ ներկայացնելուց հետո:

Փաստական ամուսնական հարաբերությունների մեջ գտնվելու փաստը պետք է տարբերել ամուսնության գրանցման փաստից: Առաջին դեպքում խոսքը վերաբերում է ԶԱԳՍ-ի մարմիններում ընդհանրապես չձևակերպված, իսկ երկրորդ դեպքում՝ նախկինում պատշաճ կարգով ձևակերպված ամուսնության մասին: Եվ ճիշտ չէ այն դատարանների պրակտիկան, որոնք փաստական ամուսնական հարաբերությունների մեջ գտնվելու փաստի հաստատման փոխարեն հաստատում են ամուսնության գրանցման փաստ կամ վարվում են հակառակ կերպ: Այսպես, Կիրովական քաղաքի և Երևանի Սպանդարյանի շրջանային ժողդատարաններում փաստական ամուսնական հարաբերությունների մեջ գտնվելու փաստի հաստատման վերաբերյալ գործերով բոլոր վճիռներում նշված է, որ դիմողը հանգուցյալի «օրինական» ամուսինն է: Մինչդեռ, ինչպես նշվել է վերը, գործող օրենսդրությունը «օրինական» ամուսնության տակ հասկանում է միայն քաղաքացիական կացության ակտերի գրանցման մարմիններում կատարված ամուսնությունները:

Առանձին դատարաններ հաճախ տարբերություն չեն դնում փաստական ամուսնական հարաբերությունների մեջ գտնվելու և անձի՝ ուրիշի խնամքի տակ գտնվելու փաստերի իրավաբանական հետևանքների միջև: Հայտնի է, որ սոցապ մարմինները կերակրողին կորցրած անաշխատունակ ամուսնուն կենսաթոշակ նշանակում են միայն այն դեպքում, երբ սա դիմումին կից ներկայացնում է ամուսնության վկայական կամ փաստական ամուսնական հարաբերությունները հաստատող դատական վճիռ: Այսպիսով, միայն կերակրողի խնամքի տակ կենդանի մնացած անաշխատունակ ամուսնու գտնվելու փաստը կենսաթոշակի իրավունք չի առաջաց-

նում: Այդ իրավունքը ծագում է նախ և առաջ այն դեպքում, երբ հաստատված է փաստական ամուսնական հարաբերությունների մեջ գտնվելու փաստը: Ահա այս հանգամանքն է, որ երբեմն անտեսվում է փաստը հաստատող դատարանների կողմից:

Մեր հանրապետության ժողովրդական դատարանների համար պրակտիկ նշանակություն ունեն արտասահմանյան երկրներում սփյուռքահայության կողմից կրոնական ծեսերով կատարված ամուսնությունների փաստի հաստատման վերաբերյալ գործերը: Նման ամուսնությունը պետք է համարել օրինական ամուսնության տարատեսակ, քանի որ արտասահմանյան երկրների օրենսդրությամբ եկեղեցական մատյաններում կատարվող գրանցումներն ընդունվում են օրենքի կողմից: Այդ է պատճառը, որ Հայկական ՍՍՀ ամուսնության և ընտանիքի օրենսգրքի 6-րդ հոդվածի 4-րդ մասի համաձայն հայրենադարձների՝ մինչև Հայկական ՍՍՀ վերադառնալը արտասահմանյան երկրներում կրոնական ծեսերով կատարված ամուսնությունները Հայկական ՍՍՀՄ-ում ճանաչվում են վավերական: Հայրենադարձների կրոնական ծեսերով կատարված ամուսնության (եթե բացակայում է համապատասխան փաստաթուղթ) փաստը հաստատելու փոխարեն դատարանները հաճախ հաստատում են փաստական ամուսնական հարաբերությունների մեջ գտնվելու փաստ:

Փաստական ամուսնական հարաբերությունների մեջ գտնվելու փաստը դատարանի կողմից կարող է հաստատվել միայն այն ժամանակ, երբ այդպիսի հարաբերությունները շարունակվել են մինչև ամուսիններից մեկի մահը: Դրա համար էլ դատարանը պարտավոր է գործի քննության ընթացքում պարզել և փաստական ամուսնական հարաբերությունների մեջ գտնվելու ժամանակամիջոցը, իսկ եթե պարզվում է, որ նման հարաբերությունները դադարել են մինչև ամուսիններից մեկի մահը՝ պետք է կայացնել փաստի հաստատումը մերժող վճիռ:

Պրակտիկայում հանդիպում ենք այնպիսի դեպքերի, երբ երկու ամուսիններն էլ կենդանի են և կրում են նույն ազգանունը, սակայն նրանց ամուսնությունը ԶԱԳՍ-ում գրանցված չէ: Դա հետևանք է այն բանի, որ անձնագրեր տալիս համապատասխան մարմինները (անձնագրային սեղաններ) չեն պահանջում ամուսնության վկայական և անձնագրերը լրացնում են դիմողի բանավոր հայտարարության հիման վրա: Հետագայում ԶԱԳՍ-ի մարմինները մերժում են կողմերի ամուսնության գրանցումը, պատճառաբանելով, որ նրանք նույն ազգանունն են կրում, հետևաբար նախկինում գրանցված են եղել: Ամուսիններից մեկի մահվան դեպքում միայն դատարանները պետք է հաստատեն փաստական ամուսնական հարաբերությունների մեջ գտնվելու փաստը:

Եթե անձը փաստական ամուսնական հարաբերությունների մեջ է գտնվել մինչև 1944 թ. հուլիսի 8-ի հրամանագրի հրատարակումը, իսկ ապա ամուսնու մահից հետո այլ անձի հետ մտել է գրանցված ամուսնության մեջ, ապա այդ հանգամանքը խոչընդոտ չի հանդիսանում փաստական ամուսնական հարաբերությունների մեջ գտնվելու փաստի հաստատման համար, քանի որ այդպիսի հարաբերությունները օրենքի կողմից ճանաչվել են մինչև Հրամանագրի հրատարակումը: Այդ փաստը կարող է հաստատվել այն դեպքում, երբ մահացածի ամուսինը դատարան է դիմել կերակրողի մահվանից հետո հինգ տարվա ընթացքում, կամ անկախ զառամության տարիքին հասնելու կամ հաշմանդամ դառնալու ժամանակից, եթե չունի չափահաս աշխատունակ զավակներ (Պետական կենսաթոշակներ նշանակելու և վճարելու կարգի մասին կանոնադրության 64-րդ կետ):

Փաստական ամուսնական հարաբերությունների մեջ գտնվելու փաստի հաստատման խնդրով դատարանին դիմելու իրավունք ունեն ինչպես կենդանի մնացած ամուսինը, այնպես էլ շահագրգռված այլ անձինք և, առաջին հերթին, այդպիսի հարաբերություններից ծնված երեխաները:

Փաստական ամուսնական հարաբերությունների մեջ գտնվելու փաստը հատուկ վարույթի կարգով չի կարող հաստատվել, եթե դա անհրաժեշտ է հետագայում ալիմենտի պահանջ ներկայացնելու համար: Նման դեպքերում այն ենթակա է հաստատման ընդհանուր հայցային կարգով ալիմենտի պահանջը քննարկելիս:

Փաստական ամուսնական հարաբերությունների մեջ գտնվելու փաստը հաստատող ապացույցներ են համատեղ բնակվելը, ընդհանուր տնտեսություն վարելը, ամուսինների կողմից երեխաներին համատեղ դաստիարակելը կամ խնամելը, երրորդ անձանց առջև իրենց ամուսնական հարաբերությունները արտահայտելը, նամակագրական կապը, փոխադարձ նյութական օգնությունը և այլն:

Քանի որ գործող օրենսդրությունը կենսաթոշակի իրավունքը կապում է նաև անձի՝ ուրիշի խնամքի տակ գտնվելու փաստի հետ, ուստի դատարանները կարող են փաստական ամուսնական հարաբերությունների մեջ գտնվելու փաստը հաստատելիս հաստատել նաև ամուսնու խնամքի տակ դիմողի գտնված լինելու փաստը: Եթե փաստական ամուսնական հարաբերություններից ծնվել են երեխաներ, դատարանը պետք է փաստի հաստատման վերաբերյալ վճռում նշում կատարի այդ մասին, ցույց տալով երեխաների անունները, ծննդյան թվերը, քանի որ այդ հարաբերություններից ծնված երեխաները փաստի հաստատումից հետո իրավունքների և պարտականությունների հարցում հավասարեցվում են գրանցված ամուսնությունից ծնվածներին:

Քիչ չեն դեպքերը, երբ, սահմանված կարգին հակառակ, դատարանները վարույթ են ընդունում և քննարկում փաստը հաստատելու վերաբերյալ դիմումներ, չնայած դիմումը վերաբերում է քաղաքացիական կացության ակտերի գրանցումների անճշտությունները վերացնելուն, այսինքն՝ կատարում են դատական մարմինների վրա օրենքով չդրված ֆունկցիաներ:

Փաստական ամուսնական հարաբերությունների մեջ գտնվելու փաստի հաստատման վերաբերյալ գործերով դատական առանձին մարմիններ թույլ են տալիս նաև այլ կարգի սխալներ: Նրանք քննարկվող կատեգորիայի գործերով դիմողներին համատարած կերպով անվանում են «հայցվոր»-ներ, իսկ դիմումը՝ «հայց»: Այստեղ մոռացության է տրվում այն հանգամանքը, որ հատուկ վարույթում առկա չէ իրավունքի վերաբերյալ վեճը և որ այս վարույթի կարգով քննարկվող գործերով դատարան դիմած անձը մեկ այլ անձի դեմ որևէ նյութա-իրավական պահանջ չի ներկայացնում, ուստի չկան նաև հակադիր շահերով օժտված կողմերը՝ հայցվորն ու պատասխանողը և խախտված կամ վիճարկվող իրավունքների վերականգնմանը կամ այդ իրավունքներից նորմալ օգտվելուն խոչընդոտող հանգամանքների վերացմանն ուղղված առարկայական և դատավարական գործուն միջոցը՝ հայցը: Թվում էր, թե Հայկական ՍՍՀ Գերագույն դատարանի պլենումը, որը 1969 թ. հունիսի 13-ին քննարկեց իրավաբանական նշանակություն ունեցող փաստերի հաստատման վերաբերյալ գործերի դատական պրակտիկան ժողովրդական դատարաններում և ընդունեց տեսություն, այս հարցի վերաբերյալ կտար անհրաժեշտ ցուցումներ, սակայն ընդունված տեսության մեջ նորից է խոսվում «հայցվոր»-ի «հայցվող փաստ»-ի, «հայցապահանջ»-ի մասին: Ակնհայտ է, որ ընդունված տեսությունը այդ վիճակով իր նպատակին ծառայել չի կարող: Ընդհակառակը, այն կարող է ապակողմնորոշել դատական մարմիններին:

Հանրապետության պրակտիկ իրավաբանները պետք է խորապես ուսումնասիրեն հատուկ վարույթը կարգավորող օրենսդրությունը և վերջ տան քննարկվող կատեգորիայի գործերի նկատմամբ երբեմն ցուցաբերվող անուշադրությանը, որպիսի հանգամանքը, անկասկած, կարող է նպաստել մատնանշված թերությունների վերացման:

Ռ. Գ. ՊԵՏՐՈՍՅԱՆ



# ԱՐՀՄԻՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ԱՌՕՐՅԱՆ

Հոգատարությունը բանվոր-ծառայողների շահերի և իրավունքների պաշտպանության նկատմամբ, նրանց աշխատանքի և կենցաղի պայմանների բարելավումը, առողջապահության ու հանգստի կազմակերպումը Վ. Ի. Լենինը համարում էր արհեստակցական միությունների կարևորագույն խնդիրներից և պարտականություններից մեկը: Դա բխում է արհմիությունների բուն էությունից, որպես աշխատավորների ամենամասսայական կազմակերպության, որը կոչված է պաշտպանելու նրանց շահերը: Աշխատավորների շահերի պաշտպանության ֆունկցիան արհմիությունների համար օբյեկտիվ անհրաժեշտություն է, այն ոչ միայն պետք է պաշտպանվի, այլև լրացվի նոր բովանդակությամբ: Այդ առումով էլ Լենինն արհմիությունները բնութագրել է որպես աշխատավորների շահերի պաշտպանության լավագույն կազմակերպություն:

Սոցիալիզմի և կոմունիզմի շինարարության ժամանակաշրջանում արհմիութենական շարժման տեսական հիմքերը և նրա պրակտիկ խնդիրները մշակել է Վ. Ի. Լենինը: Առաջնորդը բարձր է գնահատել արհմիությունների դերը սովետական իշխանության հաղթանակի, մեծ հոկտեմբերի նվաճումների պաշտպանության և սոցիալիստական շինարարության կազմակերպման բնագավառում:

Ղեկավարվելով Լենինի ցուցումներով՝ կուսակցությունը մշտական հոգատարություն հանդես բերեց արհմիությունների ամրապնդման, պետական, տնտեսական և կուլտուրական շինարարության մեջ նրանց դերի ու հեղինակության բարձրացման նկատմամբ: Արհմիությունների մասին լենինյան ուսմունքը ստեղծագործական զարգացում ստացավ կոմունիստական կուսակցության XX, XXII, XXIII համագումարների, ՍՄԿԿ Կենտկոմի վերջին պլենումների որոշումներում: Այդ պատմական փաստաթղթերում ընդգծված է, որ, պետական օրգանների զարգացման և կատարելագործման հետ միասին, կուսակցությունը կիրականացնի արհմիությունների դերի բարձրացումը և նրանց գործունեության դեմոկրատական շրջանակների ընդլայնումը:

Մեր երկրում, սոցիալիզմի լրիվ և վերջնական հաղթանակի շնորհիվ, փիրխարի փոփոխություններ տեղի ունեցան բանվոր դասակարգի և նրա ամենամասսայական կազմակերպության՝ արհմիությունների կյանքում: Աստիճանաբար բարձրացավ աշխատավորության տեխնիկական-կուլտուրական մակարդակը, բարելավվեց բանվոր-ծառայողների նյութական վիճակը:

Սովետական արհմիությունները կուսակցության ղեկավարությամբ մեծ գործ կատարեցին աշխատավորների նյութական բարեկեցությունն ու կուլտուրական մակարդակը բարձրացնելու համար: Նրանք իրենց ամբողջ գործունեության ընթացքում ելնում են Վ. Ի. Լենինի այն ցուցումից, որ «Պրոլետարիատի ամենագլխավոր ու ամենաարմատական շահը նրա կողմից պետական իշխանությունը նվաճելուց հետո՝ հանդիսանում է պրոդուկտների քանակի ավելացումը, հասարակության արտադրողական ուժերի բարձրացումը հսկայական չափերով» (Երկեր, հ. 33, էջ 217):

Կոմունիստական շինարարության արդի փուլում ավելի են ընդլայնվում արհմիությունների ազդեցության ու ղեկավարության շրջանակները, նրանց ֆունկցիաներն աշխատանքի պաշտպանության ու աշխատանքային վեճերի լուծման, սոցիալական ապահովության և առողջապահության ասպարեզում:

Ներկայումս արհմիությունները վերահսկողություն են իրականացնում աշխատանքի պաշտպանության, արտադրական սանիտարիայի վիճակի նկատմամբ, ակտիվորեն մասնակցում պետական սոցիալական ապահովագրության, սանիտարական առողջապահական հիմնարկությունների գործունեությանը: Նրանք մշակում և հաստատման են ներկայացնում սոցիալական և տարիֆային ապահովագրության անդամավճարների կանոնները, հրատարակում են հրահանգներ և այլ հարցերի վերաբերյալ բացատրություններ:

Արհմիութենական կազմակերպությունները սոցիալական ապահովագրության նպաստներ են վճարում և մասնակցում սոցիալական ապահովագրության մարմինների կողմից բանվոր-ծառայողներին ու կոլտնտեսականներին թոշակավորելու գործին: Նրանց իրավասությանն են հանձնվում պետությանը պատկանող նյութատեխնիկական և կուլտուր-կենցաղային որոշ օբյեկտներ, որոնք համարվում են համաժողովրդական սեփականություն: Այսպես, արհմիություններին են հանձնվել տնտհաշվարկային բոլոր սանատորիաներն ու հանգստյան տները:

Կոմունիստական կուսակցությունը և սովետական կառավարությունը, արհմիությունների օգնությամբ, կարևոր միջոցառումներ են իրականացրել աշխատավորների նյութական և կուլտուրական մակարդակի բարձրացման ասպարեզում: Սովետական պետության զարգացման բոլոր էտապներում այդ հարցը մշտապես գտնվել է կուսակցության, արհմիությունների ուշադրության կենտրոնում: Իրականացվել են անվճար բուժսպասարկում, մայրության և մանկության պահպանություն, պետության միջոցների հաշվին տարեցտարի բարելավվում է աշխատավորների սոցիալական ու կենսաթոշակային ապահովագրությունը: ՍՍՀՄ-ում 34 միլիոն մարդ ստանում է ծերության և հաշմանդամության կենսաթոշակ, մեծ միջոցներ են հատկացվում բանվորների և ծառայողների բուժումն ու հանգիստը կազմակերպելու համար:

Վերջերս ՍՍՀՄ Մինիստրների սովետը և ՀԱՄԿԽ-ը հավանություն տվեցին կոլտնտեսականների սոցիալական ապահովագրության կենտրոնացված միութենական ֆոնդի ստեղծման ու օգտագործման կարգի վերաբերյալ կոլտնտեսությունների միութենական խորհրդի առաջարկությանը: Կոլտնտեսականների սոցիալական ապահովագրության իրականացումը դրվեց արհմիութենական կազմակերպությունների վրա:

Հարկերի աստիճանաբար վերացումը և աշխատավարձի բարձրացումը, թոշակների ավելացումը և աշխատանքային օրվա կրճատումը, բնակչության համար սպառման առարկաների արտադրության վճռական ընդլայնումը, բնակարանային շինարարության հսկայական թափը՝ այս բոլորը հնարավորություն տվեցին վերջին տարիներին զգալի չափով բարձրացնել ժողովրդի կենսամակարդակը:

Աշխատավորների կենսամակարդակի հետագա բարձրացման գործում կարևոր նշանակություն ունեցավ կենսաթոշակների մասին 1956 թ. ընդունված օրենքը: Այն ընդլայնեց կենսաթոշակառուների իրավունքները, զգալիորեն ավելացրեց կենսաթոշակները և բարձրացրեց արհմիությունների դերն այդ գործում:

Հայաստանի արհմիությունները, օրինակ, ակտիվորեն մասնակցում են բանվորներին ու ծառայողներին կենսաթոշակ նշանակող սոցիալական ապահովագրության օրգանների աշխատանքներին, ունեն կուլտուր-լուսավորական հիմնարկությունների լայն ցանց, ղեկավարում են մասսայական սպորտն ու տուրիզմը:

ՀԱՄԿԽ-ը, ճյուղային արհմիությունների հանրապետական կոմիտեները, օգտագործելով իրենց տրված իրավունքները, ուժեղացրել են մասսայական-հասարակական հսկողությունը սոցիալական ապահովագրության մարմինների նկատմամբ:

1962 թվականի հունվարին ՍՍՀՄ Մինիստրների սովետը և ՀԱՄԿԽ-ն որոշում ընդունեցին «Բանվոր-ծառայողների կենսաթոշակների ապահովման հարցերի լուծմանը արհմիությունների մասնակցությունն ընդլայնելու մասին»: Դրա համաձայն բոլոր ձեռնարկությունների, արտադրամասերի ու հիմնարկությունների արհմիութենական կազմակերպություններին կից, որտեղ աշխատողների թիվը գերազանցում էր 100 հոգուց, ստեղծվեցին կենսաթոշակային հանձնաժողովներ: Վերջիններս ադմինիստրացիայի հետ նախապատրաստում են կենսաթոշակավորողների համար անհրաժեշտ փաստաթղթերը և դրանք հանձնում սոցապի օրգաններին՝ հարցը վճռելու: Այսպես, օրինակ, Երևանի ալյումինի գործարանի արհմիութենական կոմիտեին կից կազմակերպված կենսաթոշակային հանձնաժողովը ոչ միայն ժամանակին նախապատրաստում է կենսաթոշակավորվողների փաստաթղթերը, այլև մշտապես հոգ տանում բանվորների կուլտուր-կրթական մակարդակի բարձրացման մասին:

Խրախուսելի աշխատանք են կատարում նաև Քաջարանի պղնձամոլիբդենային, Ալավերդու պղնձաքիմիական, Կիրովականի Մյասնիկյանի անվան քիմիական կոմբինատի, Երևանի էլեկտրալամպերի գործարանի և արդյունաբերական շատ այլ ձեռնարկությունների արհմիութենական կազմակերպություններին կից ստեղծված կենսաթոշակային հանձնաժողովները: Սակայն արհմիութենական մի շարք կոմիտեներ իրենց գործն ավարտել են նման հանձնաժողովներ ստեղծելով և չեն հետաքրքրվում նրանց գործունեությամբ: Դա է պատճառը, որ մի շարք ձեռնարկություններում այդ հանձնաժողովները կրում են ձևական բնույթ: Այստեղից էլ այն լուրջ թերությունները, որ գոյություն ունեն կենսաթոշակների սահմանման ու դրանց վճարման գործում: Օրինակ՝ Երևանի գարեջրի գործարանի մեխանիկ Պողոս Էդիլյանի թոշակավորման հարցը Օրջոնիկիձեի շրջսոցապբաժինը լուծել է 13 ամսվա ընթացքում միայն:

Սովետական Միության արագընթաց զարգացման շնորհիվ զգալի չափով բարձրացել են ժամանակավոր անաշխատունակության նպաստների չափերը, սահմանվել են կենսաթոշակային ապահովվածության նոր արտոնություններ, աճել են արհմիությունների դրամական միջոցները: Հայաստանի արհմիությունների սոցիալական ապահովագրության բյուջեն, օրինակ, վերջին 10 տարում ավելացել է 3 անգամ:

Արհմիությունների մշտական ուշադրության կենտրոնում են բանվոր-ծառայողների աշխատանքի կազմակերպման ու վարձատրության բարելավման հարցերը, ինչպես նաև հոգատարությունն արտադրության սանիտարա-հիգիենիկ պայմանների և աշխատանքի պաշտպանության նկատմամբ: ՍՄԿԿ XXIII համագումարը արհմիություններից պահանջեց «...ավելի շատ հոգ տանել բանվորների և ծառայողների աշխատանքի ու կենցաղի կազմակերպման մասին» (ՍՄԿԿ XXIII համագումարի նյութերը, Ե., 1967, էջ 312):

Արհմիությունները հետևողականորեն կենսագործում են կուսակցության պահանջները, զբաղվում աշխատավորության կենցաղային սպասարկման բարելավմամբ: Նրանք հասարակական հիմունքներով գործող տարբեր հանձնաժողովների ու վերահսկիչների միջոցով հսկողություն են սահմանում սպասարկման հետ կապված բոլոր

ձեռնարկությունների և հիմնարկությունների գործունեության նկատմամբ:

Բնակչության կոմունալ-կենցաղային սպասարկումն անընդհատ ծավալվում և կատարելագործվում է: Վերջին տարիներին կիրառվում են սպասարկման նոր ձևեր: Նոր միջոցառումներ են իրականացվում գյուղական վայրերում բնակչության կենցաղային սպասարկումը քաղաքի մակարդակին մոտեցնելու համար:

Կոմունալ-կենցաղային ձեռնարկությունների աշխատանքի նկատմամբ արհմիությունների կողմից հսկողությունն ապահովելու, սպասարկման հետագա բարելավման գործում աշխատավորներին լայնորեն ներգրավելու նպատակով՝ ֆաբրիկա-գործարանային տեղական կոմիտեներին կից ստեղծված են հասարակական հսկողության հանձնաժողովներ ու խմբեր:

Սովետական ժողովրդի բարեկեցության անի կարևոր միջոցառումներից մեկն էլ առողջապահության, բուժսպասարկման հետագա բարելավումն է: Այդ բնագավառում արհմիությունների դերը բարձրացնելու նպատակով՝ ՍՄԿԿ Կենտկոմը և ՍՍՀՄ Մինիստրների սովետն ընդունել են մի շարք կարևոր որոշումներ: Մեծ նշանակություն ունեցավ նրանց 1960 թվականի հունվարի 14-ի «Ազգաբնակչության առողջապահության պահպանման ու բժշկական սպասարկման հետագա բարելավման միջոցառումների մասին» որոշումը, որի համաձայն բոլոր առողջարանները (բացի մանկական և տուբերկուլյոզայինի), հանգստյան տները, կուրորտային բուժման պոլիկլինիկաները, գիշերօթիկները հանձնվեցին արհմիություններին:

1970 թ. դեկտեմբերին տեղի ունեցած Հայկական ՍՍՀ յոթերորդ գումարման Գերագույն սովետի սեսիան հաստատեց Հայկական ՍՍՀ առողջապահության վերաբերյալ օրենքը: Այնտեղ ասված է, արհմիությունները պետք է առանձնահատուկ հոգատարություն ցուցաբերեն աշխատավորության նյութական և կուլտուրական մակարդակը բարձրացնելու, բանվոր-ծառայողների աշխատանքի, կենցաղի և հանգստի պայմանների բարելավման նկատմամբ:

Արհմիություններն հսկայական աշխատանք են կատարում բանվոր-ծառայողների հանգիստը կազմակերպելու, բնակչության սանատորա-կուրորտային սպասարկման կուլտուրան բարձրացնելու, առողջությունն ամրապնդելու, նրանց կյանքի տևողությունը երկարացնելու ասպարեզում: Միայն 1965—1969 թվականների ընթացքում սոցիալական ապահովագրության միջոցների հաշվին, բուժման և հանգստյան ուղեգիր են ստացել 23 միլիոն աշխատավորներ, իսկ 23 միլիոն երեխաներ իրենց արձակուրդն են անցկացրել պիոներական ճամբարներում:

Այդ ժամանակամիջոցում արհմիությունները համարյա 600 միլիոն ռուբլի են ներդրել առողջարանների զարգացման նպատակով: Այդ գումարի ավելի քան կեսը ծախսվել է նոր առողջարանների կառուցման վրա (տե՛ս «Советские профсоюзы», № 15, 1969, стр. 10):

Վերջին տարիների ընթացքում մեր հանրապետությունում ընդլայնվել է արհմիութենական սանատորիաների, հանգստյան տների, ինչպես նաև առողջարանների ցանցը: 1965—1970 թթ. շահագործման հանձնվեցին սանատորիական նոր առանձնաշենքեր՝ Արզնիում, Կիրովականում, Լոռիում, Ծաղկաձորում, Լենինականում, հանգստյան տներ՝ Ստեփանավանում, Գորիսում և այլ տեղերում: ՀԱՄԿԽ-ի ուղեգրերով միայն 1969 թվականին սանատորիաներում, հանգստյան տներում սանատորիա-պրոֆիլակտորիաներում, տուրիստական բազաներում բուժվել և հանգստացել են մոտ 85 հազար բանվոր-ծառայողներ, իսկ պիոներական ճամբարներում և մանկական առողջարաններում՝ 70 հազար երեխա:

Արհմիությունները զգալի աշխատանք են կատարում նաև տուրիստական էքսկուրսիաների, արշավների, ինչպես նաև արտասահմանյան տուրիզմի կազմակերպման ասպարեզում:

Այս ամենից երևում է, որ արհմիությունները հետապնդում են մի նպատակ՝ անել այնպես, որ սովետական մարդիկ վարեն ավելի բարեկեցիկ կյանք: Հոգատարությունը բանվոր ծառայողների նկատմամբ, նրանց աշխատանքի, առողջության և կենցաղային պայմանների բարելավումը եղել ու մնում է սովետական արհմիությունների ուշադրության հիմնական առարկան:

Ռ. Կ. ՆԶԵԿՅԱՆ



# ԸՆԹԵՐՑՈՂՆԵՐԸ ԳՐՔԵՐԻ ՄԱՍԻՆ



## ՀՐԱՏԱՐԱԿԵԼ Է «ԳԻՏԵԼԻՔ» ԸՆԿԵՐՈՒԹՅՈՒՆԸ

*Հանրապետության կեսդարյա վիթխարի նվաճումների պրոպագանդումը մեծ ու շնորհակալ գործ է: Դրան ջանասիրությամբ ձեռնամուխ է եղել նաև Հայաստանի «Գիտելիք» ընկերությունը, որը պարբերաբար գրքույկներ է հրատարակում, որոնք ակնառու փաստերով, պարզ ու հանրամատչելի լեզվով ընթերցողին ներկայացնում են օրեցօր ծաղկող առանձին քաղաքների ու շրջանների հիսնամյա փառավոր կենսագրությունը, նրանց ստեղծագործ առօրյան, նորոգ կյանքը:*

*Այդպիսի գրքույկներ են հրատարակված Լենինական, Կիրովական, Ալավերդի քաղաքների, Հրազդան, Կամո, Ապարանի, Սիսիանի, Ախուրյանի և այլ շրջանների մասին:*

*Դրանցում ընթերցողը հետաքրքրական բազմաթիվ փաստեր ու տեղեկություններ կգտնի սովետական իշխանության տարիներին մեծ զարգացման հասած ժողովրդական տնտեսության, կուլտուրայի ու լուսավորության, ինչպես նաև աշխատավորների բարեկեցության բարձրացման մասին:*

*Այս առումով ուշագրավ է Հ. Վ. Թարջումանյանի* Բարգավաճող Կիրովականը *գրքույկը, ուր հեղինակը պատմում է, թե ինչպես նախկին խղճուկ գյուղաքաղաք Ղարաքիլիսան մի քանի տասնամյակում դարձել է համամիութենական ճանաչում ստացած արդյունաբերական խոշոր կենտրոն. գրքույկում փաստերով տրված է մի շարք ձեռնարկությունների ամփոփ նկարագիրը: Այսպես, ընթերցողը տեղեկանում է, որ Ալ. Մյասնիկյանի անվան քիմիական գործարանն այժմ երկրի խոշորագույն ձեռնարկություններից է, որի արտադրանքի շատ տեսակներ արտահանվում են Իրան, Պակիստան, Կուբա, Գվինեա, ԱՄՀ և այլ երկրներ: Ձեռք բերած արտադրական լավագույն ցուցանիշների համար քիմիագործները մի քանի անգամ արժանացել են ՍՍՀՄ քիմիական արդյունաբերության ձեռնարկությունների միջև ծավալված սոցմրցության փոխանցիկ դրոշին և դրամական մրցանակի:*

*Արտադրական կարողությամբ քաղաքի երկրորդ ձեռնարկությունը Կամոյի անվան տրիկոտաժի ֆաբրիկան է:*

*Վերջին երկու տասնամյակում Կիրովականը հայտնի դարձավ նաև ճշգրիտ հաստոցաշինության, ավտոմատ և էլեկտրատեխնիկական սարքաշինության ասպարեզում: Կիրովականի մակնիշով ճշգրիտ հաստոցներն այժմ արտահանվում են շատ երկրներ, ինչպես՝ Անգլիա, Չեխոսլովակիա, ԳԴՀ, Հնդկաստան, Կուբա, Սիրիա և այլուր: Չափազանց մեծ է «Ավտոմատիկա» գործարանի թողարկած սարքերի ժողովրդատնտեսական նշանակությունը:*

*Միութենական խոշոր ձեռնարկություններից է քիմիական մանրաթելի գործարանը: Քաղաքի արդյունաբերական 29 ձեռնարկությունները միայն 1968 թվականին թողարկել են ավելի քան 180 միլիոն ռուբլու արտադրանք:*

*Քաղաքում ստեղծվել են նաև գիտական հիմնարկություններ, բարձրագույն ուսումնական հաստատությունների մասնաճյուղեր, մասնագիտական դպրոցների ու տեխնիկումների լայն ցանց: Այստեղ գործում է համամիութենական ճանաչում գտած «Հայաստան» առողջարանը:*

*Համակողմանի ներկայացնելով արդյունաբերական քաղաքի բազմաբովանդակ առօրյան, հեղինակը համառոտակի անդրադառնում է նաև նրա զարգացման լայն հեռանկարներին, որոնք պայմանավորված են ազգաբնակչության աճով, բնակելի, կուլտուրական և արդյունաբերական շինարարության մեծ ծրագրերով:*

*Հետաքրքրությամբ է կարդացվում Վ. Նորյանի* Շիրակի հովտի գեղեցկուհին *ծավալուն ակնարկ-գրքույկը՝ նվիրված Լենինականին: Շարադրանքի ջերմությունն ու պատկերավորությունը հաճելի են դարձնում գրքույկի ընթերցումը:*

*Հակիրճ անդրադառնալով Ալեքսանդրապոլի ծանր ու թշվառ վիճակին,* Լենինյան տրադիցիաների քաղաքը *խորագրի տակ հեղինակը շարադրում է տեղի աշխատավորության հեղափոխական շարժումների հակիրճ պատմությունը և ապա ծանոթացնում վերածնված Լենինականի կենսահորդ առօրյային, նրա մարդկանց բեղուն աշխատանքին, արդյունաբերական, շինարարական ձեռնարկությունների, տրանսպորտի բնագավառի ակնառու նվաճումներին, գիտության ու կուլտուրայի օջախների արդյունավետ գործունեությանը, քաղաքի զարգացման լայն հեռանկարներին և այլն:*

*Հայաստանի հնագույն բնակավայրերից է Ալավերդին, ուր հնուց ի վեր արդյունահանվել է պղնձի հարուստ հանքաքարը, ծավալվել է պղնձաձուլությունը: Սակայն Ալավերդին բա-*

բեկարգ քաղաք և արդյունաբերական կենտրոն դարձավ միայն Հայաստանում սովետական կարգեր հաստատվելուց հետո։ Այդ մասին է պատմում Գ. Շախկյանի Ալավերդին մեծ Հոկտեմբերի ծնունդն է գրքույկը։

Հաճույքով են ընթերցվում նաև հանրապետության առանձին շրջաններին նվիրված գրքույկները։ Այսպես. Հրազդանի շրջանի այգաբացը գրքույկում Մ. Պողոսյանը պատմա-հեղափոխական համառոտ ակնարկից հետո, փաստական հարուստ նյութերի համեմատական վերլուծությամբ ցույց է տալիս շրջանի գյուղատնտեսության, կուլտուրայի ու կենցաղի, առողջապահության և այլ բնագավառների վերելքը, հատկապես հետպատերազմյան տարիներին։

Հեղինակն առանձին տեղ է հատկացրել շրջանի էկոնոմիկայի մի նոր ճյուղի՝ արդյունաբերության զարգացմանը։ Ուրախալի է, որ նախկին Հրազդան գյուղը ոչ միայն վերածվել է արագ աճող քաղաքի, ուր լայնորեն ծավալվել են շինարարական աշխատանքները, այլև լեռնաքիմիական կոմբինատի կառուցմամբ կդառնա հանրապետության լեռնաքիմիական արդյունաբերության մի խոշոր կենտրոն։ Հանրապետության էլեկտրաէներգիայի կարիքների բավարարման գործում մեծ դեր ունի Հրազդանի ջերմաէլեկտրակենտրոնը, որը 1969 թվականից գործում է լրիվ կարողությամբ։ Սկսվել է Հրազդանի պետական շրջանային էլեկտրակայանի շինարարությունը՝ 600 հազար կիլովատ-ժամ կարողությամբ, հետագայում այն կհասնի 1 միլիոն 200 հազար կիլովատ-ժամի։ Սկսված է «Բջնի» բարձրորակ հանքային ջրի թողարկումը։ Ահա երիտասարդ Չարենցավանը, որի բնակչությունն այս տասնամյակում հասնելու է 50 հազարի։ Քաղաքի բնակիչների զգալի մասն են կազմում հայրենադարձ հայերը։

Հետաքրքրությամբ է ընթերցվում Աղավնի Գևորգյանի Գեղարքունյաց լեռների գրկում գրքույկը, որը նվիրված է Կամո քաղաքին։

Հեղինակը նախ հանգամանալի նկարագրել է այդ բնակավայրի նախասովետական շրջանի թշվառ կյանքը, հետամնացությունը... Այնուհետև արտացոլել է սովետական իշխանության տարիներում այդ քաղաքում կատարված հսկայական առաջընթացը, նրա տնտեսության, կուլտուրայի ու լուսավորության աննախընթաց զարգացումը։ Ընթերցողը պարզ պատկերացում է կազմում ծաղկող ու զարգացող Կամո քաղաքի մասին, որի արդյունաբերական ձեռնարկություններում այժմ աշխատում են 5000 բանվոր։

Այս գրքույկը մեծապես կշահեր, եթե ավելի լայնորեն արտացոլվեին նրա ներկա նվաճումները և ոչ թե պատմական անցյալը։

Հաճույքով են ընթերցվում նաև հանրապետության առանձին շրջաններին նվիրված գրքույկները, ուր փաստական հարուստ նյութերի համեմատական վերլուծությամբ ցույց է տրված գյուղատնտեսության զարգացման բնագավառում ձեռք բերված ակնառու հաջողությունները, կուլտուրայի, կենցաղի, առողջապահության, կրթության բուռն վերելքը, որոնք հատկապես նշանակալից են հետպատերազմյան տարիներին։

Նշելով «Գիտելիք» ընկերության դրվատանքի արժանի այս նախաձեռնությունը, հարկ ենք համարում ասելու, որ մատենաշարի որոշ գրքույկներ գրված են միօրինակ, երբեմն պակասում է թվերի ու փաստերի վերլուծությունը, զգացվում են լեզվա-ոճական անհարթություններ, կան միանման վերնագրեր (Սիսիանի այգաբացը, Հրազդանի այգաբացը) և այլն։ Առանձին գրքույկներում շատ տեղ է տրված պատմական անցյալին, որի հետևանքով սովետական շրջանում ձեռք բերված խոշոր հաջողություններից մի քանիսը պատշաճ լուսաբանումը չեն ստացել։

Ցանկալի է, որ մասսայական ընթերցողին ներկայացվող նման գրքույկները զերծ լինեն այդպիսի թերություններից։

Ա. Գ. ՅԱՎՐՅԱՆ

ՈՒՂՂՈՒՄ

Մեր ամսագրի № 3-ի 20-րդ էջի ներքևից 16-րդ տողից կարդալ. «Արտադրանքի ծավալն աճել է մոտավորապես 1,8 անգամ»։

ԽՄԲԱԳՐԱԿԱՆ ԿՈԼԵԳԻԱ

ԱՂՈՅԱՆ Ա. Գ. (գլխավոր խմբագիր), ԱՎԵՏԻՍՅԱՆ Վ. Ա., ԳԵՎՈՐԳՅԱՆ Վ. Հ. (պատասխանատու քարտուղար), ԹԵԼՈՒՆՑ Ա. Մ., ՂԱՐԻԲՋԱՆՅԱՆ Գ. Բ., ՄԻՔԱՅԵԼՅԱՆ Ս. Ա., ՆԱԼԲԱՆԴՅԱՆ Ս. Ս., ՍՏԵՓԱՆՅԱՆ Ա. Հ., ՍԻՄՈՆՅԱՆ Ա. Ս., ՍԱՐՈՅԱՆ Է. Մ.

Адрес редакции,— Ереван-33, Барекамутян, 59-г.

Խմբագրության հասցեն՝ Երևան—33, Բարեկամության 59 գ.։ Հեռախոսներ՝ պատ. քարտուղար՝ 57—37—80, տեսության և էկոնոմիկայի բաժիններ՝ 57—25—29, կուսակցական կյանքի և կուլտուրայի բաժիններ՝ 57—19—80, գրական աշխատող՝ 57—60—64։

ՎՖ 03367 Պատվեր 528 Թղթի չափսը 70×108 1/16։ Տիրաժ 12900 Գինը 25 կոպ.։

Տպ. 7 մամուլ, մամուլում 68840 նիշ։ Ստորագրված է տպագրության՝ 13/IV 1971 թ.։

ՀԿԿ Կենտկոմի հրատարակչության տպարան, Ալ. Իսահակյան փող. № 28։




## ՆՈՐ ԳՐՔԵՐ

ԼԵՆԻՆ Վ. Ի.— Սովետների աշխատանքի մասին։ Մ., Քաղհրատ, 1970, 496 էջ։

ԼԵՆԻՆ Վ. Ի.— Մի քայլ առաջ, երկու քայլ ետ (Ճգնաժամը մեր կուսակցության մեջ)։ Մ., Քաղհրատ, 1970, 231 էջ։

ԼԵՆԻՆ Վ. Ի.— Վերջին նամակներ և հոդվածներ։ 28 դեկտ. 1922—2 մարտի 1923 թ.։ Մ., Քաղհրատ, 1970, 71 էջ։

ՇԱՐԱՊՈՎ Գ. Վ.— Լենինյան կոոպերատիվ պլանը և նրա միջազգային նշանակությունը։ Մ., «Экономика» հրատ., 1970, 230 էջ։

Սիբիրյան Լենը Իլյիչի մասին։ Փաստաթղթեր։ Հուշեր։ Հոդվածներ։ Իրկուտսկ, «Восточно-сибирское» հրատ., 1970, 343 էջ։

ԲԵԼՅԱԵՎՍԿԻ Ս. Ի.— Վ. Ի. Լենինը Շուշենսկոյեում։ Կրասնոյարսկի Գրքի հրատ., 1970, 212 էջ։

Լենինը։ Հեղափոխությունը։ Թատրոնը։ Փաստաթղթեր և հուշեր «Искусство» հրատ., 1970, 351 էջ։

Դպրոցականներին՝ Վ. Ի. Լենինի մասին։ Դպրոցների աշխատանքի փորձից (ժողովածու)։ Մ., «Просвещение» հրատ., 1970, 430 էջ։

Ակնարկներ ՍՄԿԿ պատմության։ Ուսումնական ձեռնարկ մարքսիզմ-լենինիզմի հիմունքների դպրոցների համար։ Մ., Քաղհրատ, 1970, 414 էջ։

Քաղաքատնտեսություն։ Դասագիրք մարքսիզմ-լենինիզմի հիմունքների դպրոցների համար։ Մ., Քաղհրատ, 1970, 335 էջ։

Կուսակցության քաղաքական և կազմակերպչական աշխատանքը արդի պայմաններում։ Մ., «Мысль» հրատ., 1970, 192 էջ։

ՍՄԿԿ ԿԿ առընթեր հասարակական գիտությունների ակադեմիայի ՍՄԿԿ պատմության ամբիոնի դասախոսները հոդվածների ժողովածուում արտացոլել են կոմունիստական կուսակցության տեսության և քաղաքականության միասնության, տնտեսական քաղաքականության դերը կոմունիզմի նյութա-տեխնիկական բազայի կառուցման գործում և այլ հարցեր։

Կոմերիտմիության և երիտասարդության մասին։ Մ., «Молодая гвардия» հրատ., 1970, 447 էջ։

Այս ժողովածուում զետեղված են Վ. Ի. Լենինի, Մ. Ի. Կալինինի, Ս. Մ. Կիրովի, Ն. Կ. Կրուպսկայայի, Վ. Վ. Կույբիշևի, Ա. Վ. Լունաչարսկու, Գ. Կ. Օրջոնիկիձեի, Մ. Վ. Ֆրունզեի, Կ. Ե. Վորոշիլովի հոդվածներն ու ճառերը՝ նվիրված երիտասարդությանը։

ՍՎՈԲՈԴԱ ԼՅՈՒԴՎԻԳ— Ընտիր հոդվածներ և ճառեր։ Մ., Քաղհրատ, 1970, 168 էջ։

ՎԱՍԻՆ Վ. Պ.— Իմպերիալիստական միլիտարիզմը սպառնալիք է մարդկության։ Մինսկ, «Наука и техника» հրատ., 1970, 342 էջ։

ՎԵԼԻԿՈՎԻՉ Լ. Ն.— Կրոնը և քաղաքականությունը ժամանակակից կապիտալիստական հասարակության մեջ։ Մ., «Мысль» հրատ., 1970, 287 էջ։

ԶՈՒԼԱԼՅԱՆ Մ. Կ.— Հայաստանի հին և միջին դարերի պատմության հարցերի լուսաբանումը արդի թուրք պատմագրության մեջ։ Ե., ԳԱ հրատ., 1970, 148 էջ (ռուսերեն)։

Հայկական ՍՍՀ երկրաբանությունը։ Հատոր Դ.։ Պետրոգրաֆիա, Հրաբխային ապարներ (ռուսերեն)։ Ե., ԳԱ հրատ., 1970, 713 էջ։

ՏԻԽՈՆՈՎ ՆԻԿՈԼԱՅ— Բացման օրերը։ Գիրք Հայաստանի մասին (արձակ և չափածո ստեղծագործություններ ռուսերեն), «Հայաստան» հրատ., 1970, 260 էջ։



# ԳԻՏՈՒԹՅԱՆ ԵՎ ՏԵԽՆԻԿԱՅԻ ՆՈՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ

## ՀԱՃԵԼԻ ՊՐՈՑԵԴՈՒՐԱ

*Ամենքս էլ սարսափում ենք ատամնաբույժի մոտ գնալիս։ Եվ ահա վիրաբուժական սարքավորումների ու գործիքների համամիութենական գիտահետազոտական ինստիտուտի և ստոմատոլոգիայի կենտրոնական ինստիտուտի մասնագետները պատրաստել են ատամների էլեկտրական ցավազրկման ապարատ։*

*Հիվանդի ականջին է ամրացվում մետաղյա կլիպսը, որը հանդիսանում է ապարատի մի էլեկտրոդը։ Մյուս էլեկտրոդն է բոր մեքենայի ծայրակալը։ Երբ այն մտնում է ատամի հյուսվածքի մեջ, ատամի և կլիպսի միջով անցնող էլեկտրական թույլ հոսանքը գործում է իբրև ցավազրկող միջոց։*

## ԱՎՏՈԴՈՂԵՐԻ ԲՈՒԺՈՒՄԸ

*Երկարատև վազքից հետո անվադողերի ռետինը հաճախ չերտատվում է։ ՌՍՖՍՀ ավտոտրանսպորտի մինիստրության պետավտոճանապարհների գիտահետազոտական ինստիտուտն ստեղծել է մի սարքավորում, որի օգնությամբ կատարվում են վուլկանացմանը նախորդող տեխնիկական բոլոր գործողությունները։ Մաքրվում է փոշին, լվացվում բենզինով, չորացվում և այլն։*

*Սարքավորման աշխատանքի սկզբունքն ինքնատիպ է։ Դողերի վերանորոգման համար անհրաժեշտ բոլոր բազադրամասերը օդի շիթի հետ հրամցվում են սարքավորմանը՝ որոշակի տեխնոլոգիական հաջորդականությամբ։*

*Ավտոդողերի վերանորոգման նոր մեթոդը տալիս է զգալի խնայողություն և այն նախատեսված է ավտոտնտեսությունների համար։*

## ՇԱՐԺԱԿԱՆ ՌԵՆՏԳԵՆ

*Այն արտաքնապես նման է փոխադրովի տրանզիստորային ռադիոընդունիչին և ստեղծվել է կառավարման սիստեմների, ավտոմատացման միջոցների և կառավարման սիստեմների սարքաշինական մինիստրության հատուկ կոնստրուկտորական բյուրոյի կողմից։*

*Ոչ մեծ տուփի մեջ դրված են բարձր լարման հոսանքի ինքնատիպ աղբյուր և ռենտգենյան խողովակ։*

*Ընդամենը 2 կգ կշռող «ИРА—3» մակնիշի փոքր տրամաչափի ռենտգենյան այդ ապարատը նախատեսված է ինչ-որ անթափանցիկ մակերեսով ծածկված, մարդու աչքին անտեսանելի մեխանիզմների ու դետալների աշխատանքը հետազոտելու համար։ Այն օգտագործելի է և՛ լաբորատոր, և՛ դաշտային պայմաններում։*

## ՍՏՈՐՋՐՅԱ ՆԱՎԱԿ ՊԼԵՔՍԻԳԼԱՍԻՑ

*Պլաստմասսայե գունդը, ուր տեղավորվում են երկու մարդ, իսկական ստորջրյա նավակ է։ Այն պատրաստել է ամերիկյան ֆիրմաներից մեկը՝ ծովի ցամաքային կառամատույցներն ուսումնասիրելու համար։ Նավակի փորձարկումն հաջող անցավ. այն սուզվեց ջրի տակ, 180 մետր խորությամբ։ Ջրասույզ նավակում թթվածնի պաշարը բավարարում է 8 ժամ։ Այնտեղ տեղակայված է ածխաթթու գազի կլանիչ սիստեմ։*

*Նավակը, որի իրանը պլեքսիգլասից է, կշռում է 3600 կգ, այն սնվում է կապարե մարտկոցներից։*

## ԹԹՎԱՅԻՆ ՄԱԳՆԻՍԱՉԱՓ

*Այդ սարքը չափում է Երկրի մագնիսական դաշտի լարվածությունը և ստացված արդյունքներն արտահայտում թվերով։ Մոսկվայի տեխնիկական համալսարանի ուսանողները տեխնիկական գիտությունների թեկնածու Վ. Կովալենկոյի ղեկավարությամբ մշակել են թվային մագնիսաչափի սկզբունքորեն նոր սխեմա։*

*Այժմ գործող նույնանման սարքի համեմատությամբ մեծ չափով բարձրացված է մագնիսաչափի զգայունությունը, չափումների ճշգրտությունը, փոքրացված են կշիռն ու ծավալը։ Սարքն ունի նաև հեռուստաչափիչ սարք՝ հեռավորության վրա մագնիսական դաշտը չափելու համար։*